ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 4
ԱՊՐԻԼ
1963 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ
ՏԱՐԻ



## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն

## СОДЕРЖАНИЕ





# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ

Ավելի քան հարյուր ազգ և ազգություն են ապրում մեր լայնածավալ երկրում: Քառասունհինգ տարի նրանք անդուլ մաքառում են մեկ միասնական նպատակի՝ անդասակարգ կոմունիստական հասարակության կառուցման համար: Դժվարին, հաճախ էլ ծանր փորձություններով լի է եղել այդ ճանապարհը, բայց երբեք, ոչ մի ժամանակ մազաչափ անգամ չի սասանվել մեր ժողովուրդների եղբայրական միասնությունը. ոչ մի դժվարություն, ոչ մի արհավիրք անվստահության ու երկպառակության ճեղքվածք չեն առաջացրել ժողովուրդների լենինյան բարեկամության ամրակուռ շենքում: Նույնիսկ սոցիալիզմի երդվյալ հակառակորդները անհերքելի փաստերի առջև ստիպված են ընդունել նոր կյանքի ուղին բռնած սովետական ժողովուրդների լենինյան բարեկամության գրանիտյա ամրությունը և խոստովանել այդ բարեկամության խախտման համար իրենց ձեռնարկած բազմաթիվ փորձերի անփառունակ վախճանը:

Ո՞րն է մարդկային պատմության մեջ անօրինակ այդ միաձույլ բարեկամության հիմքը, նրա անսասանությունն ու հարատևությունը սնող աղբյուրը: Ինչո՞ւ շահագործողական հասարակարգում, որպես կանոն, ազգերն ու ազգությունները չեն կարող քիչ թե շատ երկարատև պատմական ժամանակաշրջան համագործակցել հաշտ ու խաղաղ, ապրել առանց անվստահության ու երկպառակության, իսկ մեր երկրում միասնական սոցիալիստական պետության կազմում ամբողջ քառասունհինգ տարի մեկ միաձույլ ընտանիքում հարազատ եղբայրների նման ապրում, սերտորեն համագործակցում և իրար անշահախնդիր օգնում են բազմաթիվ ազգեր և ազգություններ:

Շահագործողական հասարակարգերում ազգերի երկպառակության և թշնամության աղբյուրը արտադրության միջոցների մասնավոր սեփականությունն է, տարբեր ազգերի տիրապետող դասակարգերի պայքարը հումքի աղբյուրների, վաճառահանման շուկաների, կապիտալների ներդրման ոլորտների համար: Աշխատավոր զանգվածներին, ըստ էության, իրենց սոցիալական կեցությամբ, խորթ է ազգային ատելությունը, սակայն հասարակության ղեկավար ուժերը՝ շահագործող դասակարգերը, ձգտում են իրենց ազգամիջյան պայքարի մեջ ներգրավել բանվորներին ու գյուղացիներին, վարակել նրանց շովինիզմի և նացիոնալիզմի թույնով, որը նրանց հաճախ հաջողվում է:

Մեր երկրի ժողովուրդների անխախտ բարեկամությունը, նրանց եղբայրական միասնությունը մեր այսօրվա պայծառ իրականության և վերջին կես դարում նրանց անցած պատմական ուղու օրինաչափ արդյունք են և անմիջականորեն բխում են մեր երկրում կառուցված սոցիալիստական հասարակարգի բուն էությունից, այդ հասարակարգը կառուցող աշխատավոր դասակարգերի ու խավերի սոցիալական բնությունից, հասարակական կյանքը ղեկավարող սովետական իշ-

խանության համաժողովրդական բնույթից, հասարակական առաջընթացը ոգեշնչող և նրան ուղղություն տվող Սովետական Միության կոմունիստական պարտիայի ինտերնացիոնալ աշխարհայացքից ու հումանիստական առաջադեմ նպատակներից: Այդ բարեկամությունը ծնվել ու միաձույլ պողպատի ամրություն է ստացել իրենց ազատագրման, նոր կյանք կառուցելու համար ժողովուրդների, աշխատավոր կանգվածների համատեղ հերոսական պայքարի բովում:

Մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը պատմական խոր արմատներ ունի: Դեռևս ֆեոդալական ու կապիտալիստական հասարակարգերի ընդերքում, ուր տիրապետող դասակարգերը նվաճում ու կեղեքում էին իրենց հարևան փոքրաթիվ ու թույլ ազգություններին, հրահրում էին ազգային անվստահություն ու թշնամություն, կազմակերպում էին ազգամիջյան կոտորածներ ու առանձին ազգությունների ջարդեր, տարբեր ազգերի աշխատավոր կանգվածները, շահագործման ու ճնշման նույն լծի տակ հեծելով, ծանր փորձությունների և արհավիրքների պահերին փոխադարձ օգնության ձեռք էին մեկնում իրար: Պատմությունը մեզ թողել է հեռավոր պատմական անցյալում հայ և վրացի, ռուս և ուկրաինացի, ռուս և հայ ու մյուս ժողովուրդների փոխադարձ օգնության, սեփական և օտար նվաճողների դեմ նրանց համատեղ պայքարի մեծաթիվ վառ օրինակներ: Հանրահայտ են, մասնավորապես XIX դարում մեր երկրի ժողովուրդների առաջադիմական, դեմոկրատական գործիչների համագործակցության և բարեկամության բազմաթիվ փաստերը:

Սակայն այդ համագործակցությունը տարերային երևույթից վերածվեց օրինաչափ պրոցեսի, պատահական ու էպիզոդիկ համագործակցությունից դարձավ հաստատուն կայունություն և ո՛չ միայն նոր թափ ու ծավալ, այլև նոր որակ, հասարակական նոր իմաստ ստացավ միայն այն ժամանակ, երբ մեր երկրում կազմավորվեց ժամանակակից արդյունաբերական պրոլետարիատը, որի հետևողական ինտերնացիոնալիստական գաղափարախոսությունն ու պատմական մեծ առաքելությունն արտահայտեց կոմունիստական պարտիան: Իր կյանքի արմատական պայմանների և հասարակության մեջ ամեն տեսակի ու գույնի շահագործման ու ճնշման վերացման իր պատմական դերի բուն էությամբ պրոլետարիատին խորթ են ազգային անվստահությունն ու թշնամությունը: Նա բոլոր ազգերի ու ազգությունների աշխատավորների ամենասերտ միավորման, նրանց լիակատար ազատագրության ու հավասարության գաղափարախոսության օրգանական կրողն է: Այդ գաղափարախոսության հիմնական սկզբունքներից մեկը պրոլետարական ինտերնացիոնալիզմն է, որն իր ամբողջ խորությամբ բացահայտեցին աշխատավոր մարդկության ազատագրության մեծագույն ռահվիրաներ Կարլ Մարքսն ու Ֆրիդրիխ Էնգելսը, առաջադրելով «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» աշխարհաշեն կոչը:

Բոլոր աշխատավորների արմատական շահերի արտահայտիչը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշակակիրը մեր երկրում հանդիսացավ մարդկության մեծագույն հանճար Վլադիմիր Իլյիչ Լենինի կազմակերպած մարքսիստական պարտիան, որի պանծալի 60-ամյակը լրանում է այս տարի: Բոլոր ազգերի ու ազգությունների առաջավոր բանվորներին համախմբելով մեկ միասնական ինտերնացիոնալիստական կազմակերպության մեջ, բոլշևիկյան պարտիան մշակեց ամեն տեսակի շահագործումից ու ճնշումից աշխատավորների լիակատար ազատագրության և սոցիալիզմի ամրակուռ հիմքի վրա ժողովուրդների եղբայրական միասնության հաստատման մարքսիստական ծրագիրը, որի հիմքում ընկած են մեծ Լենինի գիտական դրույթները: Բոլոր ազգերի ու ազգությունների լիակատար հավասարու-



թյուն, ազգերի ինքնորոշման, ընդհուպ մինչև անջատման և ինքնուրույն պետություն կազմելու իրավունք, հասարակական կարգի լիակատար դեմոկրատացում, բոլոր ազգերի ու ազգությունների առաջավոր բանվորների համախմբում մեկ միասնական մարքսիստական կազմակերպության մեջ—ահա ազգային հարցի՝ պարտիայի լենինյան ծրագրի հիմնական ուղենիշները: Այդ ծրագրի միջով կարմիր թելի նման անցնում է Վ. Ի. Լենինի բազմիցս շեշտած այն կարևորագույն սկզբունքը, որ կոմունիստական պարտիան ձգտում է ոչ թե ազգերի *հարկադրական*, բռնի միավորման, այլ *կամավոր* միավորման, որը հնարավոր է միայն և միայն աշխատավոր կանգվածների *սոցիալական* ազատագրության, այսինքն՝ կապիտալիզմի տապալման և սոցիալիզմի հաստատման հիման վրա:

Տարբեր ժողովուրդների միջև հրահրելով ազգային թշնամություն ու ատելություն, ցարիզմը, ինչպես ընդգծեց Ն. Ս. Խրուշչովը, որպես շահագործողական պետություն, նույնպես ելնում էր դասակարգային շահերից. ճնշված ժողովուրդների երկպառակությունը եղել և մնում է շահագործողների հարատևման նախապայմաններից մեկը: Հենց պատմական այդ պայմաններում կոմունիստական պարտիան ո՛չ միայն մշակեց ազգային հարցի լուծման տեսությունը, այլև ազգային միասնության և համերաշխության իրականացման փայլուն օրինակ տվեց իր իսկ գործունեությամբ: Դեռևս 1913 թ. Մ. Գորկուն գրած իր նամակում Վ. Ի. Լենինը հպարտությամբ նշում էր այն փաստը, որ «Մեզ մոտ և Կովկասում ս.-դ. վրացիները + հայերը + թաթարները + ռուսները աշխատում էին *միասին տասը տարուց ավելի միասնական* ս.—դ. կազմակերպության մեջ: Այդ ֆրազ չէ, այլ ազգային հարցի պրոլետարական լուծում: Միակ լուծումը (Երկեր, հ. 35, էջ 79):

Մեր երկրի բազմազգ պրոլետարիատի համատեղ հերոսական պայքարի արդյունքը եղավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան, որի շնորհիվ հաստատվեցին սովետական սոցիալիստական կարգեր և տնտեսական ու սոցիալական անխորտակելի հիմքեր ստեղծվեցին ազգային հարցի վերջնական լուծման և մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների ժողովրդական ամենալայն կանգվածների հավիտենական բարեկամության հաստատման համար: Ռևոլյուցիայի հաղթանակի և նրա պաշտպանության համար մղված զինված պայքարն արդեն լիովին դրսևորեց պատմական այդ նոր օրինաչափությունը—շահագործումից ազատված ժողովուրդների համերաշխությունն ու անշահախնդիր փոխադարձ օգնությունը:

Ցարական ինքնակալության և բուրժուազիայի կապանքներից ազատագրված ռուս ռևոլյուցիոն բանվոր դասակարգը օգնության ձեռք մեկնեց իրենց ազգային կապիտալիստների ու կալվածատերերի լուծը, նրանց ազգայնական պարտիաների տիրապետությունը թոթափած վրացի, ադրբեջանցի, ուկրաինացի, հայ, ուզբեկ և այլ ազգերի աշխատավորներին, օգնեց նրանց դիմակայելու Արևմուտքի իմպերիալիստական պետությունների գաղութակալական նկրտումներին և ապահովելու իրենց խաղաղ սոցիալիստական զարգացումը: Դա նրանց ազատագրման և ինքնուրույն զարգացման *միակ ճիշտ ուղին էր*, որի շնորհիվ նրանք առհավետ փրկվեցին սոցիալական և ազգային ճնշումից ու գաղութային կախման լծից: Պատմական զարգացումը ցույց տվեց, որ, մասնավորապես, *հայ ժողովրդի իրական ազատագրումը, նրա ինքնուրույն ազատ զարգացումը հնարավոր էր միայն կապիտալիզմի լծից ռուս ժողովրդի ազատագրման և իր սեփական կապիտալիստների ու կալվածատերերի դեմ ապստամբած հայ աշխատավորներին ռուս և մյուս ազգերի ռևոլյուցիոն պրոլետարիատի ցույց տված անմիջական օգնության շնորհիվ:* Հայ առաջավոր բանվորները, հայ կոմունիստները ճիշտ հասկացան, որ ժողովրդի ազա-

տագրության հարցում արևմտյան տերությունների նկատմամբ եղած ակնկալությունները աղետաբեր առասպել էին, որ առանց սոցիալիստական կարգեր հաստատելու և առանց մյուս ազգերի, հատկապես ռուս ռևոլյուցիոն բանվորների հետ դաշնակցելու հայ ժողովրդի մնացած մասն էլ կարող էր ունենալ արևմտյան հատվածի սոսկալի ճակատագիրը, որը վոհ գնաց իմպերիալիստական պետությունների չարանենգ դավադրությանը:

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի և սովետական իշխանության հաստատման շնորհիվ մեր երկրի ժողովուրդներն ազատագրվեցին այդ ծանր հեռանկարից:

Սովետական իշխանության ամենաառաջին քայլերից մեկը նախկին ցարական կայսրության տերիտորիայում ապրող ժողովուրդների իրավունքների դեկլարացիայի հրապարակումն էր, որով պետական պաշտոնական քաղաքականության հիմք հռչակվեց Ռուսաստանի ժողովուրդների ինքնորոշման, ընդհուպ մինչև անջատման և ինքնուրույն պետություն կազմելու իրավունքը, նրանց հավասարությունն ու սուվերենությունը, բոլոր տեսակի ազգային և ազգային-կրոնական արտոնությունների ու սահմանափակությունների վերացումը, ազգային փոքրամասնությունների և էթնոգրաֆիկ խմբերի ազատ զարգացման ապահովումը:

Կոմունիստական պարտիայի և սովետական իշխանության լենինյան ազգային քաղաքականության ուժը ո՛չ միայն ազգերի իրավական հավասարության հաստատման մեջ էր, այլև այդ հավասարության ամրակուռ տնտեսական, սոցիալական, գաղափարական հիմքերի ստեղծման և ամրապնդման մեջ: Բուրժուական խոսքով հռչակում է ժողովուրդների ազատություն, եղբայրություն, հավասարություն, բայց իրականում ամրապնդում մարդկանց ու ազգերի շահագործում ու ճնշում, որովհետև մասնավոր սեփականության տիրապետման պայմաններում անհնարին է հաստատել մարդկանց ու ազգերի *փաստական* տնտեսական և սոցիալական հավասարություն: Իսկ առանց տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական կյանքի փաստական հավասարության ազգերի հավասարության հռչակումը սոսկ ժողովուրդներին մոլորեցնող բուրժուական խաբկանք է:

Սովետական Միության կոմունիստական պարտիան որոշակիորեն հարթեց ժողովուրդների *փաստական* հավասարության հաստատման իրական ուղիներն ու միջոցները և իր ամբողջ գործունեությամբ ապահովեց դրանց անշեղ իրագործումը: Եվ մեր երկրում սոցիալիստական հասարակարգի կառուցման ընթացքում ո՛չ միայն հիմնովին փոխվեցին հասարակության տնտեսական և սոցիալական կառուցվածքը, կուլտուրան և հոգևոր կերպարը, այլև արմատապես վերափոխվեցին հենց իրենք՝ ազգերն ու ազգությունները, որոնք ձեռք բերեցին միանգամայն նոր, *սոցիալիստական* բնույթ և հասան զարգացման անհամեմատ բարձր աստիճանի: Սա արդեն մարդկանց ազգային ընդհանրության զարգացման ավելի բարձր աստիճան է, որին արմատապես խորթ են ազգային անվստահությունն ու թշնամությունը, երկպառակությունն ու մեկուսացումը: Սոցիալիստական ազգերի համերաշխությունն ու համագործակցությունը բխում են նրանց բուն իսկ ներքին էությունից:

Որո՞նք են մեր երկրի սոցիալիստական ազգերի ու ազգությունների միասնության և անխախտ բարեկամության հասարակական հիմքերը:

*Ժողովուրդների բարեկամության քաղաքական հիմքը պրոլետարիատի դիկտատուրայի հիման վրա ստեղծված սովետական պետական կարգն է,* որն իրականացնում և ապահովում է նրանց *իրավական* լիակատար հավասարությունը կյանքի բոլոր բնագավառներում: Մեր երկրի տերիտորիայում ապրող տասնհինգ առավել



խոշոր ազգերն ունեն իրենց ազգային սուվերեն պետականությունը և փոխադարձ համաձայնությամբ միավորված են մեկ միասնական ֆեդերատիվ սոցիալիստական պետական միավորման՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեջ: Նրանցից յուրաքանչյուրն ունի իր տերիտորիան, մայրաքաղաքը, պետական գերբը, դրոշակը, հիմնը, ազգային պետական լեզուն, ունի օրենսդրական ու վարչական կառավարման սեփական օրգաններ (Գերագույն սովետ, Մինիստրների սովետ, դատական և այլ օրգաններ) : Միութենական ռեսպուբլիկաների կազմի մեջ մտնող մի քանի տասնյակ ազգություններ ունեն իրենց ազգային-տերիտորիալ ինքնավարությունը՝ ավտոնոմ (ինքնավար) ռեսպուբլիկաների, մարզերի և շրջանների ձևով: Այդ ազգությունների մեծ մասը անցյալում երբեք ինքնուրույն պետականություն չի ունեցել:

*Ժողովուրդների բարեկամության տնտեսական հիմքը մեր երկրում տիրապետող սոցիալիստական արտադրական հարաբերություններն են, արտադրության միջոցների սոցիալիստական սեփականությունը և դրա վրա հաստատված ազգերի լիակատար հավասարությունը տնտեսական կյանքի բոլոր ասպարեզներում:*

Մինչև ռևոլյուցիան մեր երկրի ժողովուրդները ո՛չ միայն զուրկ էին տնտեսական որևէ ինքնուրույնությունից, այլև գտնվում էին տնտեսական զարգացման ամենատարբեր աստիճանների վրա: Արդյունաբերությամբ զարգացած կենտրոնական Ռուսաստանի և Ուկրաինայի հետ համեմատած ազգային ծայրամասերը հետամնաց ագրարային շրջաններ էին, իսկ տնտեսական հետամնացությունը, իր հերթին, հանգեցնում էր կուլտուրական հետամնացության, ժամանակակից կուլտուրայի և գիտության ազգային կադրերի համարյա լիակատար բացակայության:

Սոցիալիզմի կառուցման ընթացքում այդ տարբերությունները հաղթահարվեցին, ամենից առաջ, ետ մնացած ազգությունների տնտեսական կյանքի զարգացման ավելի բարձր տեմպերի և Ռուսաստանի կողմից ցույց տրվող անշահախնդիր օգնության շնորհիվ: Այսպիսով ստեղծվեց տնտեսական կյանքի փաստական հավասարություն, այսինքն՝ նախկինում ետ մնացածներն իրենց արդյունաբերության զարգացման մակարդակով հիմնականում հասան առաջավորներին: Եթե ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության արտադրանքի ծավալը, 1913 թ. համեմատությամբ, 1961 թ. ավելացել էր 48 անգամ, ապա Հայաստանի արդյունաբերության ծավալը նույն ժամանակաշրջանում աճել է 82 անգամ, Ղազախստանինը՝ 72, Կիրգիզիայինը՝ ավելի քան 70 անգամ և այլն: Ընդ որում այդ երկրների արդյունաբերության մակարդակը որոշվում է ժամանակակից ամենաբարդ տեխնիկական սարքավորումների և մեքենաների, քիմիական նյութերի արտադրությամբ և չի զիջում կապիտալիստական բարձր զարգացած շատ երկրների մակարդակին: Բնորոշ է այն փաստը, որ անցյալում ոչ մի արդյունաբերություն չունեցող Կիրգիզիան այժմ ժամանակակից արդյունաբերական սարքավորում է արտահանում աշխարհի 25 երկրներ, իսկ Հայաստանի էլեկտրատեխնիկական մեքենաներն ու պրիբորները այժմ արտահանվում են աշխարհի 54 երկրներ: Բոլոր ազգային ռեսպուբլիկաներում ստեղծված են ժամանակակից արդյունաբերության խոշոր կենտրոններ, աճել ու հասունացել է առաջավոր բանվոր դասակարգ և տեխնիկայի ու գիտության ազգային կադրերի մի ամբողջ բանակ:

Ընդ որում անհրաժեշտ է նշել, որ ազգային ռեսպուբլիկաների տնտեսական և այլ իրավունքները գնալով ոչ թե նեղանում, այլ ընդլայնվում են: Այդ պրոցեսը ծավալվում է, մասնավորապես, վերջին տարիներին, երբ արտադրության շրջանային և միութենական կարգավորման հետ միասին մեծանում է ազգային միավո-

րումների տնտեսական նշանակությունը և բարձրանում արտադրության տեխնիկական մակարդակը:

ՍՍՌՄ ժողովուրդների՝ սոցիալիստական ազգերի ու ազգությունների ծաղկման լավագույն ապացույցներից մեկն էլ այն է, որ սոցիալիզմի կառուցման բովում առաջացան ու վարգացան նրանց համագործակցության միանգամայն նոր ձևեր՝ տնտեսական անշահախնդիր փոխադարձ օգնություն, հասարակական, կուլտուրական բազմազան կապեր, մարդկային կյանքի հիմքը հանդիսացող վեհ աշխատանքի սխրանքները խթանող սոցիալիստական մրցությունը, մրցություն տարբեր ռեսպուբլիկաների հակարավոր արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների, կազմակերպությունների, կուլտուրայի և գիտության օջախների միջև, մի հանգամանք, որը հաջողությամբ ցեմենտում է ժողովուրդների բարեկամությունը, նրանց համակողմանի վարգացումը, իր բարերար ներգործությունն է ունենում կոմունիզմ կառուցող նոր մարդու հոգևոր կերպարի վրա:

*Ժողովուրդների բարեկամության սոցիալական հիմքը մեր երկրի բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքն է, հասարակության սոցիալական միասնությունը:* Մեր ազգերն այժմ չեն բզկտվում ներքին դասակարգային հակասություններից, որովհետև նրանք բաղկացած են միայն աշխատավորական դասակարգերից և սոցիալիստական մտավորականությունից, նրանց ներսում լիովին վերացված են շահագործողական դասակարգերը և նրանց մնացորդները՝ ազգային թշնամություն ու երկպառակություն սնուցող և հրահրող ուժերը:

*Ժողովուրդների բարեկամության գաղափարական հիմքը մարքսիզմ-լենինիզմի գաղափարախոսությունն է, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքը, իսկ ժողովուրդների միասնության ղեկավարող և ստեղծարար ուժը՝ Սովետական Միության կոմունիստական պարտիան,* մեր դարաշրջանի ամենապրոգրեսիվ և հումանիստական պարտիան, սովետական ամբողջ ժողովրդի արմատական շահերի լավագույն արտահայտիչը:

Պարտիայի ամենօրյա ղեկավարության շնորհիվ մեր երկրում հաղթահարվել են ազգային անվստահության և թշնամության անցյալի գաղափարախոսության մնացորդները, ազգային մեկուսացածության, սնապարծության, նիհիլիզմի արտահայտությունները: Այդ ղեկավարության շնորհիվ հնարավոր է դարձել մեր ժողովուրդների անցյալ կուլտուրական ժառանգության և բազմադարյան պատմության գիտական գնահատումը, բոլոր ազգերի ու ազգությունների ստեղծած կուլտուրական արժեքների բացահայտումը, նրանց միավորումը սովետական ժողովրդի միասնական սոցիալիստական կուլտուրայի գանձարանում: Գլխավորելով Սովետական Միության ժողովուրդների անխախտ բարեկամության ամրապնդման գործը, պարտիան առանձնահատուկ ուշադրություն է դարձնում ժողովրդական վանգվածների ինտերնացիոնալ դաստիարակությանը: Այդ բնագավառում նրա կատարած վիթխարի աշխատանքի արդյունքը սովետական ժողովրդի գիտակցության մեջ արմատացած սոցիալիստական հայրենասիրության կգացումն է, անկաշառ նվիրվածությունը նոր հասարակարգին, անհաշտությունը ամեն տեսակի ու գույնի ազգային ատելության և ռասայական խտրականության դրսևորումների նկատմամբ, եղբայրական համերաշխությունը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բոլոր ժողովուրդների հետ:

Այս հիմքերի վրա մեր երկրում իրենց հետագա վարգացումն են ապրում ժողովուրդների ազգային հատկանիշները, հատկապես լեզուները և կուլտուրան: Մեր երկրի ժողովուրդների ազգային լեզուները երբեք իրենց անցյալ պատմության մեջ



այնքան վարգացած, այնքան միաձույլ, համաժողովրդական չեն եղել, ինչքան այժմ: Երբեք անցյալում նրանցով այնքան գիրք և պարբերական չի հրատարակվել, այնքան մարդ կրթություն չի ստացել, ինչքան այժմ: Բավական է նշել, որ ավելի քան 40 ազգությունների լեզուներ գրական լեզուներ են դարձել միայն Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո: Մեր ժողովուրդների լեզուներն այժմ դարձել են պետական՝ քաղաքական, տնտեսական, իրավական հարաբերությունների պաշտոնական լեզուներ, բարձրագույն կրթության, գիտության ամենաբազմազան բնագավառների արտահայտման լեզուներ, անհամեմատ հարստացել է նրանց բառապաշարն ու կատարելագործվել քերականական կառուցվածքը: Վիթխարի են բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային կուլտուրաների նվաճումները: Մեր երկրի ազգերի կրթության և կուլտուրայի վարգացման մակարդակը այժմ արդեն գերազանցում է կապիտալիստական շատ ու շատ վարգացած երկրների մակարդակը:

Հիմնովին փոխվել է նաև սովետական մարդկանց հոգևոր կերպարը, նրանց քաղաքական, բարոյական, գիտական ըմբռնումների ամբողջ կոմպլեքսը:

Այս բոլորը հանգեցրեց նրան, որ նախկինում հետամնաց ժողովուրդները ավելի վարգացածների և, ամենից առաջ ռուս մեծ ժողովրդի օգնությամբ շրջանցեցին կապիտալիստական ուղին, հասան առաջավորների մակարդակին: Ինչպես նշել է ընկ. Ն. Ս. Խրուշչովը, այդ բոլորի շնորհիվ «ՍՍՌՄ-ում ստեղծվեց ընդհանուր բնորոշ գծեր ունեցող տարբեր ազգությունների մարդկանց պատմական նոր ընդհանրություն՝ սովետական ժողովուրդը: Նրանք ունեն ընդհանուր սոցիալիստական հայրենիք՝ ՍՍՌՄ-ը, ընդհանուր տնտեսական բազա՝ սոցիալիստական տնտեսությունը, ընդհանուր սոցիալ-դասակարգային կառուցվածք, ընդհանուր աշխարհայացք՝ մարքսիզմ-լենինիզմը, ընդհանուր նպատակ՝ կոմունիզմի կառուցումը, շատ ընդհանուր գծեր հոգևոր կերպարում, հոգեբանության մեջ» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, Հայպետհրատ, 1962, էջ 165):

Սովետական Միության կոմունիստական պարտիայի նոր Ծրագիրը որոշակիորեն նշում է մեր երկրում ազգային հարաբերությունների և ազգերի վարգացման հեռանկարներն ու խնդիրները: Շեշտելով այն կարևորագույն դրույթը, որ սոցիալիզմի պայմաններում ազգային հարցում գործում են փոխադարձաբար միմյանց հետ կապված երկու առաջադիմական տենդենցներ՝ ազգերի ծաղկում և նրանց մերձեցում, ծրագիրը պարտիայի հիմնական խնդիրներն այդ հարցում համարում է բոլոր սովետական ազգերի և ազգությունների էկոնոմիկայի և կուլտուրայի համակողմանի վարգացման շարունակումը, նրանց ավելի ու ավելի սերտ եղբայրական համագործակցության և փոխադարձ օգնության ապահովումը, նրանց հետագա համախմբումն ու մերձեցումը կյանքի բոլոր բնագավառներում:

Ծրագիրը հատկապես շեշտում է ժողովուրդների բարեկամության, որպես սոցիալիզմի կարևորագույն նվաճումներից մեկի հետագա ամրապնդման անհրաժեշտությունը, խնդիր դնելով «անհաշտ պայքար մղել ամեն տեսակի նացիոնալիզմի ու շովինիզմի դրսևորումների և մնացուկների դեմ, ազգային սահմանափակության ու բացառիկության, անցյալի իդեալականացման և ժողովուրդների պատմության մեջ սոցիալական հակասությունների սքողման տենդենցների դեմ, այն սովորույթների ու բարքերի դեմ, որոնք խանգարում են կոմունիստական շինարարությանը» (Սովետական Միության կոմունիստական պարտիայի Ծրագիրը, Հայպետհրատ, 1961, էջ 139):

Այսպիսով, մեր երկրի ժողովուրդների բարեկամության ամրապնդումը պայ-

մանավորվում է կոմունիստական շինարարության հետագա ծավալումով, տնտեսության ու կուլտուրայի հետագա բուռն ծաղկումով: Դրա հետ միասին անհրաժեշտ է ուժեղացնել մասսաների ինտերնացիոնալ դաստիարակության համար մղվող պայքարը, բացահայտել ու հաղթահարել այդ գործին խանգարող առանձին երևույթները: Գաղափարական ճակատի աշխատողների և հատկապես մեր ժողովրդի պատմությունը հետազոտողների կարևորագույն խնդիրներից մեկը անհատի պաշտամունքի հետևանքով ազգային հարցում թույլ տված սխալների բացահայտումն է, սովետական իշխանության հաստատման ու սոցիալիզմի կառուցման պայքարում մեր ժողովուրդների եղբայրական համագործակցության և փոխադարձ օգնության, նրանց բարեկամության ամրապնդման պատմական պրոցեսի գիտական հետազոտությունը: Ընդսմին անհրաժեշտ է հաղթահարել պատմական անցյալի ուսումնասիրության մեջ երբեմն տեղ գտնող հակագիտական մոտեցումը, որն արտահայտվում է պատմական անցյալի առանձին փաստերը նրանց կապերից, կոնկրետ իրադրությունից կտրելու, առանձին պատահական երևույթների ու փաստերի նշանակությունն ուռճացնելու և դրա հիման վրա պատմական պրոցեսի ամբողջությունը, դասակարգային ուժերի հարաբերությունը, ժողովուրդների համագործակցությունը ոչ ճիշտ ներկայացնելու մեջ:

Խոսելով հասարակական կյանքի շատ բնագավառների հետազոտության գիտական օբյեկտիվության մասին, Վ. Ի. Լենինը ժամանակին կգուշացնում էր, որ «Հասարակական երևույթների բնագավառում չկա ավելի տարածված և ավելի սնանկ պրիոմ, քան *առանձին* փաստիկներ դուրս կորզելը, օրինակներ խաղալը: Առհասարակ օրինակներ գտնելը ոչ մի ջանք չի պահանջում, բայց դա և ոչ մի նշանակություն էլ չունի կամ ունի զուտ բացասական նշանակություն, որովհետև ամբողջ գործը առանձին դեպքերի պատմական կոնկրետ իրադրության մեջ է: Փաստերը, եթե դրանք վերցվեն իրենց *ամբողջության*, իրենց *կապի* մեջ,—ո՛չ միայն «համառ», այլև անվերապահորեն ապացուցիչ բան են: Փաստիկները, եթե դրանք վերցվեն ամբողջից դուրս, կապից դուրս, եթե դրանք կցկտուր և կամայական են,—միայն խաղալիք են կամ որևէ է՛լ ավելի վատ բան» (Երկեր, հ. 23, էջ 363):

Ժողովուրդների լենինյան բարեկամությունը սոցիալիզմի կարևորագույն նվաճումներից մեկն է, մեր հասարակության վարգացման պատմական օրինաչափություններից մեկը: Այն ձեռք է բերվել ու ամրապնդվել կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, մեր ժողովուրդների հերոսական պայքարի գնով: Եվ մենք պետք է ո՛չ միայն սրբությամբ պահպանենք այն, այլև մեր ամենօրյա գործունեությամբ նպաստենք նրա հետագա ամրապնդմանն ու հզորացմանը:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՆՈՐ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՊԼԱՆԸ

Ս. ԱՄԻՐՅԱՆ

*1923 թվականի առաջին ամիսներն էին: Լենինն անկողնային հիվանդ էր: Բայց նույնիսկ այդ վիճակում նա հսկայական ջանքեր գործադրելով, թելադրեց իր վերջին հոդվածները. «Էջեր օրագրից», «Կոոպերացիայի մասին», «Մեր ռևոլյուցիայի մասին», «Ինչպես վերակազմենք բանգյուղտեսչությունը», «Լավ է քիչ, բայց լավ»: Դրանք յուրատեսակ քաղաքական կտակ էին պարտիային, պատասխան երկրորդ ինտերնացիոնալի լիդերներին, ռուսական մենշևիկներին և բոլոր նրանց, ովքեր շարունակում էին միաբերան պնդել, թե Ռուսաստանը չի հասել արտադրողական ուժերի զարգացման և կուլտուրայի այնպիսի մակարդակի, որի դեպքում հնարավոր է սոցիալիզմ կառուցել:*

*Վճռականապես մերժելով օպորտունիստների այդ թեզը և ծաղրելով երկրորդ ինտերնացիոնալի «տեսաբանների» բթամտությունն ու ֆիլիստերությունը՝ Լենինը նշում է, որ սոցիալիզմի կառուցման համար իրոք պահանջվում է կուլտուրայի որոշ մակարդակ, թեև ոչ ոք չի կարող ասել, թե որն է այդ որոշ մակարդակը. բայց «...Ինչո՞ւ մենք չենք կարող սկսել, նախ, ռևոլյուցիոն ուղիով այդ որոշ մակարդակի համար նախադրյալներ նվաճելուց, իսկ հետո արդեն, բանվորա-գյուղացիական իշխանության և սովետական հասարակարգի հիման վրա, առաջ շարժվել մյուս ժողովուրդներին հասնելու համար... Իսկ ինչո՞ւ մենք չենք կարող, նախ, ստեղծել մեզ մոտ քաղաքակրթվածության այնպիսի նախադրյալներ, ինչպիսին է կալվածատերերի արտաքսումը և ռուսաստանյան կապիտալիստների արտաքսումը, իսկ հետո արդեն սկսել շարժումը դեպի սոցիալիզմ: Ո՞ր գրքերում եք կարդացել դուք, որ սովորական պատմական կարգի այդպիսի ձևափոխումներն անթույլատրելի են, կամ անհնարին» (Երկեր, հ. 33, էջ 569, 570):*

*Վլադիմիր Իլյիչը խորապես բացահայտեց ու ցույց տվեց մեր երկրում նոր հասարակարգի ստեղծման առանձնահատկություններն ու բացառիկ դժվարությունները, որոնք պայմանավորված էին Ռուսաստանի հետամնաց ու մանր գյուղացիական երկիր լինելով: Նա նշում էր, որ այդպիսի երկրում սոցիալիստական ռևոլյուցիան կարող է վերջնական հաջողություն ունենալ երկու դեպքում միայն. առաջինը՝ եթե նրան ժամանակին աջակցի մեկ կամ մի քանի առաջավոր երկրների սոցիալիստական ռևոլյուցիան և երկրորդ՝ եթե համաձայնություն, սերտ դաշինք լինի պետական իշխանությունն իր ձեռքում պահող բանվոր դասակարգի և գյուղացիական բնակչության մեծամասնու-*

թյան միջև։ Քանի որ առաջին պայմանը բացակայում էր, Լենինը բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դաշինքը համարում էր Ռուսաստանում սոցիալիզմի կառուցման վճռական պայմանը։

Իր վերջին հոդվածներում, որպես մի ամբողջական աշխատության տարբեր մասերում, ընդհանրացնելով սոցիալիստական ռևոլյուցիայի զարգացման հնգամյա փորձը, Վլադիմիր Իլյիչն ավարտեց մեր երկրում նոր հասարակարգի կառուցման ծրագրի մշակումը։ Այստեղ նորից ու նորից Լենինն ընդգծում է, որ երկրում սոցիալիստական շինարարության ամբողջ շղթայի հիմնական օղակը նոր հասարակարգի նյութա-տեխնիկական բազայի և այդ բազայի հիմքի՝ ծանր արդյունաբերության ստեղծումն է։ Այդ մեծ խնդրի լուծման գործում դրսից ոչ մի օգնություն չստանալով՝ Ռուսաստանի բանվոր դասակարգը պետք է երկիրն ինդուստրացնի ոչ թե մանր ապրանքարտադրողներին (գյուղացիությանը) քայքայելու միջոցով, ինչպես առաջարկում էին տրոցկիստները, այլ գյուղացիության հետ հաստատուն դաշինք կնքած, անշեղորեն ձգտելով հասնել քաղաքի և գյուղի աշխատավորության բարեկեցության բարձրացմանը։ «Եթե մենք պահպանենք բանվոր դասակարգի ղեկավարությունը գյուղացիության նկատմամբ,— գրում էր Լենինը,— ապա մենք հնարավորություն կստանանք տնտեսության մեծագույն ու մեծագույն խնայողության գնով մեր պետության մեջ հասնելու այն բանին, որ ամեն մի նվազագույն խնայողություն պահենք մեր խոշոր մեքենայական ինդուստրիայի զարգացման, էլեկտրիֆիկացիայի, հիդրոտորֆի զարգացման համար...» (Երկեր, հ. 33, էջ 598)։

Ռուսաստանում նոր հասարակարգի կառուցման ծրագրի կարևորագույն ու բաղկացուցիչ մասն էր կազմում գյուղի սոցիալիստական վերափոխման պլանը, որը Վլադիմիր Իլյիչը գլխավորապես շարադրեց «Կոոպերացիայի մասին» նշանավոր հոդված-աշխատությունում։

1

ՄԱՐՔՍԻԶՄ-լենինիզմը սովորեցնում է, որ գյուղի սոցիալիստական վերափոխումը պրոլետարական ռևոլյուցիայի ամենադժվարին խնդիրներից է, որը, սակայն, բոլոր երկրների համար նույն բարդությունը չունի։ Զարգացած կապիտալիզմի երկրներում (Անգլիա, ԱՄՆ և այլն), որտեղ վարձու բանվորները ո՛չ միայն արդյունաբերության, այլև հողագործության մեջ ահագին մեծամասնություն են կազմում, գյուղում կա խոշոր, տեխնիկապես զինված արտադրություն, հնարավոր է ռևոլյուցիայի հաղթության դեպքում անցավագին անցնել սոցիալիզմին։ Բանն այլ էր Ռուսաստանում, որտեղ մանր արտադրողտնտեսատերերը ո՛չ միայն գյուղում, այլև երկրի ընդհանուր բնակչության մեջ մեծամասնություն էին կազմում, իսկ բանվորները՝ փոքրամասնություն։

Պրոլետարական ռևոլյուցիան իր առջև խնդիր էր դրել՝ վերացնել գյուղում մանր ապրանքային արտադրությունը, որն ամեն օր կապիտալիզմ ու շահագործում էր ծնում, ստեղծել խոշոր սոցիալիստական տնտեսություններ, անցնել հողի հանրային մշակման։ Դա էր աշխատավոր գյուղացիության սոցիալական ազատագրության և գյուղատնտեսության անշեղ ու աննախընթաց վերելքի ապահովման ուղին, գյուղում նոր հասարակարգի կառուցման ուղին։ Սակայն միլիոնավոր մանր հողագործների կյանքի արմատական հեղաբեկում



հնարավոր չէր իրականացնել միանգամից, առանց մի ամբողջ շարք հատուկ անցումային միջոցների ու հաջորդական նախնական աստիճանների։

Ճիշտ է, Հոկտեմբերյան ռևոլյուցիայով վերացվել էր հողի մասնավոր սեփականությունը, և գյուղատնտեսական արտադրության այդ գլխավոր միջոցի ազգայնացումը պրոլետարական պետությանը տվել էր հողագործության մեջ սոցիալիզմին անցնելու ամենամեծ հնարավորությունները, բայց, այդուհանդերձ, պահպանվում և, նէպի շնորհիվ, զարգանում էր մանր տնտեսատիրությունը, որի հետ ամուր թելերով կապված էր աշխատավոր գյուղացին՝ միջակը։

Պետք է նաև նկատի ունենալ, որ կալվածատերերի ու կապիտալիստների տիրապետությունը տապալելուց հետո գյուղացին ստացել էր դարերով երազած հողն ու իր տնտեսությունն ազատ զարգացնելու հնարավորություն։ Ուստի միանգամից նրա մասնավոր սեփականությունը հանրայնացնել, առանց գործնականում դրա անհրաժեշտությունը ցույց տալու, նշանակում է միլիոնավոր աշխատավոր մասսաների հանել սովետական պետության ու սոցիալիզմի գաղափարի դեմ։

Վլադիմիր Իլյիչը նշում էր, որ միջակ գյուղացին սոցիալիզմի թշնամին չէ, և նա կհամաձայնի սոցիալիզմի կողմն անցնել, երբ հաստատապես և իրականում տեսնի ցուցադրական օրինակն այն բանի, թե այդ անցումն անհրաժեշտ է։ Իսկ ի՞նչ էր խոստանում սովետական իշխանության առաջին տարիներին, ռևոլյուցիոն խանդավառությամբ ստեղծված խոշոր կոլեկտիվ տնտեսությունների ու կոմունաների ցուցադրական օրինակը, որոնց թիվը հասնում էր 10,5 հազարի, ընդգրկելով գյուղացիական տնտեսությունների 0,5 տոկոսը։

Այդ փորձը շատ բան հուշեց Լենինին գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման ծրագիրը՝ կոոպերատիվ պլանը մշակելիս։ Չունենալով անհրաժեշտ նյութա-տեխնիկական բազա, կադրեր, առաջին խոշոր կոլեկտիվ տնտեսությունները չտվին սպասված արդյունքը։

Այստեղ պետք է նկատի ունենալ նաև մեկ ուրիշ կարևոր հանգամանք։ Հայտնի է, որ անգամ անհատական տնտեսությունների արտադրամիջոցներով խոշոր տնտեսությունների ստեղծումը պրոգրեսիվ երևույթ է և բարձրացնում է արտադրությունը։ Իսկ ինչո՞ւ առաջին կոլտնտեսություններն այդ տեսակետից հաջողություն չունեցան։ Ստեղծված կոլեկտիվ տնտեսություններում հավասարարության տենդենցն ու բաշխման կոմունիստական սկզբունքին անմիջապես անցնելը, իհարկե, բացասաբար անդրադարձան արտադրությունը զարգացնելու գործում բազմաթիվ արտադրողների նյութական շահագրգռվածության վրա։ «Մենք հույս ունեինք,— գրում էր Լենինը,— կամ գուցե ավելի ճիշտ կլիներ ասել՝ մենք ենթադրում էինք առանց բավարար հաշվեհաշվության— մանրգյուղացիական երկրում պրոլետարական պետության անմիջական հրամաններով կարգավորել պրոդուկտների պետական արտադրությունն ու պետական բաշխումը կոմունիստական ձևով։ Կյանքը ցույց տվեց մեր սխալը» (Երկեր, հ. 33, էջ 46)։

Նշված հանգամանքների ուժով առաջին խոշոր սոցիալիստական տնտեսությունների փորձը բացասական դեր խաղաց և չէր կարող մանր հողագործին գործնականում համոզել հանրային տնտեսաձևի առավելության մեջ։ 1920 թ. դեկտեմբերին Լենինը նշում է, որ կոլտնտեսությունների հարցը հեր-

թական չէ, քանի որ նրանք այնքան չեն կարգավորված, այնպիսի ողբալի դրության մեջ են, որ արդարացնում են անկելանոց անունը։ Քննադատելով կոմունիստ ֆանտազյորներին, որոնք գտնում էին, թե երեք տարում կարելի է վերակառուցել մանր հողագործի տնտեսական բազան, Վլադիմիր Իլյիչը 1921 թվականին, պարտիայի IX համագումարում, նշում է. «...մանր հողագործի վերամշակման, նրա ամբողջ հոգեբանության ու նրա հակումների վերամշակման գործը սերունդներ պահանջող գործ է։ Այս հարցը լուծել մանր հողագործի նկատմամբ, առողջացնել, այսպես ասած, նրա ամբողջ հոգեբանությունը, կարող է միայն նյութական բազան, տեխնիկան, տրակտորների ու մեքենաների կիրառումը հողագործության մեջ մասսայական մասշտաբով, էլեկտրիֆիկացիան մասսայական մասշտաբով։ Ահա ինչն արմատից ու հսկայական արագությամբ կվերափոխեր մանր հողագործին։ Եթե ես ասում եմ, թե սերունդներ են հարկավոր, այդ չի նշանակում, թե հարկավոր են դարեր։ Դուք շատ լավ եք հասկանում, որ տրակտորներ, մեքենաներ ձեռք բերելն ու վիթխարի երկիրն էլեկտրիֆիկացիայի ենթարկելը— մի այդպիսի գործ համենայն դեպս կարող է հաշվվել առնվազն տասնամյակներով» (Երկեր, հ. 32, էջ 266)։

Այս հարցադրումը, իհարկե, չի խոսում այն մասին, որ Լենինը և կոմունիստական պարտիան օրակարգից հանում էին գյուղի սոցիալիստական վերակառուցման հարցը։ Ընդհակառակն, Վլադիմիր Իլյիչն ընդգծում էր, որ նոր տնտեսական քաղաքականության պայմաններում, երբ մանր ապրանքային արտադրությունը լայն զարգացման հնարավորություն է ստացել, պրոլետարիատի՝ որպես տիրող դասակարգի՝ տվյալ մոմենտի գլխավոր խնդիրն այն միջոցառումների ճիշտ որոշումն ու իրագործումն է, որոնք անհրաժեշտ են գյուղացիությանը ղեկավարելու, նրա հետ ամուր դաշինք կնքելու համար, մի երկար շարք հաջորդական անցումների համար՝ դեպի խոշոր հանրայնացված մեքենայական հողագործություն։ Անցման հենց այդ ուղին էլ Լենինը տեսավ կոոպերացիայի պարզագույն ձևերի մեջ (սպառողական, արհեստակցական, վարկային, փոխօգնության և այլն)։ Միավորելով գյուղացիներին, որպես ինքնուրույն ապրանքարտադրողների և նպաստելով նրանց տնտեսության արագ վերականգնմանն ու զարգացմանը, կոոպերացիայի այդ պարզ ձևերը միաժամանակ մանր հողագործներին կոլեկտիվ տնտեսավարման գիտելիքներ ու փորձ են հաղորդում, ցույց են տալիս վաճառահանման, մատակարարման, վարկային բնագավառում գործերը միասին վարելու օգուտները և դրանով իսկ նրանց աստիճանաբար նախապատրաստում համատեղ տնտեսություն վարելուն։ «Կոոպերատիվ քաղաքականությունը հաջողության դեպքում մեզ կտա մանր տնտեսության վերելք և կհեշտացնի նրա անցումը, անորոշ ժամանակամիջոցում, խոշոր արտադրության՝ կամավոր հիմունքներով» (Լենին, Երկեր, հ. 32, էջ 446)։

Այն ժամանակ պարտիայի պրակտիկ շատ աշխատողներ չէին հասկանում և թերագնահատում էին կոոպերացիայի դերը սոցիալիստական շինարարության մեջ։ Իսկ տրոցկիստները և օպորտունիստական մյուս տարրերն ընդհանրապես ժխտում էին գյուղացիությանը սոցիալիզմի ուղին փոխադրելու համար կոոպերացիան՝ որպես հիմնական միջոց օգտագործելու հնարավորությունը։ Հանդես գալով նման հայացքների դեմ, Լենինն ընդգծում էր գյուղում սոցիալիստական հասարակարգ կառուցելու համար կոոպերացիայի բացառիկ



կարևորությունը։ Կոոպերացիան, որպես մանր արտադրողների միավորման ձև, գործում է նաև կապիտալիզմի օրոք։ Բայց այն, Լենինի բնորոշմամբ, հանդիսանում է «կապիտալիստական կոլեկտիվ ձեռնարկություն»։ Պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում, երբ քաղաքական իշխանությունը և տնտեսության հրամանատարական բարձունքները բանվոր դասակարգի ձեռքին են և ապահովված է նրա դաշինքը մանր ու մանրագույն գյուղացիների հետ, կոոպերացիան հանդիսանում է սոցիալիստական ձեռնարկություն։

Դրա համար էլ գյուղում սոցիալիստական շինարարության հերթական խնդիրը Լենինը համարեց աշխատավոր գյուղացիության գլխովին կոոպերացումը, հայտարարելով, որ «լիակատար կոոպերացման դեպքում մենք արդեն երկու ոտքով սոցիալիստական հողի վրա կանգնած կլինենք»։ Սակայն Լենինը զգուշացնում էր պարտիային, որ այդ հարցը չի կարելի միանգամից, մի դեկրետով կամ հրամանագրով լուծել։ Բնակչությանը ամբողջովին կոոպերացիայի մեջ ընդգրկելու համար կպահանջվի պատմական մի ամբողջ դարաշրջան։ «Լավագույն դեպքում մենք կարող ենք այդ դարաշրջանն անցնել մեկ-երկու տասնամյակում» (Լենին, Երկեր, հ. 33, էջ 559)։

Կոոպերացիայի միջոցով գյուղի սոցիալիստական վերափոխումը բարդ, աստիճանական պրոցես է, որն ընթանում է կոոպերացիայի ստորին ձևերից դեպի բարձրագույն ձևերը՝ խոշոր կոլեկտիվ սոցիալիստական տնտեսությունները։ Անցման այդ աստիճանական պրոցեսում մանր հողագործ գյուղացին նախապատրաստվում է հանրային տնտեսաձևին։ Վլադիմիր Իլյիչը պահանջում էր գյուղացիության կոոպերացման ժամանակ խստորեն կիրառել կամավորության սկզբունքը, որի մասին ավելի ընդհանուր ձևով ժամանակին խոսել են գիտական կոմունիզմի հիմնադիրները։ «...Մենք վճռականապես կողմնակից ենք մանր գյուղացուն,— գրում է Էնգելսը,— մենք կնախաձեռնենք այն ամենը, ինչ փոքր ի շատե հնարավոր լինի... դեպի ընկերություն նրա անցումը հեշտացնելու համար, եթե նա վճռում է այդ անելու, և նույնիսկ նրան տարկետում կտանք իր մանր հողատիրության մասին մտածելու համար, եթե նա դեռևս չի կարող վճռել այդ բանը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր Երկեր, հ. 2, էջ 562)։

Կամավորության այս սկզբունքը Լենինը զարգացրեց նոր պայմաններում։ Առաջնորդի ցուցումները որոշման ուժ ստացան դեռևս պարտիայի VIII համագումարում։ Վլադիմիր Իլյիչի պահանջով համագումարը միջակ գյուղացիության վերաբերյալ իր որոշման մեջ հատուկ կետ մտցրեց այն մասին, որ սովետական իշխանության ներկայացուցիչներն ամենափոքր հարկադրանք անգամ չպետք է թույլ տան միջակ գյուղացիների ամեն տեսակ ընկերություններ ստեղծելիս։ Արժեքավոր են միայն այն միավորումները, որոնք անց են կացվում իրենց՝ գյուղացիների կողմից նրանց ազատ նախաձեռնությամբ և որոնց օգուտները նրանք ստուգել են պրակտիկայում։ Չափազանց շտապողականությունն այս գործում վնասակար է։

Կամավորության լենինյան սկզբունքը բնավ չի ենթադրում կոոպերացման տարերայնություն, ինքնահոս։ Բանվոր դասակարգից ու նրա պետությունից պահանջվում է հսկայական կազմակերպական աշխատանք ծավալել բազմամիլիոն մասսաներին սոցիալիզմի ուղին փոխադրելու համար։ Պետք է նկատի ունենալ, որ մանր հողագործը միաժամանակ սեփականատեր է և աշխատավոր, նա տատանվում է սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև։

Լենինը բազմիցս ընդգծել է երկրի ինդուստրացման ճանապարհով կոոպերատիվ շարժման նյութատեխնիկական ամուր բազայի ստեղծման անհրաժեշտությունը: Կոոպերացված տնտեսություններին կենսականորեն անհրաժեշտ են տրակտորներ, ավտոմոբիլներ, գործիքներ, հանքային պարարտանյութեր, վնասատուների դեմ պայքարի միջոցներ, ոռոգման սարքեր, էներգետիկ ռեսուրսներ և այլն: Այս բոլորը գյուղատնտեսությունը կարող է ստանալ միայն արդյունաբերությունից. «Սոցիալիզմի միակ նյութական հիմքը կարող է լինել խոշոր մեքենայական արդյունաբերությունը, որն ընդունակ է վերակառուցելու նաև հողագործությունը» (Լենին):

Հասկանալի է, որ աշխատավոր գյուղացիությունը սեփական ուժերով չի կարող ձեռք բերել ու յուրացնել այդ տեխնիկան: Այստեղ արդեն առաջ է գալիս բանվոր դասակարգի, սոցիալիստական պետության մեծ օգնության հարցը: «Յուրաքանչյուր հասարակարգ ծնունդ է առնում որոշ դասակարգի ֆինանսական օժանդակությամբ միայն»— գրում է Լենինը: Կոնկրետացնելով իր դրույթը գյուղատնտեսության կոոպերացման վերաբերյալ, Վլադիմիր Իլյիչը մատնանշում է. «Այն հասարակարգը, որին պետք է օժանդակենք սովորականից ավելի, կոոպերատիվ հասարակարգն է»: Այնուհետև Լենինը խնդիր է դնում բանվորներին լայնորեն և պլանաչափ կերպով ներգրավել հողագործության կոմունիստական շինարարության մեջ, որպեսզի առաջավոր բանվորները երեկվա մենատնտես գյուղացուն օգնեն ու սովորեցնեն խոշոր տնտեսություն ստեղծել և վարել, պատրաստեն այդ տնտեսությունները ղեկավարող կադրեր:

Իր կոոպերատիվ պլանում Լենինը կենտրոնական տեղ է հատկացրել նաև կուլտուրական ռևոլյուցիայով գյուղացիական մասսաներին վերափոխելու, նրանց քաղաքակիրթ կոոպերատորներ դարձնելու խնդրին: Լենինը պահանջում էր գործը կազմակերպել այնպես, որ աշխատավոր գյուղացին որոշակի ժամանակամիջոցում (մեկից երկու տասնամյակում) քաղաքակրթվի, խորապես ըմբռնի խոշոր սոցիալիստական տնտեսության առավելությունը և այն հմտորեն ու գիտական ձևով վարել սովորի: Այսպիսով, Վլադիմիր Իլյիչը հայտնագործեց իր դասակարգային էությամբ մանր բուրժուական մասսային՝ աշխատավոր գյուղացիությանը, սոցիալիզմ փոխադրելու միակ ճիշտ ուղին, տվեց գյուղում նոր հասարակարգի կառուցման հանճարեղ պլանը, որը մեծագույն ավանդ էր գիտական կոմունիզմի տեսության մեջ:

## 2

ԿՈՈՊԵՐԱՏԻՎ շարժման ծավալման շնորհիվ, բանվոր դասակարգի բազմակողմանի օգնությամբ և աջակցությամբ գյուղացիությունը կանգնեց սոցիալիզմի ուղու վրա: Մանր անհատական տնտեսությունները կամավոր կերպով միավորվեցին կոլտնտեսությունների մեջ: Ստեղծվեց սովխոզների և մեքենատրակտորային կայանների լայն ցանց: Համատարած կոլեկտիվացումը լենինյան կոոպերատիվ պլանի իրականացման վճռական էտապն էր: «Սովետական գյուղի անցումը խոշոր սոցիալիստական տնտեսության՝ մեծ ռևոլյուցիա էր տնտեսական հարաբերությունների մեջ, գյուղացիության կյանքի ամբողջ կացութաձևի մեջ: Կոլեկտիվացումը գյուղն ընդմիշտ փրկեց կուլակային ստրկացումից, դասակարգային շերտավորումից, քայքայումից և աղքա-



տացումից: Լենինյան կոոպերատիվ պլանի հիման վրա գյուղացիության դարավոր հարցը գտավ իր իսկական լուծումը» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 433):

Վերջին տարիներս, հայտնի և նոր աղբյուրների, արխիվային փաստաթղթերի խոր ուսումնասիրությունը հնարավորություն է տալիս որոշակիորեն ճշտելու, երբեմն էլ նոր ձևով լուսաբանելու մեր երկրում կոլտնտեսային շարժման ղեկավարման, համատարած կոլեկտիվացման տեմպերի ու ժամկետների հարցերը, որոնք կարևոր տեղ են գրավում լենինյան կոոպերատիվ պլանում: Կոլեկտիվ շարժումն սկզբնական շրջանում ամբողջությամբ վերցրած հաջող էր ընթանում: 1929 թվականի վերջերից, առանձին տեղերում նկատվեց կոլեկտիվացման տեմպերի չարդարացված արագացում, որը ժամանակին չկանխվեց և վերաճեց միջակ գյուղացիության նկատմամբ պարտիայի քաղաքականության լուրջ խախտման: Դա Ստալինի թույլ տված սխալների արդյունք էր: Նա անտեսեց Էնգելսի և Լենինի ցուցումներն այն մասին, որ մանր հողագործին սոցիալիզմ տեղափոխելիս հապճեպություն ցուցաբերելը խիստ կերպով վնասում է գործին և վարեց այն արագացնելու կուրս: Կոլեկտիվացման տեմպերն արագացնելու օգտին հանդես էին գալիս «Պրավդա» թերթը և այն ժամանակ ղեկավար պոստերում գտնվող Մոլոտովն ու Կագանովիչը: Վերևի ճնշման տակ շատ կազմակերպություններ մեկից երկու տարով գերակատարեցին կոլեկտիվացման նախատեսված ժամկետները:

Տեմպերն արագացնել, դա նշանակում է հաշվի չառնել կոլտնտեսություններ մտնելու համար գյուղացիների պատրաստ լինելու աստիճանը: Նախապատրաստական քրտնաջան աշխատանքը շատ տեղերում փոխարինվեց՝ «Ով չի մտնում կոլտնտեսություն, նա Սովետական Միության թշնամին է» լոզունգի գործադրումով: Իր տնտեսության հետ գյուղացու խոր կապվածության արհամարհումը Ստալինի կողմից, տեղերի խելացի առաջարկությունները չլսելը, ամենակոպիտ սխալն էր, պարտիական գծից կատարված շեղումների աղբյուրը, շեղումներ, որոնք զգալի վնաս հասցրին գյուղում սոցիալիստական շինարարությանը: Գյուղացիության մի մասի մոտ խախտվեց սոցիալիզմի ու խոշոր տնտեսության նկատմամբ ունեցած հավատը, որն ստեղծվել էր կոոպերատիվ շարժման և սոցիալիստական շինարարության նախորդ էտապներում: Իսկ դա իր հերթին վնասում էր երկու աշխատավոր դասակարգերի դաշինքին:

Կոլտնտեսային շարժման մեջ թույլ տրված սխալներից ու խոտորումներից օգտվեցին առաջին հերթին կուլակները, որոնք իրենց թշնամական գործունեության համար նպաստավոր հող գտան և ուժեղացրին իրենց քայքայիչ աշխատանքը: Դասակարգային թշնամիները գյուղացիներին դրդում էին կոլտնտեսություններ մտնելուց առաջ ոչնչացնել անասունները: Նրանց այդ թշնամական գործողության հետևանքով անասնապահությանը հասցվեց ծանր վնաս, որից այն երկար ժամանակ չէր կարողանում ոտքի կանգնել: «Կոլտնտեսային շինարարության մեջ թույլ տրված սխալները տանում էին դեպի կոլտնտեսային շարժման պսակազերծում, սոցիալիստական շինարարության ամբողջ գործի թուլացում: Այդ սխալները տենդենց ունեին պարտիային շեղելու գյուղացիության հիմնական մասսաների հետ դաշինքի և պրոլետարական դիկտատուրան ամրապնդելու ուղուց» (ՍՄԿՊ պատմություն, էջ 526): Սակայն նշված սխալները չէին բխում սոցիալիստական կարգի հիմքերի էությունից,

Պարտիայի ծավալած վճռական պայքարի և ձեռնարկած միջոցառումների շնորհիվ, կարճ ժամանակում շտկվեցին թույլ տրված սխալները, ամրապնդվեցին ու մեծացան կոլտնտեսային շարժման հաջողությունները։ Գյուղացիական տնտեսությունները վերջնականապես միավորվեցին կոլտնտեսություններում։ Լուծվեց գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման խնդիրը՝ պրոլետարական ռևոլյուցիայի ամենաբարդ ու դժվար լուծվող խնդիրը։ ՍՍՌՄ-ը դարձավ աշխարհում ամենախոշոր գյուղատնտեսական երկիրը, որի գյուղացիության կյանքում սկսվեց նոր սոցիալիստական ժամանակաշրջան։

## 3

Կոլեկտիվացումը ընձեռում է գյուղում արտադրողական ուժերի արագ ու աննախընթաց վերելքի հնարավորություններ, որոնք, սակայն, իրենք իրենց կյանքի չեն կոչվում։ Լենինը սովորեցնում է, որ այդ հնարավորությունները կարելի է իրականության վերածել այն ժամանակ, երբ խոշոր սոցիալիստական տնտեսությունները դրվեն հզոր ու նորագույն տեխնիկական բազայի վրա, կիրառվի կուլտուրական ու արդյունավետ հողագործության սիստեմ, իրականացվի հմուտ տնտեսավարություն, անշեղորեն բարձրացվի արտադրողի նյութական շահագրգռվածությունը աշխատանքի արդյունքների նկատմամբ։

Երկրում կոլեկտիվացումն ավարտելուց հետո մեր պարտիան ձեռնամուխ եղավ նշված խնդիրների լուծմանը և իր ծավալած հսկայական կազմակերպական աշխատանքով հասավ խոշոր հաջողությունների։ Բայց պետք է նշել, որ կոլեկտիվ տնտեսությունները զարգացած սոցիալիստական ձեռնարկությունների վերածվելու ճանապարհին հանդիպեցին օբյեկտիվ և սուբյեկտիվ մի շարք լուրջ դժվարությունների։

Նոր հասարակության հիմքերի ստեղծման նպատակով, պարտիան տնտեսության հիմնական կուտակումներն ուղղեց ամենից առաջ ծանր ինդուստրիայի ստեղծմանն ու զարգացմանը, որը միաժամանակ վճռական խթան հանդիսացավ գյուղի սոցիալիստական վերակառուցման համար։ Սակայն երկրորդ համաշխարհային պատերազմն իր բացասական կնիքը դրեց երկրի արտադրողական ուժերի, հատկապես գյուղատնտեսության զարգացման վրա։

Սոցիալիստական սիստեմի էությունից չէին բխում նաև այն դժվարությունները, որոնք առաջ եկան գյուղատնտեսության բնագավառում և գյուղացիության նկատմամբ վարվող քաղաքականության թերությունների ու սխալների հետևանքով։ Շատ տեղերում խախտվեց արտադրությունը զարգացնելու գործում կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության լենինյան սկզբունքը։ Գյուղատնտեսությունը ետ պահող սուբյեկտիվ պատճառներից էին նաև տեխնիկայի ոչ ռացիոնալ օգտագործումը, սխալ պլանավորումը։ Անհրաժեշտ ուշադրություն չէր նվիրվում նաև խոշոր սոցիալիստական տնտեսությունը հմտորեն վարող կադրերի պատրաստման վրա։ Նշված խախտումներն ու թերությունները կաշկանդում էին գյուղում աշխատավոր մասսաների ստեղծագործական ուժերն ու նախաձեռնությունը։

Անհատի պաշտամունքի շրջանում սխալ էր ըմբռնվում կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության և արտադրության կազմակերպման կոլտնտեսային ձևի բնույթը։ Թերագնահատելով կոլտնտեսային սեփականությունը,



այն դիտելով որպես սոցիալիստական սեփականության ոչ լիարժեք ձև, Ստալինը եկավ այն եզրակացության, որ արտադրության կոլտնտեսային ձևը մոտ ապագայում կսպառի իր հնարավորությունները և արդեն այժմ սկսել է խանգարել գյուղատնտեսական արտադրության պետական պլանավորմանը։ Նրման եզրակացությունը ամբողջովին հակասում էր լենինյան կոոպերատիվ պլանի ոգուն, նրա էությանը, բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի գաղափարին։

## 4

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի 1953 թվականի սեպտեմբերյան պլենումով սկսվեց նոր շրջան կոլտնտեսային կարգի, սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման մեջ, բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի էլ ավելի ամրապնդման գործում, աշխատավոր գյուղացիության կյանքում։ Պլենումը բացահայտեց գործերի իրական վիճակը գյուղում, լենինյան ուղղամտությամբ քննադատեց գյուղատնտեսության ղեկավարության մեջ եղած թերություններն ու սխալները, որոնք արգելակում էին կոլտնտեսային արտադրության զարգացումը։ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը մշակեց գյուղատնտեսության շեշտակի վերելքի համարձակ ծրագիր, որը հետագայում լրացվեց նորանոր միջոցառումներով։

Ամենից առաջ ամրապնդվեց կոլտնտեսային կարգը գյուղում։ Իրականացվեց արտադրության բարձրացման նյութական ազդակների մի ամբողջ սիստեմ։ Ղեկավարվելով Լենինի ցուցումներով, պարտիան մեծ աշխատանք կատարեց խոշոր սոցիալիստական տնտեսությունները նյութատեխնիկական հզոր բազայի վրա դնելու և կազմակերպող, մասնագետ կադրերով ամրապնդելու ուղղությամբ։ Սոցիալիստական արդյունաբերությունն արդեն մեծ հնարավորություններ ուներ այդ խնդիրը լուծելու համար։ 1953 թվականից հետո ավելի քան երկու անգամ մեծացել է գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը։ Սոցիալիստական գյուղատնտեսության վերելքի կազմակերպման մեծ ու կարևոր միջոցառումներից էր 42 միլիոն հեկտար խամ ու խոպան հողերի յուրացումը։

Եվ ահա պարտիայի ու սովետական ժողովրդի պայքարը հաղթանակեց։ 1953—1958 թվականներին իրականացվեց գյուղատնտեսության շեշտակի վերելքը։ Այդ գլխավորապես արտահայտվեց գյուղատնտեսական մթերքների արտադրության շեշտակի ավելացման մեջ։ Բավական է նշել, որ 5 տարում հացահատիկի մթերումներն ավելացան 91, մսինը՝ 62 տոկոսով, կաթինը՝ ավելի քան երկու անգամ և այլն։ Հաղթահարվեց գյուղատնտեսության խիստ ետ մնալն արդյունաբերությունից. ստեղծվեց սոցիալիստական գյուղատնտեսության ամուր ու կայուն բազա նրա հետագա համակողմանի զարգացման համար։

Կոմունիզմի ծավալուն շինարարության ներկա էտապում գյուղատնտեսության հետագա արագ զարգացման ապահովումը դարձել է առաջնակարգ համաժողովրդական խնդիր։ Սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացումն ապահովելու հարցերի հարցն այսօր գործի կազմակերպական կողմի բարելավումն է, որի համար մեծ հնարավորություններ է ստեղծել գյուղատնտեսության արտադրական ու պարտիական ղեկավարության վերա-

կառուցումը։ Այժմ առավել, քան երբևէ, հետևողականորեն կենսագործվում և իրականություն են դառնում մեծ Լենինի ցուցումները սոցիալիստական գյուղատնտեսության մեջ կուլտուրական, արդյունավետ հողագործության սիստեմ արմատավորելու մասին։

Հաջողությամբ են պսակվում պարտիայի ու սովետական ժողովրդի գործադրած հերոսական ջանքերը կոմունիստական շինարարության այս կարևոր բնագավառում։ Ահա պերճախոս փաստերը. 1962 թվականին հացահատիկի արտադրությունը հասավ 9 միլիարդ փթի՝ 1953 թվականի 5 միլիարդի դիմաց, մսի արտադրությունը կազմեց 9,4 միլիոն տոննա՝ 1953 թվականի 5,8 միլիոն տոննայի դիմաց. կաթինը՝ 64,2 միլիոն տոննա՝ 1953 թվականի 36,5 միլիոն տոննայի դիմաց։ Այս փաստերը գործնականում հերքում են բուրժուական մի շարք տնտեսագետների ու քաղաքական գործիչների ստահոդ պնդումներն այն մասին, թե իբր Սովետական Միության գյուղատնտեսությունը ճգնաժամ է ապրում, սոցիալիզմը գյուղում չի կարող ստեղծել բարձր արտադրողական, էֆեկտիվ տնտեսություն։

Մեր այդ հաջողությունները վառ կերպով ցուցադրում են կոլտնտեսային կարգի մեծ հնարավորությունները։ Դրանք լենինյան կոոպերատիվ պլանի կենդանի մարմնավորումն են, կապիտալիստական գյուղատնտեսության հանդեպ սոցիալիստական գյուղատնտեսության առավելությունների դրսևորումը։ Լենինյան կոոպերատիվ պլանը գյուղն ու գյուղացիությունը կապիտալիզմից կոմունիզմ տեղափոխող ծրագիր է։ Այժմ հաջողությամբ իրագործվում է այդ հանճարեղ պլանը։ «Մենք կատարեցինք լենինյան կոոպերատիվ պլանի առաջին մասը։ Գյուղացիությունը փոխադրեցինք կոլտնտեսությունների ուղին, ստեղծեցինք սովխոզների լայն ցանց, ամրապնդեցինք կոլտնտեսություններն ու սովխոզները,— ՍՄԿՊ XXII համագումարում նշեց ընկեր Խրուշչովը։— Այժմ մենք պետք է նոր վճռական առաջընթաց քայլ կատարենք՝ ապահովենք բոլոր կոլտնտեսությունների և սովխոզների բարգավաճումը, դրանց արտադրությունը բարձրացնենք կոմունիզմին արժանի մակարդակի»։

Գյուղի սոցիալիստական վերափոխման լենինյան կոոպերատիվ պլանն առաջին անգամ կիրառվեց Սովետական Միությունում։ Բայց շուտով այն փայլուն քննություն բռնեց նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրներում, ցուցադրելով իր հսկայական միջազգային նշանակությունը։ Առաջնորդվելով այդ պլանով և օգտագործելով նրա կենսագործման սովետական փորձը, ժողովրդական դեմոկրատիայի երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաները հաջողությամբ իրականացնում են գյուղի սոցիալիստական վերափոխումը։

Եղբայրական պարտիաները իրենց երկրների ազգային առանձնահատուկ ու պատմական նոր պայմաններում ավելի են հարստացնում ու զարգացնում գյուղի սոցիալիստական վերակառուցման լենինյան տեսությունը։

---

# ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆ ՈՒԺԵՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ

Ա. ԹԵԼՈՒՆՑ

ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ հասարակական գիտակցության ձևերից մեկն է, մարդկանց դարավոր պրակտիկ գործունեության տեսական ամփոփումն ու իմաստավորումը։ Գիտության ծագման ու զարգացման հիմքում ընկած են հասարակության, ամենից առաջ նրա արտադրության զարգացման մակարդակն ու պահանջները։ Սակայն գիտությունը հասարակության տնտեսական զարգացման պասսիվ հետևանքը չէ, այլ ակտիվ տեսական ու գործնական ուժ, որը ներգործում է հասարակական կյանքի բոլոր բնագավառների, հատկապես նյութական կյանքի պայմանների վրա։

Ծագելով արտադրության զարգացման պահանջներից, գիտությունն իր զարգացման որոշակի աստիճանում դառնում է արտադրության զարգացման կարևորագույն լծակներից ու խթաններից մեկը։ Գիտության տվյալների արտադրական կիրառումը՝ կապված մեքենայական արտադրության առաջացման և, համապատասխանաբար, կոմբինացված հասարակական աշխատանքի լայն ծավալման հետ, պայմանավորում է գիտության վերածումն արտադրողական ուժի և արտադրողական ուժերի զարգացման կարևոր գործոնի։

Արտադրողական ուժերը հասարակության ձեռք բերած նյութական և հոգևոր ուժերի ամբողջությունն են, որ մարդիկ գործադրում են արտադրության կազմակերպման, կարգավորման և իրականացման համար։ Ամեն մի հասարակության հիմնական արտադրող ուժը մարդիկ են, աշխատավոր մասսաները, որոնք ստեղծում և գործադրում են արտադրության նյութական ու հոգևոր կոմպոնենտները, արտադրում կյանքի համար անհրաժեշտ նյութական ու կուլտուրական արժեքներ։ Բարձր զարգացած արտադրությունը պահանջում է տեխնիկական գիտելիքներ, արտադրության պրոցեսի գիտական կազմակերպում, գիտության տվյալների գիտակցված կիրառում, մի խոսքով՝ գիտության, որպես արտադրողական ուժի, գործադրում։

Ժամանակակից արտադրության նյութական այնպիսի կարևոր գործոններ, ինչպիսիք են՝ մեքենաները, ամբողջ արտադրական տեխնիկան, իրենցից ներկայացնում են առարկայացած գիտելիքներ։ «Բնությունը,— գրել է Մարքսը,— չի կառուցում մեքենաներ, շոգեկառքեր, երկաթուղիներ, էլեկտրական հեռագրեր, սելֆակտորներ և այլն։ Այդ ամենը մարդկանց գործունեության արդյունք են. բնական նյութ, որ վերածվել է բնության վրա մարդկային կամքին իշխելու օրգանների կամ բնության մեջ այդ կամքն իրագործող օրգանների։

Այդ ամենը մարդկային ձեռքով ստեղծված՝ մարդկային ուղեղի օրգաններ են. գիտելիքի իրայնացված ուժը» (Из неопубликованных рукописей К. Маркса, «Большевик», *1939, № 11—12, էջ 63*)։ Գիտությունը, հետևաբար, հանդիսանում է արտադրողական ուժ՝ որպես առարկայացած գիտելիք, ուստի և Մարքսը գրում էր, որ հաստատուն կապիտալի զարգացման աստիճանն այն բանի ցուցանիշն է, թե ի՛նչ չափով են հասարակական գիտելիքներն ընդհանրապես—գիտությունը—վերածվել անմիջական արտադրողական ուժի (տե՛ս նույն տեղում)։ Որքան բարձր է արտադրության ու գիտության զարգացման մակարդակը, այնքան արտադրության իրեղեն օբյեկտների մեջ ավելի մեծ չափով է առարկայացված գիտությունը։ Ժամանակակից տեխնիկան ու տեխնոլոգիան մարմնացնում են գիտության բազմազան ճյուղերի նվաճումները։ Օրինակ, էլեկտրոնային տեխնիկան մարմնացնում է մաթեմատիկայի, ֆիզիկայի, քիմիայի, կենսաբանության, լեզվաբանության, տրամաբանության ու գիտության այլ ճյուղերի տվյալները։ Ժամանակակից տեխնիկայի ամեն մի լուրջ առաջադիմություն, չխոսելով արդեն արտադրության մեջ հեղաշրջում կատարող նորամուծությունների մասին, նախապատրաստվում է գիտության կողմից։

Բայց գիտության՝ որպես արտադրողական ուժի ֆունկցիան չի սահմանափակվում միայն նրանով, որ նրա տվյալներն արդեն ստացել են իրեղեն կերպարանք, մարմնացել են արտադրության միջոցների մեջ։ Գիտությունը դառնում է արտադրողական ուժ, որպես իրացվող գիտելիքներ, այսինքն՝ արտադրության պրոցեսում գործող գիտելիքներ։ Դրանց գործադրման և իրայնացման պրոցեսը գիտությունն արտադրողական ուժի վերածելու պրոցես է։ «Եթե արտադրական պրոցեսը դառնում է գիտության կիրառման ոլորտ,— գրել է Մարքսը,— ապա և, ընդհակառակն, գիտությունը դառնում է արտադրական պրոցեսի գործոնը, այսպես ասած՝ ֆունկցիան» (Из рукописного наследства К. Маркса, «Коммунист», *1958, № 7, էջ 22*)։ Այսպիսով գիտությունը հանդիսանում է արտադրողական ուժ, ինչպես նրա՝ արտադրության իրային օբյեկտների վերածված տվյալների գործադրման, այնպես էլ նրա տեսական տվյալների տեխնիկական ու տեխնոլոգիական կիրառման պրոցեսում։

***

ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ պայմաններում գիտությունը տիրապետող դասակարգի ձեռքին աշխատավոր ժողովրդի շահագործման միջոց է, իմպերիալիստական ագրեսիվ քաղաքականության, զավթողական պատերազմների նախապատրաստման ու վարման միջոց։ Այստեղ գիտությունը արտադրական կիրառման պրոցեսում հանդես է գալիս որպես արտադրության ինքնուրույն գործոն, այսինքն՝ անջատված է արտադրողից և որպես կապիտալի ուժ հակադրված նրան։ Լինելով աշխատանքի պայմանների թեթևացման միջոց, գիտությունն իր կապիտալիստական կիրառման հետևանքով, ընդհակառակն, դառնում է բանվորի շահագործումն ուժեղացնելու ու ինտենսիվացնելու, նրան արտադրությունից դուրս վանելու, իսկ արտադրության պրոցեսում՝ նրան արտադրության կցորդի աստիճանի իջեցնելու միջոց։

Այստեղից հետևում է, որ կապիտալիզմի պայմաններում գիտության կիրառումն ունի ո՛չ միայն այլանդակ, այլև սահմանափակ բնույթ։ Սպասարկելով շահագործող դասակարգի շահերը, նա չի կարող դրսևորել իր ամբողջ պրակտիկ պոտենցիան։ Նրա, ինչպես և ամբողջությամբ վերցրած արտադրողական ուժերի զարգացումը, կաշկանդվում է արտադրական հարաբերությունների, ամբողջ սոցիալական սիստեմի կողմից։ Աշխատավոր զանգվածները զրկված են գիտությանը տիրապետելու, նրա բարիքներից օգտվելու հնարավորությունից։ «Ամբողջությամբ վերցրած կապիտալիզմը ավելի ու ավելի է կաշկանդում ժամանակակից արտադրողական ուժերի զարգացումը,— նշվում է ՍՄԿՊ Ծրագրում։— Մարդկությունը թևակոխում է գիտա-տեխնիկական հեղաշրջման ժամանակաշրջանը, որը կապված է միջուկային էներգիային տիրապետելու, տիեզերքի յուրացման, քիմիայի զարգացման, արտադրության ավտոմատացման և գիտության ու տեխնիկայի մյուս խոշորագույն նվաճումների հետ։ Բայց կապիտալիզմի արտադրական հարաբերությունները չափազանց նեղ են գիտա-տեխնիկական ռևոլյուցիայի համար։ Այդ ռևոլյուցիան իրագործել և հասարակության օգտին նրա պտուղները օգտագործել կարող է միայն սոցիալիզմը» (*ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 447—448*)։

Սոցիալիստական հասարակարգն անսահման հնարավորություններ է ստեղծել գիտության զարգացման և նրա նվաճումների բազմակողմանի կիրառման համար։ Արտադրության սոցիալիստական եղանակը բնութագրվում է առավել ռևոլյուցիոն տեխնիկական բազիսով, արտադրողական ուժերի զարգացումը խթանող արտադրական հարաբերություններով, արտադրության զարգացման անկաշկանդ հնարավորություններով, որոնք կազմում են գիտության զարգացման ու արդյունավետ կիրառման օբյեկտիվ բազան։ Մշտապես բարձրանում է հասարակության վերնաշենքի դերը գիտության զարգացման և օգտագործման մեջ։ Ելնելով աշխատավոր ժողովրդի շահերից՝ կոմունիստական պարտիան ու սոցիալիստական պետությունն իրականացնում են գիտության զարգացման օբյեկտիվ հնարավորությունները, ուղղում ստեղծագործական միտքը՝ դեպի հասարակության առջև ծառացած կարևորագույն խնդիրների լուծումը, ժամանակին ընթացք տալիս գիտության զարգացման և գործադրման գծով երևան եկող խնդիրներին, պլանավորում ու կազմակերպում նրա նվաճումների լայն ներդրումն արտադրության մեջ և հասարակական կյանքի մյուս բնագավառներում։

Սոցիալիստական հասարակարգում գիտության զարգացումն ու նրա նվաճումների լայն ներդրումը բխում են աշխատավոր ժողովրդի շահերից ու պահանջմունքներից, ուստի և կոմունիստական պարտիան ու սոցիալիստական պետությունը, որոնք չունեն այլ շահեր, բացի ժողովրդի կենսական շահերից, ապահովում են գիտության զարգացումը, նրա նվաճումների կիրառումը և պայմաններ ստեղծում, որ իրենք՝ ժողովրդական զանգվածները, ավելի ու ավելի մեծ չափով բարձրացնեն իրենց կուլտուրական մակարդակը և տիրապետեն գիտությանն ու նրա կիրառման միջոցներին։ «...Ժողովրդական մասսաները,— գրել է Վ. Ի. Լենինը,— ո՛չ մի տեղ այնպես շահագրգռված չեն իսկական կուլտուրայով, ինչպես մեզնում. այդ կուլտուրայի խնդիրները ո՛չ մի տեղ այնպես խոր ու այնպես հետևողական կերպով չեն դրվում, ինչպես մեզնում. ո՛չ մի տեղ, ո՛չ մի երկրում պետական իշխանությունը չի գտնվում բանվոր դասակարգի ձեռքում, որը... ո՛չ մի տեղ... պատրաստ չէ այս տեսակետից իր դրությունը բարելավելու համար անելու և չի անում այնպիսի զոհաբերություններ, ինչպես մեզնում (*Երկեր, հատոր 33, էջ 550*)։

Գիտության զարգացման և նրա նվաճումների լայն գործադրման անհրաժեշտ պայմանը կուլտուրական ռևոլյուցիայի լենինյան հանճարեղ պլանի կենսագործումն էր։ Իրականացել են Լենինի մեծ կանխատեսումները։ Կուլտուրական ռևոլյուցիայի մեծ արդյունքը եղավ ժողովրդի կուլտուրական մակարդակի բարձրացումը, համատարած գրագիտությունը, կուլտուրայի ու գիտության ծաղկումը, ինտելիգենցիայի բազմամիլիոն բանակի ստեղծումը, որը գիտության զարգացման և նրա նվաճումների կիրառման առաջատար ուժն է։

Սոցիալիստական հասարակարգում ինտելիգենցիայի աճի մասին պատկերացում կազմելու համար բավական է միայն հիշատակել, որ 1961 թվականին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող մասնագետների թիվը հասնում էր 9433 հազար մարդու, որը մոտ 4 անգամ ավելի էր, քան 1941 թվականին և մոտ 50 անգամ ավելի, քան 1913 թվականին։ Այդ մասնագետների մեծ մասն զբաղված է անմիջական նյութական արտադրության մեջ։ Այսպես, 1959 թվականին ժողովրդական տնտեսության մեջ զբաղված՝ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող 8017 հազար մասնագետներից 4683 հազարը ինժեներա-տեխնիկական աշխատողներ և գյուղատնտեսության մասնագետներ էին։ Տեխնիկական ինտելիգենցիայի բազմամարդ բանակը և գիտության աշխատողների զգալի մասը գիտությունն անմիջականորեն կիրառում են նյութական արտադրության բնագավառներում, ապահովում գիտության վերածումն անմիջական արտադրողական ուժի։

Տեխնիկական ինտելիգենցիայի աճը տեղի է ունենում ամբողջ աշխատավոր ժողովրդի կրթական ու տեխնիկական մակարդակի բարձրացման պայմաններում։ 1959 թվականին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բոլոր աշխատողների 43,3 տոկոսն ուներ միջնակարգ և բարձրագույն կրթություն, 1939 թվականի 12,3 տոկոսի փոխարեն։ Տարեցտարի ավելանում է բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցողների թիվը ո՛չ միայն գերազանցապես մտավոր աշխատանքով, այլև ֆիզիկական աշխատանքով զբաղվողների շարքերում։ Այսպես, 1939 թվականին գերազանցապես ֆիզիկական աշխատանքով զբաղվող 1000 մարդուց միայն 43-ն ունեին միջնակարգ և բարձրագույն կրթություն, իսկ 1959 թվականին՝ 316-ը։ Գերազանցապես մտավոր աշխատանքով զբաղվող 1000 մարդուց միջնակարգ և բարձրագույն կրթություն ունեցողների թիվը 1959 թվականին կազմում էր 884 մարդ։

Ինտելիգենցիայի և, հատկապես, տեխնիկական ինտելիգենցիայի աճն ապահովվում է այն մշտական հոգատարությամբ, որ ցուցաբերում է սովետական ժողովուրդը բարձրագույն դպրոցի նկատմամբ։ 1961/62 ուսումնական տարում ՍՍՌՄ-ում գործում էր 731 բարձրագույն ուսումնական հաստատություն՝ 2640 հազար ուսանողներով։ Մինչդեռ 1914 թվականին Ռուսաստանում կային միայն 105 բուհ՝ 127 հազար ուսանողներով։ Մեծ չափով ավելացել է նաև միջնակարգ մասնագիտական դպրոցների և նրանցում սովորողների թիվը։ 1961/62 ուսումնական տարում 3416 միջնակարգ մասնագիտական դպրոցներում սովորում էին 2370 հազար մարդ՝ 44 անգամ ավելի, քան 1914 թվականին։ Մեր երկիրը տարեկան պատրաստում է 3 անգամ ավելի ինժեներներ, քան ԱՄՆ-ը։ Համապատասխանաբար ավելանում է նաև գիտական աշխատողների թիվը։ Այժմ ՍՍՌՄ-ում կան ավելի քան 450 հազար գիտական աշխատողներ՝ նախասովետական շրջանի 10 հազարի դիմաց։



Սովետական հասարակարգում գիտության զարգացումը տեղի է ունենում ամբողջ աշխատավոր ժողովրդի, հատկապես անմիջականորեն արտադրության մեջ զբաղված մարդկանց կրթական ու կուլտուրական մակարդակի բարձրացման պայմաններում։ Բանվոր դասակարգի շարքերը համալրվում են մասնագիտական տեխնիկական ուսումնարաններն ու դպրոցներն ավարտողներով, որոնց թիվն այժմ տարեկան անցնում է մեկ միլիոնից։ Միաժամանակ, բանվորներն ու ծառայողները սովորում են նոր մասնագիտություններ, բարձրացնում մասնագիտական որակավորումն արտադրության մեջ։ 1961 թվականին նոր մասնագիտությունների են տիրապետել և բարձրացրել մասնագիտական որակավորումը 10500 հազար մարդ (1940 թվականին՝ 3605 հազար), որոնցից 8800 հազարը բանվորներ էին (1940 թվականին՝ 3078 հազար)։

Այս տվյալները խոսում են այն մասին, որ սոցիալիստական հասարակարգում, արտադրության բուռն զարգացման հետ միասին, զարգանում է հիմնական արտադրողական ուժը՝ բարձրանում է նյութական բարիքներ արտադրողների կրթական ու տեխնիկական մակարդակը և, հետևաբար, տարեցտարի ավելանում այն մարդկանց թիվը, որոնք տիրապետելով գիտության, տեխնիկայի հիմունքներին, անմիջականորեն դրանք կիրառում են արտադրության մեջ, դրանով իսկ ընդլայնելով և արագացնելով գիտությունն արտադրողական ուժի վերածելու պրոցեսը։

Սոցիալիստական կարգերի մեծագույն նվաճումներից մեկն աշխատանքի և գիտության միացումն է, որն իր խոր արտահայտությունն է գտնում հատկապես արտադրության առաջավորների՝ ռացիոնալիզատորների և նորարարների մասսայական շարժման մեջ։ Անընդհատ ավելանում է այն մարդկանց թիվը, որոնք արտադրության մեջ ֆիզիկական աշխատանքը շաղկապում են մտավոր աշխատանքի հետ, բարձրացնում իրենց կրթական ու տեխնիկական մակարդակը, կատարում արժեքավոր առաջարկություններ՝ արտադրության զարգացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղղությամբ, դրանք կիրառում գործնականում։ Այսպես, 1940 թվականին արված է 600 հազար, 1956 թվականին 2,4 միլիոն, իսկ 1962 թվականին 4,7 միլիոն ռացիոնալիզատորական առաջարկություն։ 1961—62 թթ. ընթացքում արտադրության մեջ ներդրված է 4,4 միլիոնից ավելի գյուտարարական ու ռացիոնալիզատորական առաջարկություն, որի շնորհիվ ժողովրդական տնտեսության մեջ տարեկան տնտեսվում է 1,6 միլիարդ ռուբլի։ Լայնորեն ծավալվում են գիտատեխնիկական առաջադիմությանն օժանդակող հասարակական ձևերը, ստեղծվում և հաջողությամբ են գործում զանազան հասարակական կոնստրուկտորական, տնտեսական վերլուծության բյուրոներ, նորարարների խորհուրդներ և այլն։ Ռացիոնալիզատորական և նորարարական շարժման այդ աճը միայն քանակական չէ։ Զարգանում ու բարդանում է գիտության ժամանակակից նվաճումների վրա խարսխվող տեխնիկան և, եթե դրա հետ միասին ծավալվում է ռացիոնալիզատորական շարժումը, ապա այդ կատարվում է նոր պահանջների ու խնդիրների հիման վրա։ Մեր օրերում արտադրության ռացիոնալիզատորներից պահանջվում են ավելի խոր գիտելիքներ, ունակություն ու փորձ։

Գիտության ու աշխատանքի, ուսման և արտադրության միացման վառ օրինակ է կոմունիստական աշխատանքի ժամանակակից ձևերի տարածումն արտադրության մեջ։ Կոմունիստական աշխատանքի հարվածայինների, բրիգադների ու ձեռնարկությունների կոչման համար մրցության մեջ ընդգրկված

են 20 միլիոնից ավելի աշխատավորներ։ Կոմունիստական աշխատանքի ժամանակակից ձևերի առանձնահատկություններից մեկն այն է, որ նրա մեջ ընդգրկվածներն անընդհատ հարստացնում են իրենց գիտական ու տեխնիկական գիտելիքները, տիրապետում ժամանակակից տեխնիկային, կիրառում գիտության նվաճումները։ Աշխատավոր ժողովրդի ամեն մի նոր նախաձեռնություն, որն արագացնում է հասարակության առաջընթացը դեպի կոմունիզմ, կապված է արտադրության, կոմունիստական շինարարության ամբողջ պրակտիկայի հետ, գիտության մերձեցման ու նրա նվաճումների լայն ներդրման հետ։ Եվ դա բնական է, որովհետև կոմունիզմը ժողովրդական մասսաների գիտակցական ստեղծագործությունն է, գիտության սկզբունքների հիման վրա կազմակերպված հասարակարգ։ Որքան ավելի է զարգանում աշխատանքը, որքան ավելի մասսայական մասշտաբով է այն ընդունում ստեղծագործական բնույթ, այնքան ավելի է այն կապված գիտության, նրա նվաճումների կիրառման հետ։

***

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ պարտիան ու սոցիալիստական պետությունը ձեռք են առնում արմատական լուրջ միջոցներ աշխատավորների կրթական ու տեխնիկական մակարդակի հետագա բարձրացման, գիտատեխնիկական անշեղ առաջադիմության համար։ Ընդլայնվում է բոլոր տիպի ուսումնական հաստատությունների ցանցը, ամրապնդվում դպրոցի, այդ թվում և բարձրագույն դպրոցի ու կյանքի, պրակտիկայի կապը, ստեղծվում են անսահման հնարավորություններ գիտության բոլոր ճյուղերի զարգացման, նրա նվաճումների ռացիոնալ ու լայն օգտագործման համար։ «Պարտիան,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— ամեն կերպ կնպաստի կոմունիստական հասարակարգի կառուցման գործում գիտության դերի հետագա ուժեղացմանը, արտադրողական ուժերի զարգացման նոր հնարավորություններ բացող հետազոտությունների խրախուսմանը, գիտատեխնիկական նորագույն նվաճումների լայն և արագ արմատավորմանը պրակտիկայում, էքսպերիմենտալ աշխատանքների, այդ թվում անմիջականորեն արտադրության մեջ կատարվող աշխատանքների, վճռական վերելքին, գիտատեխնիկական ինֆորմացիայի, հայրենական և արտասահմանյան առաջավոր փորձի ուսումնասիրման ու տարածման ամբողջ սիստեմի օրինակելի դրվածքին։ Գիտությունը լրիվ չափով կդառնա անմիջական արտադրողական ուժ» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 495)։

Գիտության՝ լրիվ չափով արտադրողական ուժ դառնալու նախապայմաններն ստեղծված են սոցիալիստական հասարակարգում։ Դրանցից հիմնականներն են.

1. Ստեղծված են բարձր զարգացած արտադրողական ուժեր, ժամանակակից ինդուստրիա, առաջնակարգ տեխնիկա, որոնց մեջ մարմնացած են գիտության նվաճումները։

2. Սովետական գիտությունը հասել է բարձր զարգացման, ամենակարևոր ճյուղերում դուրս է եկել առաջին տեղն աշխարհում և դարձել է արտադրության հետագա զարգացման տեսական բազան։

3. Սովետական Միությունն ունի ամենաբազմամարդ գիտական ու տեխնիկական կադրեր և մշտապես ավելանում է այն մարդկանց թիվը, որոնք ան-



միջականորեն կիրառում են գիտության նվաճումներն արտադրության մեջ։ Գիտությունը դարձել է համաժողովրդական սեփականություն։

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում խնդիրը ո՛չ միայն գիտության զարգացման և պրակտիկ կիրառման համար արդեն գոյություն ունեցող պայմաններն ու հնարավորությունները բազմակողմանի օգտագործելն է, այլև ավելի լայն ռացիոնալ պայմաններ ու հնարավորություններ ստեղծելը, գիտության զարգացման ավելի բարձր տեմպեր ապահովելը, գիտության և արտադրության կապի ավելի էֆեկտիվ ձևեր ու մեթոդներ մշակելը, ժամանակին կազմակերպչական և այլ բնույթի այն բոլոր թերությունների ու բացերի վերհանումն ու հաղթահարումը, որոնք խանգարում են գիտության զարգացմանը և նրա նվաճումների արագ, մասսայական ու արդյունավետ կիրառմանը։

Գիտության զարգացման ու գործադրման օբյեկտիվ և սուբյեկտիվ պայմանների ու հնարավորությունների իրականացումն ընկած է արտադրողական ուժերի բուռն զարգացման, աշխատանքի արտադրողականության անշեղ աճի հիմքում։ Այն հանգամանքը, որ սովետական երկիրը կարճ ժամանակամիջոցում կարողացավ ստեղծել բարձր զարգացած արտադրողական ուժեր, ժամանակակից արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի հիմունքներին տիրապետող բազմամիլիոն բանակ և գիտա-տեխնիկական առաջադիմության գծով առաջնություն գրավեց ամբողջ աշխարհում, լավագույն ապացույցն է սոցիալիստական սիստեմի անառարկելի առավելությունների, սիստեմ, որի պայմաններում գիտության զարգացման ու գործադրման խնդիրը դառնում է ամբողջ աշխատավոր ժողովրդի, պետական քաղաքականության առաջնահերթ խնդիրներից մեկը։

Գիտության տվյալների արդյունավետ օգտագործման կարևորագույն պայմանը գիտության և արտադրության օրգանական կապն է, նրանց համագործակցությունը։ Գիտության և արտադրության սերտ համագործակցության ապահովման խնդիրը գտնվում է կոմունիստական պարտիայի և սոցիալիստական պետության ուշադրության կենտրոնում։ Այդ խնդիրը պարտիական, հասարակական գիտական կազմակերպությունների մշտական քննարկման առարկան է։ Պարտիան բազմիցս նշել է, որ ամբողջ արդյունաբերական արտադրանքի հետագա աճի վճռական պայմանն անընդհատ տեխնիկական առաջադիմությունն է. գիտական ողջ աշխատանքը պետք է ուղղվի տեխնիկական առաջադիմության ապահովմանը, զարգացող տեխնիկայի տեսական հիմքերի մշակմանը, տեսական ու գործնական աշխատանքի հետագա մերձեցմանն ու միաձուլմանը։

Գիտության տվյալների ներդրման գործում կարևորագույն նշանակություն ունեցավ արդյունաբերության ու շինարարության ղեկավարման վերակառուցումը, որն իրագործվեց 1957 թվականին։ Այդ կարևորագույն միջոցառումը բարձրացրեց տնտեսական օրգանների և գիտական հիմնարկների դերն ու պատասխանատվությունը գիտության նվաճումների լայն ներդրման մեջ։ Գիտության և կոմունիստական շինարարության կապի ամրապնդման գործում կարևոր դեր խաղաց նաև ժողովրդական կրթության սիստեմի վերակառուցումը։

Սովետական գիտության առաջնահերթ խնդիրը տեխնիկական առաջադիմության ապահովումն է, որի համար պահանջվում է մշտապես բարձրացնել տեսական հետազոտությունների ծավալն ու մակարդակը և ժամանակին ար-

տադրության մեջ ներդնել գիտության նորագույն նվաճումները։ ՍՄԿՊ XXI համագումարը, որն ազդարարեց սովետական երկրի մուտքը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, բարձր գնահատեց սովետական գիտության նվաճումները, հատկապես միջուկային ֆիզիկայի ու ատոմային էներգիայի, ռեակտիվ ավիացիայի ու ռեակտիվ տեխնիկայի բնագավառում և հայրենական գիտության առջև խնդիր դրեց լայնորեն ծավալել այն կարևորագույն տեսական հետազոտությունները, որոնք ապահովում են գիտատեխնիկական հետագա առաջընթացը, կենտրոնացնել գիտական ուժերն ու միջոցներն այն ասպարեզներում, որոնք ունեն տեսական և գործնական կարևոր նշանակություն։

Կոմունիստական պարտիայի և սոցիալիստական պետության միջոցառումները գիտության զարգացման ու նրա նվաճումների ներդրման ուղղությամբ նոր հնարավորություններ բացեցին գիտության առջև, բարձրացրին նրա դերը կոմունիստական շինարարության մեջ։ Սովետական գիտության փայլուն նվաճումներն ապահովեցին մեր երկրի առաջնությունը գիտատեխնիկական առաջադիմության բնագավառում։ «Բոլոր սովետական մարդիկ,— արձանագրել է ՍՄԿՊ XXI համագումարը,— լի են հայրենասիրական հպարտությամբ իրենց հայրենիքի համար, որը գլխավորում է համաշխարհային գիտատեխնիկական առաջընթացը և համարձակորեն ուղիներ է հարթում դեպի ապագան» (ՍՄԿՊ XXI համագումարի բանաձևը, Հայպետհրատ, 1959, էջ 10)։

Գիտության զարգացման ու նրա նվաճումների լայն ներդրման հարցերը բազմակողմանիորեն քննարկվեցին ՍՄԿՊ XXII պատմական համագումարում։ Համագումարում ընդունված ՍՄԿՊ նոր Ծրագիրը, որը կոմունիզմի կառուցման գիտական պլանն է, խորապես բացահայտում է գիտության դերը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, նրա աճող նշանակությունը նոր հասարակարգի նյութական բազայի ստեղծման գործում, որոշում է գիտական մտքի հիմնական խնդիրները տեսական հետազոտությունների զարգացման և պրակտիկայի հետ կապի ամրապնդման ոլորտում։ ՍՄԿՊ ծրագիրը հատկապես ընդգծում է գիտության դերը արտադրողական ուժերի զարգացման ասպարեզում։ «Տնտեսության սոցիալիստական սիստեմի պայմաններում,— ասված է պարտիայի նոր Ծրագրում,— գիտության և տեխնիկայի առաջադիմությունը հնարավորություն է տալիս առավել արդյունավետ կերպով օգտագործել բնության հարստությունները և ուժերը ժողովրդի շահերի օգտին, հայտնագործել էներգիայի նոր տեսակներ և ստեղծել նոր նյութեր, մշակել կլիմայական պայմանների վրա ներգործելու մեթոդներ, տիրապետել տիեզերական տարածությանը։ Գիտության կիրառումը դառնում է հասարակության արտադրողական ուժերի հզոր աճման վճռական* գործոն» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 549)։

***

ԲՆՈՒԹԱԳՐԵԼՈՎ գիտության կիրառման կարևորագույն դերը որպես արտադրողական ուժերի հզոր աճման վճռական գործոն, ՍՄԿՊ Ծրագիրը ելնում է գիտության կիրառման սոցիալական բնույթից և նրա զարգացման ժամանակակից մակարդակից։

* ՍՄԿՊ Ծրագրի հայերեն թարգմանության մեջ բաց է թողնված «վճռական» բառը



Գիտությունը արտադրողական ուժերի հզոր աճի վճռական գործոն է դառնում սոցիալական այնպիսի պայմանների առկայության դեպքում, որոնք հասարակության արտադրողական ուժերի և գիտության առջև բացում են առաջընթացի անսահմանափակ հնարավորություններ, ամենից առաջ այնպիսի արտադրական հարաբերությունների առկայության դեպքում, որոնք հանդիսանում են արտադրողական ուժերի զարգացման ձևը, խթանում դրանց անընդհատ աճը և լայն գործադրումը։ Այսպիսիք են արտադրական հարաբերությունները սոցիալիստական հասարակարգում. որոնց ծաղկումն ու կատարելագործումն արտադրողական ուժերի ու գիտության առաջընթացի կարևորագույն պայմանն են։

Գիտությունը դառնում է արտադրողական ուժերի բարգավաճման վճռական գործոն այն պայմաններում, երբ գտնվում է բարձր մակարդակի վրա, նոր ուղիներ է նշում արտադրության պրոգրեսի, տեխնիկայի ու տեխնոլոգիայի կատարելագործման, արտադրական պրոցեսները ռացիոնալ վարելու համար և իր տեսական բարձր մակարդակով անհամեմատ առաջ է անցնում արտադրության զարգացման տվյալ աստիճանից։

Անցյալում, երբ տեխնիկայի զարգացման մակարդակը դեռևս ցածր էր, արտադրության բուն պրոցեսներում հիմնական դեր էին խաղում անմիջական էմպիրիկ կատարելագործումներն ու նորամուծությունները։ Դրանց դերը ժամանակակից պայմաններում նույնպես նշանակալից է։ Սակայն ներկայումս արտադրության մեջ տեխնիկական հեղաշրջումներ ու որակական տեղաշարժեր կատարելու համար պահանջվում է ավելին. պահանջվում են լուրջ տեսական հետազոտություններ, նոր օրենքների ու սկզբունքների հայտնագործում, նոր նյութերի ստացման մեթոդների մշակում, մի խոսքով՝ գիտական հիմնավոր նախապատրաստություն։ Բայց դրանով չի սպառվում գիտության դերն արտադրողական ուժերի զարգացման բնագավառում։ Այն կոչված է մշակելու տեսական նվաճումների գործադրման եղանակը, դրանք անմիջականորեն արտադրության մեջ ներդնելու ուղիները։ Գիտության և արտադրության կապի հետագա ամրապնդման, նրանց միաձուլման շնորհիվ արտադրությունն ինքը, ինչպես կանխատեսել է Մարքսը, կդառնա էքսպերիմենտալ գիտություն։

Արտադրության և գիտության կապի ամրապնդման նպատակն է՝ որքան հնարավոր է արագ ներդնել գիտության նվաճումներն արտադրության մեջ։ Երբեմն տեսականորեն մշակված գիտական տվյալների և դրանց ներդրման մեթոդների առկայության դեպքում արտադրության որոշ օբյեկտներ շարունակում են առաջնորդվել հնացած տեխնիկական նորմաներով, ձգձգել նոր տեխնիկայի ներդրումն ու յուրացումը։ Պարտիայի համագումարներում ու պլենումներում դատապարտվել են ինչպես տեխնիկական կոնսերվատիզմը, այնպես էլ որոշ գիտական հիմնարկների անտարբեր վերաբերմունքն արտադրության պահանջմունքների նկատմամբ, նրանց թույլ կապը պրակտիկայի հետ, իսկ որոշ բնագավառներում՝ գիտական մտքի հետ մնալը կոմունիստական շինարարության պահանջներից։

Այսպես, օրինակ, գյուղատնտեսական գիտությունների զարգացման մակարդակը և նրանց նվաճումների ներդրումը մինչև այժմ չեն ապահովել գյուղատնտեսության այնպիսի զարգացում, որպիսին պահանջում է սոցիալիստական էկոնոմիկայի ընդհանուր աճը։ Հատկապես պետք է նշել երկար տարիների ընթացքում գյուղատնտեսության մեջ համատարած կիրառում գտած

էքստենսիվ խոտադաշտային սիստեմի վնասակար հետևանքները, որոնք բացահայտվեցին ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումում (1962 թ.)։ Պլենումը դատապարտեց այդ սիստեմը որպես գիտական տեսակետից սնանկ ու սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման համար անպետք և համապատասխան օրգանների ու գիտական հիմնարկների գործունեությունն ուղղեց դեպի գյուղատնտեսության, հատկապես հողագործության ժամանակակից և ռացիոնալ սիստեմների մշակումն ու ներդրումը։

Գիտության նվաճումների ներդրման բնագավառում տեղ գտած թերությունների ու բացերի քննադատությունը բխում է արտադրության և գիտության զարգացման, սոցիալիստական արտադրողական ուժերի աճի պահանջներից։ Արտադրողական ուժերի աճը կոմունիզմի կառուցման արմատական պայմանն է և սովետական հասարակությունը չի կարող անտարբեր մնալ ամեն մի, անգամ երկրորդական, երևույթի նկատմամբ, որն այս կամ այն կերպ խանգարում է նրանց զարգացմանը, խոչընդոտում արտադրության մեջ գիտության նվաճումների ներդրմանը։

Սոցիալիստական հասարակարգում գիտության ու պրակտիկայի կապը ոչ մի ընդհանուր բան չունի գիտության ուտիլիտարացման հետ, որը գիտության կապիտալիստական կիրառման հատկանշական գծերից մեկն է։ Սոցիալիզմի պայմաններում ոչնչացված է գիտության ուտիլիտարացման և այն հակագիտական կոնցեպցիաների սոցիալական հողը, որոնք հակադրում են իրար գիտության տեսական ու պրակտիկ ասպեկտները։ Այստեղ գիտությունը խարսխվում է գիտական աշխարհայացքի վրա, առաջնորդվում տեսության և պրակտիկայի միասնության սկզբունքով. կյանքի պահանջները խթանում են գիտության տեսական աճն ու բարձրացնում նրա գործնական նշանակությունը։ Սոցիալիստական հասարակարգում տեղ չունեն ո՛չ նեղ պրակտիցիզմը և ո՛չ էլ վերացական, կյանքից կտրված մտավարժությունը։ Ֆունդամենտալ տեսական պրոբլեմների մշակման նշանակությունը կարող են թերագնահատել միայն այն մարդիկ, ովքեր արտահայտում են հետամնաց տենդենցներ, չեն հասկանում գիտության պատմության այն կարևոր դասը, որ տեսական միտքը պետք է գերազանցի և առաջ անցնի արտադրության և, առհասարակ, հասարակության զարգացման առկա մակարդակից, նախապատրաստի վաղվա տեխնիկան ու արտադրությունը, բացահայտի հասարակության զարգացման հեռանկարները, առանց որոնց ժամանակակից պայմաններում որակական տեղաշարժեր չեն կարող լինել։

Կոմունիստական շինարարության պրակտիկան գիտության արդյունավետության հիմնական չափանիշն է։ Խթանելով գիտության աճը, պրակտիկան միաժամանակ նրա առջև բացում է տեսական տվյալների գործադրման ու ստուգման լայն հնարավորություններ։ Այն ցույց է տալիս գիտական աշխատանքի այս կամ այն ասպեկտի միակողմանի ուռճացման վնասակարությունը, պահանջում հետազոտական աշխատանքը ճիշտ զուգորդել ձեռք բերված նվաճումների կիրառման հետ, ուշադրությունը կենտրոնացնել գիտության այն պրոբլեմների մշակման վրա, որոնք առաջնահերթ նշանակություն ունեն տեխնիկական առաջադիմության արագացման համար։ Դրա օրինակ է ծառայում միջուկային ֆիզիկան, որի զարգացումը պայմանավորված է ատոմային տեխնիկայի երևան գալով, իսկ վերջինն էլ իր հերթին հսկայական ազդեցություն է ունեցել ֆիզիկայի և այլ գիտությունների զարգացման վրա։



Կոմունիզմ կառուցող երկրի բոլոր նվաճումների հիմքում ընկած են գիտության ու պրակտիկայի սերտ կապն ու միասնությունը։ Գիտության տվյալների արտադրական կիրառումն ապահովում է արտադրության զարգացման բարձր տեմպեր, արդյունաբերության նոր ճյուղերի ստեղծում, արտադրության ավտոմատացում ու կոմպլեքսային մեքենայացում։ Ընթացիկ յոթնամյակի առաջին չորս տարում շարք են մտել 3700 արդյունաբերական նոր ձեռնարկություններ, աշխատանքի արտադրողականությունը վերջին 3 տարում բարձրացել է արդյունաբերության մեջ՝ 18,2, շինարարության մեջ՝ 22,5, տրանսպորտում՝ 20 տոկոսով։ Միայն 1962 թվականին ստեղծվել են մոտ 4000 նոր տիպի կարևորագույն մեքենաներ, ապարատներ և այլ սարքավորում, արտադրական վերահսկողության ու ավտոմատացման համար գործադրվող մոտ 1300 տեսակ սարքեր, յուրացված է արտադրանքի 900 նոր տեսակի թողարկում։

Սակայն, ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը, երկրում դեռևս անհրաժեշտ չափով չեն օգտագործվում սոցիալիստական հասարակարգի վիթխարի հնարավորություններն ու առավելությունները՝ գիտության ու տեխնիկայի նվաճումների արագ, արդյունավետ ու լայն ներդրման գծով։ Գիտահետազոտական և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունների ղեկավարությունը տեղաբաշխված է ժողտնտխորհների, մինիստրությունների ու գերատեսչությունների միջև, որը խանգարում է միասնական տեխնիկական քաղաքականության վարմանը, խոչընդոտում նոր տեխնիկայի ներդրմանը, առաջացնում զուգահեռականություն գիտական հետազոտությունների բնագավառում, խզվածություն գիտական հիմնարկների գործունեության մեջ, ստեղծում է գերատեսչական և տեղայնական պատնեշներ։ Պլենումը գործուն միջոցառումներ մշակեց գիտահետազոտական աշխատանքի կազմակերպման և գիտության ու տեխնիկայի ներդրման բնագավառում եղած թերությունների վերացման ուղղությամբ։

Նոյեմբերյան պլենումը խորապես բացահայտեց միասնական տեխնիկական քաղաքականության վարման և ժողովրդական տնտեսության զարգացման գիտական պլանավորման կենսական նշանակությունը, որոշեց ինչպես այդ քաղաքականության դերը գիտության զարգացման ու կիրառման համար, այնպես էլ գիտության դերը տեխնիկական քաղաքականություն վարելու, պլանավորումը կատարելագործելու բնագավառում։ Գիտության արտադրական դերի աճը պահանջում է գիտության ղեկավարման կազմակերպչական ձևերի հետագա կատարելագործում։ Պարտիական ղեկավարման վերակառուցումն ըստ արտադրական սկզբունքի հնարավորություն է ստեղծում արմատապես բարելավելու նաև գիտության զարգացման ու նրա նվաճումների ներդրման ուղղությամբ տարվող աշխատանքը։

ՍՄԿԿ Ծրագիրը սովետական գիտնականների պատվի գործն է համարում՝ ամրապնդել սովետական գիտության նվաճած առաջավոր դիրքերը գիտության ամենակարևոր ճյուղերում և բոլոր հիմնական ուղղություններով գրավել առաջատար դիրք համաշխարհային գիտության մեջ։ Սովետական գիտության նվաճումները սովետական ժողովրդի ստեղծագործ աշխատանքի արդյունք են, որի ուղին լուսավորում է մարքս-լենինյան ուսմունքը։

# ՄՈՐԳԱՆԻ ԽՆԱՄԻՆԵՐԸ

Հ. ԹՈՒՐՇՅԱՆ

«ՍՈՎԵՏԱԿԱՆ Հայաստան» ամսագրի անցյալ տարվա ապրիլյան համարում (№ 4) լույս տեսավ տպագրության համար պատրաստվող մեր «Սարդարապատի հերոսամարտը» աշխատության 4-րդ գլխի՝ «Սարդարապատի ժողովրդական պատերազմի» համառոտագրությունը։ Պատկերազարդ ամսագրի համար խիստ կրճատված ֆրագմենտը, անտարակույս, չէր կարող հանգամանորեն տալ թուրքական ներխուժման դեմ հայ ժողովրդի ինքնապաշտպանական պայքարի ամբողջ պատկերը։ Այնուամենայնիվ, այնքան որքան դա Սարդարապատի հերոսամարտի մասին գրված առաջին փորձն էր, ապա սփյուռքի պրոգրեսիվ թերթերը այն սիրով արտատպեցին։ Բայց դաշնակցականների մամուլն էլ անուշադրության չմատնեց այդ փոքրիկ հոդվածը։ Հասկանալի պատճառներով մեզ վրա ամենից ավելի կատաղի հարձակում գործեց ամերիկահայ դաշնակցականների օրգան «Հայրենիք» օրաթերթը։

«Համայնավար պատմաբանը», ըստ նրանց, ամեն ջանք գործ է դնում, որպեսզի ուրանարին ծախի Սարդարապատի հաղթանակի պսակը և ժխտի դաշնակցականների ղեկավար մասնակցությունն այդ ճակատամարտին։

Սարդարապատը բազմադարյան հայ ժողովրդի պատմության փառավոր էջ է, որը դեռևս չի գնահատվել ըստ արժանվույն։ Մեր ուսումնասիրությունը նպատակ ունի մասամբ լրացնելու այդ բացը։ Այս հարցով «զբաղվում» են նաև դաշնակցականները, որոնք կապիտալ շահելու համար դեռ 1925 թվականին «Հայրենիք» ամսագրում (մայիսից) տպագրեցին Հովակիմ Մելիքյանի «Արյան ճանապարհով» հուշերը։

Երևանցի Հովակիմ Մելիքյանը բժիշկ էր երիտասարդ գնդապետ Հասան Փաշայանի (Ղասաբբաշյանի) զորամասում։ Ալեքսանդրապոլի անփառունակ անկումից հետո նա փախչում է Երևան։ Դասալիք բժշկին ամոթանք տալով ետ են ուղարկում իր զորամասը, որը վերակազմավորվում էր Կող գյուղում։ Սակայն մինչև որ Հասան Փաշայանի զորամասը կվերակազմավորվեր և մարտադաշտ դուրս կգար, կռիվն արդեն վերջացել էր։ Բժ. Հով. Մելիքյանը Սարդարապատի կռիվը չի տեսել և երկչոտ դասալիքի ակնոցով գրած նրա հուշերը ծաղր են Սարդարապատի հերոսամարտի հասցեին։ Ահա նրա գրածը։

«Տաճիկները թողնելով մեզ իրենց դիրքերը և երեք օր հետո դեպի Ալեքսանդրապոլ նահանջելուց հետո, տեսնում են, որ իրենց հետապնդող չկա, նորից վերադառնում և Արաքս կայարանի մոտերը, մայիսի 25-ին, հանդիպում են մեր բանակին։ Տեղի է ունենում տաք կռիվ, մեր բանակը կարծելով, որ իրենց առաջ մեծ ուժ է կանգնած, գիշերը նահանջում է, իսկ տաճիկներն էլ



տեսնելով հայերի ուժեղ դիմադրությունը, իրենց հերթին նույն գիշերը նահանջում են Ալեքսանդրապոլ» («Հայրենիք», 1925 թ., № 7, էջ 75)։

Ահա նման «ստրատեգիական» բանիմացությամբ պարոնայք դաշնակները լուծում էին հայ ժողովրդի «պաշտպանության» բարդ հարցերը։ Ահա թե ինչու մեզ մնում է ասել՝ կեցցե մանկական գրող Մելիքյանը։

Հ. Մելիքյանը բերում է նաև հերոսամարտին մասնակցած զորամասերի ու խմբերի անունները ու թվերը, շեշտելով Սմբատի, Դալի Ղազարի և Մուրադի անունները։ Նրա «տվյալներից» գոհունակությամբ օգտվում են պ. պ. Վրացյանն ու Վալադյանը։ Սակայն Հ. Մելիքյանը «մոռացել» է, որ Ալեքսանդրապոլի անկումից հետո (մայիսի 15) Սմբատը Ղարաղաչի վրայով Լոռի էր գնում և Սարդարապատի կռվի օրերին Լոռվա ձորով բարձրանում էր Դսեղ։

Դալի Ղազա՞րը։ Ո՞ր Դալի Ղազարը, իսկակա՞նը (Միքայել Բաղալբեկյա՞նը)։ Նա ապրիլի 4-ին Սարիղամիշում ծանր վիրավորվել էր և Սարդարապատի կռիվների օրերին բուժվում էր Թիֆլիսի հիվանդանոցներից մեկում։

Մուրա՞դը։ Ո՞ր Մուրադը։ Սեբաստացի՞ն։

Պատմությունն ասում է (տես նաև անգամ Սեպուհ, «Էջեր իմ հուշերէն», հ. Բ, գլուխ ԺԱ և ԺԲ), որ Մուրադին զինվոր անգամ չթողին, որ նա դաշնակցությունից հիասթափված, առանց զենքի ու զինվորի, Հյուսիսային Կովկասի վրայով գնում է կարմիրների մոտ, որոնց օգնությամբ հայ զինվորների փոքրիկ խումբ է կազմում և գնում կռվելու Բաքվի կոմունայի պաշտպանության համար, որտեղ և զոհվում է օգոստոսի 5-ին։

Ահա այսպիսին է բժ. Հ. Մելիքյանի իրազեկությունը։ Նրա միակ աղբյուրն իր մատներն են։ Վրացյանը, կարծես թե, նրանից փոքր-ինչ ավելի գիտե. օրինակ, նա գիտե, որ Սարդարապատում գործում էին հայկական 28 թնդանոթ, սակայն և այնպես ցիտում է Մելիքյանին, որի մոտ հայկական թնդանոթների թիվը իջեցված է 16-ի։ Վրացյանը բերում է նաև գեներալ Սիլիկովի երկու հրամանը, չանդրադառնալով այն բանին, որ Սիլիկովի առաջին իսկ հրամանը հակասում է այն ամենին, ինչ որ դաշնակցականների մամուլում մինչ այդ և դրանից հետո լոկ հայտարարության կարգով ասվել է Սարդարապատի հերոսամարտի մասին։

Գեն. Սիլիկովի առաջին հրամանի մեջ կարդում ենք. «...Իսկ որ մենք կարող ենք պաշտպանվել, դա ցույց տվեց մեր վերջին կռիվները մեր ճակատում, ուր մեզանից թվով գերազանց թշնամին նահանջի է դիմել մեր զորքերի հերոսական հարձակման առաջ։

Հարկավոր է մի ճիգ ևս և թշնամին վռնդված կլինի մեր երկրի սահմաններից...» («Աշխատանք», Երևան, 1918 թ., հունիսի 5)։

Վրացյանն ասում է, որ այս հրամանը գեն. Սիլիկովն արձակել է Սարդարապատի երկրորդ կռվի օրը, այսինքն՝ մայիսի 24—25-ին։ Չենք վիճում։ Մենք էլ հենց այդ ենք ասել և ասում, որ մայիսի 22-ի վճռական, բեկումն առաջ բերած ճակատամարտը սկսվել է ինքնաբերաբար, ներքևից, առանց վերադաս հրամանատարության հրամանի, որ բարձր հրամանատարությունն ու Երևանի ազգային խորհուրդը մայիսի 22-ի հաղթանակից հետո միայն որոշեցին կռվել։ Իսկ մինչ այդ Ալեքսանդրապոլի անկումից (մայիսի 15) հետո թուրքական հաշտարար պատվիրակության նախագահ Խալիլ Բեյը Բաթումում Ա. Խատիսովին և Հովհ. Քաջազնունուն հայտարարել էր, թե «հայերը պարտ-

ված են և պետք է ենթարկվեն», իսկ այս երկուսը, խատիսովի վկայությամբ, «հեռագրեցինք Կարճիկյանին՝ խորհուրդ տալով ռազմական դիմադրություն ցույց չտալ թուրքերին» (Հայկ. ՍՍՌ Պետարխիվ, ֆոնդ 68/200, գործ 93, թ. 112)։ Այս կապիտուլյանտական խորհրդից հետո Երևանի Հայոց ազգային խորհրդի, նրա հատուկ կոմիտեի գործը մի պահ ավարտված է համարվում և իշխանության լիազորություններով հանդես է գալիս Երևանի քաղաքային դուման։ Այդ դուման մայիսի 18-ին, իր դաշնակցական նախագահ Տոչյանի առաջարկությամբ, միաձայն որոշում է Երևանն առանց դիմադրության ճանաչել թուրքերի ողորմածությանը։ Գեներալ Սիլիկովին մնում էր մայիսի 19-ին Սուրմալուն շտապ կարգով էվակուացնելու հրաման տալ։ Երևանի հայոց ազգային խորհուրդը և նրա հատուկ կոմիտեն կրկին անգամ հարություն են առնում միայն մայիսի 22-ին ինքնաբերաբար սկսված և վճռական հաղթանակով պսակված ճակատամարտից հետո։ Այս է իսկությունը։

Դաշնակ «պատմաբանները» մեզ մեղադրում են այն բանում, իբր թե կեղծել ենք Սարդարապատի ճակատամարտի մասնակից այլազգի հերոսների դերը։ Սակայն նրանք բացահայտորեն խարդախում են պատմական իսկությունը, երբ անտեսում են տասնյակ ռուս սպաների անձնվեր մասնակցությունն այդ ճակատամարտին։ Էլ չենք խոսում նրանց այն երջանիկ տգիտության մասին, որ մինչև այսօր էլ չգիտեն Սարդարապատի ճակատամարտի մասնակիցներ՝ Սակելյարիի և Կլիչի ազգային պատկանելությունը։

Դաշնակցականները շարունակ հոլովում են գեն. Սիլիկովի անունը և գրում «Սիլիկյան»։ Թույլ տվեք ասելու, որ նա հայ չէր։ Գեն. Սիլիկովը կուլտուրայով ռուս էր և ֆրանսիացի, իսկ ծագումով՝ ուտիացի, և այդ ժամանակ հայերեն չգիտեր։ Մի կուրիոզային մանրամասնություն։ Երևանի Ազգային խորհուրդը նպատակահարմար էր գտնում, որ կաթողիկոսը թողնի Էջմիածինը և գնա Սևանա կղզին։ Գեն. Սիլիկովը ներկայանում է կաթողիկոսին և փափկանկատորեն «խորհուրդ» է տալիս գնալ իր ամառանոցը, չիմանալով, որ կաթողիկոսի ամառանոցը Բյուրականն է, որը Երևանի լքումից հետո նույնպես կմնար Թուրքական գոտու մեջ։

Սարդարապատի մայիսի 22-ի հաղթանակը ապահովվեց հայ ժողովրդի անձնվեր պայքարով։ Ի դեպ, մայիսի 22-ի կռվին մասնակցել է դաշնակցական միայն մեկ հայտնի խմբապետ՝ տրապիզոնցի Թոսցիկ Հովսեփը, որին Դրոյի զինվորները 1919 թվականին օրը ցերեկով անպատիժ սպանեցին Երևանի կենտրոնում։

Սարդարապատի մայիսի 22-ի ինքնաբերաբար սկսված և կարևոր հաղթանակով պսակված ճակատամարտը ղեկավարել է գնդապետ Դանիել Բեգ Աբիսողոմի Փիրումյանը։

Դաշնակները կեղծիքով ու ամեն գույնի այլ հերյուրանքներով ճգնում են արդարացնել իրենց ազգակործան, ոչ միայն տակտիկական, այլև ստրատեգիական տեսակետից սնանկ քաղաքականությունը։ Նրանք չկամեցան և իրենց բուրժուա-նացիոնալիստական էությամբ չէին կարող հասկանալ, որ տառապյալ հայ ժողովրդի իրական ազատագրումն ու փրկությունը անխզելիորեն կապված էր ռուս ժողովրդի, ռուսական պրոլետարիատի ռևոլյուցիոն, ազատագրական պայքարի հետ։ Ահա այս պատմական ճշմարտությունը չընդունելն ու չհասկանալն էր պատճառը, որ դաշնակցությունը Հոկտեմբերի հաղթանակից անմիջապես հետո թշնամական դիրք բռնեց նորաստեղծ Սովետական



Ռուսաստանի նկատմամբ, միացավ Անդրկովկասի «կոնտրռևոլյուցիոն ազնվականական բլոկին» և դրանով իսկ առժամանակ փակեց հայ ժողովրդի ազատագրման ու ազգային վերածննդի միակ հնարավոր և ռեալ ուղին։

Ապա պատկերացրեք, հայ դատի «պաշտպաննե՞ր», թե որքա՞ն կշահեր ժողովուրդը, եթե Պետրոգրադում ժամանակավոր կառավարության տապալումից հետո չհակառակվեիք պատմության անկասելի երթին՝ սովետների հաղթարշավին։ Սակայն չկարողացաք դուրս գալ ձեր բուրժուա-նացիոնալիստական պատյանից, նետվեցիք ում գիրկն ասես, նույնիսկ փաշաների, միայն թե ոչ կոմունիստական Ռուսաստանի։ Եվ դա էլ ձեզ կործանեց, ավա՜ղ ձեզ հետ միասին նաև հայ ժողովրդի մի զգալի հատվածին։

Այն օրերին, երբ թուրքական զորքերը ներխուժում էին Անդրկովկաս, միակ պարտիան, որը հետևողականորեն ու աննկուն պայքարում էր թուրքական ինտերվենցիայի դեմ, կոմունիստական պարտիան էր։

> «Գերմանա-թուրքական զորքերի առաջխաղացումն Անդրկովկասի խորքը և նրա գրավումը,— գրում էր այդ օրերին Անաստաս Միկոյանը Բաքվի «Տեղեկագրում»,— կարող են հանգեցնել ոչ միայն Սովետական իշխանության ոչնչացմանը և սև ռեակցիայի հաղթանակին, այլև երկրի երեսից կջնջեն ամեն մի կուլտուրա։ Գեղեցիկ Կովկասը կվերածվի մխրակույտի ու ավերակույտի։ Գերմանացիների և թուրքերի հաղթանակը մեզ ետ կտանի մի քանի հարյուրամյակով։ Ահա թե ինչու բոլոր բանվորներն ու գյուղացիները, բոլոր ազնիվ հեղափոխականները և ճշմարիտ դեմոկրատները պետք է պայքարեն այդ արդար գործի համար» (1918 թ., № 94)։

Իհարկե դաշնակները ոչ «ազնիվ հեղափոխականներ» էին, ոչ էլ «ճշմարիտ դեմոկրատներ», ուստի նրանք ինչպես իրենց ամբողջ քաղաքականությամբ, այնպես էլ կոնկրետ գործելակերպով, հատկապես իշխանության գլուխ անցնելուց հետո գործակցեցին սովետական իշխանության թշնամիների հետ։

Ստ. Շահումյանը, որը հայ ժողովրդի համար ճգնաժամային այդ օրերին սովետական իշխանության կողմից նշանակվել էր Կովկասյան գործերի արտակարգ ժամանակավոր կոմիսար, թուրքական արշավանքն սկսվելուց դեռ շատ առաջ դաշնակցությանն ասում էր, «որ Անդրկովկասում գոյություն ունի վրացական-մուսուլմանական կոնտրռևոլյուցիոն ազնվականական բլոկ...»։ Եթե երեկ ուրիշներն էին ղեկավարում այդ բլոկը, ապա... այժմ կոնտրռևոլյուցիոն ազնվականական բլոկի ոգին է Ակակի Չխենկելին» (Ստ. Շահումյան, երկ., հ. 3, էջ 85)։

Հայտնի է, որ Ստ. Շահումյանը 1917 թվականի դեկտեմբերին Թիֆլիսում եղած ժամանակ ոչ միայն գրավոր խոսքով, այլև անմիջական բանակցությամբ դաշնակցությանը մատնացույց արեց հայ ժողովրդին փրկելու միակ ճիշտ ուղին՝ սովետական օրիենտացիայի ընդունումը։ Դաշնակցականները հիմա «սիրում» են կարդալ սովետահայ մամուլը, բայց, ինչպես երևում է, չեն կարդում իրենց գրածները։ Կարդացեք Ռուբենի (Ռ. Տեր-Մինասյանի) հուշերը («Հայ հեղափոխականի մը հիշատակները», 1952, Լոս-Անժելոս, հատկապես 7-րդ հատորը) և դուք կտեսնեք, որ 1917 թվականի դեկտեմբերի վերջին տասնօրյակում սովետական օրիենտացիայի անցնելու հարցի շուրջը Թիֆլիսում Դ. Շահվերդյանի տանը բանակցություններ էին տեղի ունենում մի կողմից բժ. Հ. Զավրիևի, Արշակ Ջամալյանի, Ռուբեն Տեր-Մինասյանի և Երևանից նրանց պաշտպանող Արամ Մանուկյանի և, մյուս կողմից, Ստեփան Շահումյանի, Սարգիս Տեր-Գասպարյանի (Կասյանի) և Դանուշ Շահվերդյանի

միջև։ Սակայն դաշնակցականները, հավատարիմ իրենց բուրժուական էությանը, վիժեցրին այդ բանակցությունները՝ գերադասելով մնալ Ակակի Չխենկելու և Ուսուբեկովի գլխավորած «վրացական-մուսուլմանական կոնտրռևոլյուցիոն ազնվականական ռեակցիոն բլոկում»։

Այսպիսով, Շահումյանի նախազգուշացումներին չունկնդրելը, նրա առաջարկությունը մերժելը և անդրկովկասյան հակառևոլյուցիայի կառքին լծված մնալը դաշնակցության մեծագույն հանցագործությունն էր, նրա աղետաբեր քաղաքական կուրսի ցայտուն վկայությունը։ Դրանով իսկ դաշնակցությունը պատրաստակամ օգնության ձեռք էր մեկնում թուրք փաշաներին։

Դաշնակցության ստրատեգիական գիծը կործանարար էր և բխում էր նրա բուրժուա-նացիոնալիստական էությունից։ Այժմ տեսնենք, թե ինչպիսին էր նրա կոնկրետ, տակտիկական գործելակերպը, «դաշնակցության կազմակերպչական տաղանդը», որի մասին այսօր ճառում են դաշնակցականները։

Դաշնակցությունը մի քանի տասնյակ հրացան և նույնքան «խիզախ, անմիտ պատանի»-ներ ճարելով ավելի քան երկու տասնամյակ արշավանքներ էր գործում դեպի Թուրքիա, կարծելով, թե այդպիսով կարելի է ազատագրել արևմտահայությունը։ Ռուսական բանակի քայքայումով դաշնակցությունը տեր դարձավ շուրջ կես միլիոնանոց զորքի ծով ռազմամթերքին՝ հազարավոր թնդանոթների ու գնդացիրների, տասնյակ հազարավոր նռնակների, ավելի քան հարյուր հազար հրացանների՝ իրենց տասնյակ միլիոնավոր փամփուշտներով ու արկերով։ Հայտնի է, որ մուսավաթականները Շամխորի արյունահեղությունը կազմակերպեցին, որպեսզի գոնե մեկ հատ թնդանոթ ունենային, իսկ միայն Էրզրումում, Կարսում և Ալեքսանդրապոլում ավելի քան հազար թնդանոթ կար հայ զորքի տրամադրության տակ։

Եթե Սարդարապատի հաղթանակը վերագրվում է «դաշնակցության կազմակերպչական տաղանդին», ապա ո՞ւր էր այդ տաղանդը Էրզրումում, երբ թշնամին դեռևս շատ թույլ էր թե թվով և թե զենքով (Էրզրումի վրա գրոհում էր 4 հազարանոց թուրքական զորք, այնինչ միայն Էրզրումում ավելի քան 10 հազար զինված հայ երիտասարդություն կար)։ Ո՞ւր էր այդ տաղանդը Կարսում և, վերջապես, Ալեքսանդրապոլում, որ ձեր միջնաբերդն էիք համարում։ Կարդացեք Սեպուհի հուշերը, որ ձեզ մոտ է տպվել, և դուք կտեսնեք, որ կարող էիք գոնե պայթեցնել Էրզրումի ռազմական պահեստները, բայց «քրիստոսանման Զավրիևը» ինչ-ինչ նկատառումներով թույլ չտվեց պայթեցնել։ Դուք ոչ միայն չկարողացաք պաշտպանել Էրզրումը, Սարիղամիշը, Կարսն ու Ալեքսանդրապոլը, այլև չկարողացաք նահանջելիս պայթեցնել ռազմամթերքի վիթխարի պաշարները, որոնք անցան թուրքերի ձեռքը։ Ո՞վ է այստեղ պատրաստակամ օգնության ձեռք մեկնել Թուրքիային. կարմիր Ռուսաստա՞նը, որն այդ ամենը թողել էր ձեզ, թե՞ դուք, որ ոչ միայն չկարողացաք ինչպես հարկն է օգտագործել այդ մեծ ռազմապաշարը, այլև չկարողացաք անգամ ոչնչացնել այն ու գրեթե ամբողջությամբ տվիք Թուրքիային։ Հարցի սուբյեկտիվ կողմը պատմության համար նշանակություն չունի. կարևորը օբյեկտիվ կողմն է։ Սուբյեկտիվորեն ոչ ոք, ոչ մի պարտիա չի ցանկանա, որ իր կռվանը ոչնչանա. սակայն սուբյեկտիվ ցանկությունը պետք է իրագործվի համապատասխան գործողություններով, իսկ երբ գործողությունները համապատասխան չեն, այլ ընդհակառակը, վնաս են հասցնում սուբյեկտիվ ցանկությունների իրագործմանը, մենք իրավունք ունենք ասելու, որ դաշնակցությունն իր գործողու-



թյուններով պատմականորեն, օբյեկտիվորեն սատարում էր թշնամուն։

Այսպիսով, 1918 եղերական տարում, երբ թուրքական բանակն արշավում էր Անդրկովկասի վրա և կոտորում խաղաղ բնակչությանը, ապա ոչ ոք այնպիսի ռեալ օգնության ձեռք չի մեկնել Թուրքիային, ինչպես դաշնակցությունը, այն դաշնակցությունը, որն իբր թե կազմակերպում և ղեկավարում էր հայկական ինքնապաշտպանությունը։ Անդրկովկասում դաշնակցությունը, Կասյանի բառերով ասած՝ «անբնական դաշինք» կնքելով մենշևիկների և մուսավաթականների հետ, ոչ միայն արագացնում էր ռուս զորքի հեռացումը ռուսական հայրենիքից անջատված ու նրան թշնամացած Անդրկովկասից, այլև փաստորեն նախապես անհաջողության էր դատապարտում թուրքական արշավանքին ընդդիմադրելու իր իսկ ջանքերը։

Սեյմում, որտեղ դաշնակցականները մենշևիկների ու մուսավաթականների հետ միասին միաձայն քվեարկում էին հակասովետական բանաձևեր, մուսավաթականների պարագլուխներից Ուսուբեկովը առանց քաշվելու ասում էր.

«Ոչ միայն մեզ՝ ադրբեջանական թուրքերիս մոտ, այլև Անդրկովկասի ամբողջ տերիտորիայում տիրող ահավոր անիշխանությունը չի կարող ճնշվել մեր սեփական ուժերով. դրությունն է՛լ ավելի է սաստկանում, քանի որ Արևելքից հարձակում են գործում բոլշևիկները՝ մ ե ր  դ ա ր ա վ ո ր  թ շ ն ա մ ի ն ե ր ի  հ ե տ դաշնակցած՝ ավերածություն ու վերջնական ոչնչացում բերելով թուրք ժողովրդին։ Իրերի նման դրության, մեր այսպիսի անպաշտպանության ժամանակ մենք ուրիշ ելք չունենք, քան դիմելու օտար միջամտության։ Տվյալ դեպքում մենք կարող ենք ուրախ լինել հանգամանքների այն երջանիկ դասավորության համար, որ այստեղ եկող արտաքին ուժը՝ Թուրքիան, մեզ բարեկամ և եղբայրական ուժ է։ Գուցե դա դուր չգա մեր հարևաններին, բայց մենք ուրիշ ելք չունենք» (*Ал. Ставравский,* «Закавказье после Октября», Москва, 1925, էջ 50—51)։

Եվ այս ամենից հետո թքելով հայ, վրացի և ադրբեջանական աշխատավոր մասսաների եղբայրական ձգտումների վրա, դաշնակցականները գերադասեցին մնալ Անդրկովկասյան վանդակում։

Վալադյանն իր ժամանակին դաշնակցության թեթև հեծելազորի մեջ էր, ներկայումս, առ ի չգոյէ, անցել է ծանր հրետանու կազմի մեջ։ Նրա հոդվածաշարից չի երևում, որ այդ անցումը որակական փոփոխություն առաջ բերած լիներ, որ նա թոթափած լիներ իր վաղեմի թեթևությունը և վաստակած լիներ արդեն իր տարիքին վայել ծանրություն։ Բայց այսօր երեխան անգամ հասկանում է, որ Ուսուբեկովների հետ դաշինք կնքելով դաշնակցությունը օբյեկտիվորեն, պատմականորեն անցնում էր թուրքական ռեակցիայի օժանդակողների կողմը։ Ահա թե ինչու սովետահայ պատմագրությունը դաշնակցականներին որակում է դավաճաններ, էնվերների ու թալեաթների ջրաղացին ջուր լցնողներ։

Բայց բանն այն է, որ 1918 թ. օրհասական ամիսներին այս ամենը, իհարկե, ոչ թե լրիվ գիտակցված բողոքի ու ընդվզման կտրուկ ձևով ու բնորոշումով, այլ տրտունջի ու հարցմունքի բնազդական չզարգացած տարտամ ձևերով ասում էր անգամ արևմտահայ դաշնակցականների օրգան Երևանի «Աշխատանք» թերթը։

Սարդարապատի հաղթանակը, Բաշ-Ապարանում և Ղարաքիլիսայում Թուրքիայի կրած զգալի կորուստները թուրքական հրամանատարությանը հարկադրում են միաժամանակ դադարեցնել արշավանքը Երևանի վրա՝ օր առաջ Բաքվի վրա արշավելու հնարավորություն ունենալու համար։

Այժմ, երբ սովետական պատմաբանները վերագնահատում են մեր ժողովրդի հեռավոր և մոտիկ անցյալը, պարոնայք դաշնակցականները, իրենց բնույթյանը հավատարիմ, կրկին թմբկահարում են իրենց անփառունակ գործունեության մասին, ճգնելով սեփականել հայ ժողովրդի պատմության փառավոր դրվագները։ Մինչդեռ նրանք պետք է գոնե հիշեն, թե ինչպես գլխակորույս, կարմիր վտանգից խրտնած, ստորագրեցին Բաթումի հունիսի 4-ի հաշտությունը, որը եղավ դաշնակցության տապանագիրը։

Դաշնակցականների կարճամտությունն այն աստիճանի է հասնում, որ նրանք նույնիսկ մոռացել են իրենց իսկ մամուլում տպագրված հուսահատական ճիչերն ու հարկադրական խոստովանությունները։ Թերթենք թեկուզ այդ օրերի դաշնակցական մամուլի էջերը։

Հունիսի 5-ի համարում, երբ դեռ Բաթումի պայմանագրի ստորագրման լուրը Երևան չէր հասել, «Աշխատանքը» գրում էր.

> «Եւ երբ կնքված է հաշտությունը, ստորագրված են պայմանները... ապա ուրեմն գործվում է հանցանքներու ամենասևը, դավաճանության ամենաասոսկալին, որոնց նմանը հայկական տարեգրության մեջ չէ եղած դեռ», («Աշխատանք», 1918, Երևան, հունիսի 5)։ *Թերթի հաջորդ համարում կարդում ենք.* «...Դարձեր ենք հիմա անզգա ու անլեզու, երկչոտ ու սարկամիտ... Ինչպե՞ս հաշիվ տանք հարյուր հազարավոր անշիրիմ նահատակներուն և ինչպե՞ս սրբենք մեր ճ ա կ ա տ ի մուրը, երբ մ ի ա յ ն ա ն ա ր գ ա ն ք ի ս յ ո ւ ն ի ն բ ա ժ ի ն պ ի տ ի ը լ լ ա ն ք, երբ միայն անեծքի պիտի արժանանանք» («Աշխատանք», Երևան, 1918 թ., հունիսի 8)։

Որքան էլ պատեպատ ընկնեն դաշնակները, նրանք երբեք չեն կարող մաքրել իրենց «ճակատի մուրը», որովհետև պատմությունը նրանց վաղուց գամել է անարգանքի սյունին։ Անհերքելի իրողություն է, որ դաշնակցականները պարզապես ծախեցին Սարդարապատի և Բաշ-Ապարանի հաղթանակները և ճամփա տվին, որ ոչ միայն թուրքական զորքը Դիլիջանի ձորով հարձակվի Բաքվի կոմունայի վրա, այլև չոքի Երևանի արվարձաններում։ «Սարդարապատի հերոսամարտը» աշխատության մեջ ապացուցում ենք, որ ճիշտ է, Բաքուն իր համառ և երկարատև դիմադրությամբ փրկեց Երևանը, սակայն Սարդարապատը, Բաշ-Ապարանը և Ղարաքիլիսան արյունաքամ անելով թուրքական ուժերին, ապահովեցին Բաքվի ավելի երկարատև դիմադրությունը։ Այսպիսով, դաշնակցականների մերժած սովետական օրիենտացիան, որ պատմության ընթացքով թելադրվող միակ ճիշտ քաղաքականությունն էր այդ օրերին, պատմական անհրաժեշտություն հայ ժողովրդի փրկության համար, հակառակ դաշնակցականների դավաճանական վարքագծին, իր խոսքն ասաց, բայց դժբախտաբար, տարերայնորեն, անկազմակերպ ձևով։ Եթե հիշենք, որ Սարդարապատի հերոսամարտի օրերին Բաքուն վճռական ու հաղթական հակահարձակման էր անցել և արդեն մոտեցել էր մուսավաթի որջին՝ Գանձակին, ապա պատմությունն ինչպիսի՜ ընթացք կստանար Անդրկովկասում, եթե դաշնակցականները դեռ սկզբից մերժած չլինեին սովետական օրիենտացիան։

Պատահական չէ, որ այդ ժամանակ դաշնակցական մամուլի էջերից լսվում էին քիչ թե շատ զգաստ ձայներ։ Անգամ Բաքվի դաշնակցական «Արև» թերթը ազնկատուր հառաչում էր, թե՝ «Երեք տարի առաջ տաճիկ բռնապետության ուժն արհամարհել մինչև կուրություն և հիմա այդ ուժի առաջ սարսափել ու երթալ ամեն զիջողության, դա մի պարզ թյուրիմացություն չէ լոկ, այլ մի պատմական ճակատագրություն, որ իբրև մի չարիք մեր պատմության տխուր էջերից



ամենատխուր և ամենասև էջը պիտի կազմի» («Արև», Բաքու, 1918, մայիսի 28)։

Բաքվի բոլշևիկյան «Տեղեկատուն» անմիջապես անդրադարձել է այս շատ բան ասող խոստովանությանը, որը խոր հիասթափության և դաշնակցության քաղաքական ներման ակներև ախտանիշն էր։ Ուստի պատահական չէ, որ շարքային երիտասարդ շատ դաշնակցականներ անցան Բաքվի կոմունայի կողմը և սեփական արյամբ մաքրեցին իրենց «ճակատի մուրը»։

Գնահատելով «Արև»-ի խոստովանությունը՝ «Տեղեկատուն» նշում էր.

> «Իսկ ինչ վերաբերում է պատմական ճակատագրին, մենք պիտի ասենք, որ այս «պատմական ճակատագիրը», կամ ավելի ճիշտ ասած՝ դասակարգային ճակատագիրը, «դաշնակցության» համար ոչ միայն չարիք է, այլ խիստ պատմական երևույթ։ Հայ ժողովրդի,— չքավոր գյուղացու և բանվորի տեսակետը միշտ էլ զանազանվել է «հայկական» պաշտոնական տեսակետից, հայ բուրժուազիայի դասակարգային շահերից բխող գործելակերպից, իսկ հ. հ. դաշնակցությունը, որպես «պատմական» չարիք հայ ժողովրդի համար, աշխատել է միացնել այդ տեսակետները։
>
> Արդյունքն այս դառը, բայց անորոշ, ոչ համարձակ խոստովանանքն է»։ («Բանվոր, զինվոր և նավաստի պատգամավորների խորհրդի Տ ե ղ ե կ ա տ ո ւ, Բաքու, 1918 թ., մայիսի 29, № 93)։

Վ. Վալադյանին անհայտ չպիտի լինի, որ այս «ոչ համարձակ—խոստովանանքը» Բաքվում, մանավանդ երիտասարդ դաշնակցականների շրջանում, գնալով ավելի «համարձակ» դարձավ, և երբ երկու ամիս հետո Բաքվի դաշնակցական ղեկավարությունն էլ բռնեց Թիֆլիսի իր համախոհների դավաճանական ուղին, ապա շատ երիտասարդ դաշնակցականներ թոթափեցին իրենց վրայից «ձախ դաշնակցական» անունը և անվերապահորեն անցան Շահումյանի կողմը։ Սարդարապատում էլ, եթե ամոթալի ու դավաճանական հաշտությունը չկնքվեր, և հաղթական մարտերը շարունակվեին, ապա դաշնակցության շարքերում շատ ավելի մեծ մասշտաբով տեղի կունենար միևնույն պրոցեսը։

Սովետական իշխանության դեմ հերթական հարձակումից անմիջապես հետո Վ. Վալադյանը գրում է. «Մինչդեռ անդին՝ վիլհելմյան Գերմանիան, Թուրքերի բարեկամն ու դաշնակիցը, այլևս բարյացակամ աչքով չէր նայում նրանց հաղթական առաջխաղացին՝ դեպի Հայաստանի խորերը» («Հայրենիք» օրաթերթ, 1952 թ. սեպտ. 18)։

Եթե այս տողերը գրած լիներ Վալադյանի մյուս գործակիցը՝ Աշոտ Արծրունին, ապա կասեինք, որ այս բարբաջանքը անիրազեկության արգասիք է, քանի որ նա հույժ իրազեկության հոխորտանքով սկսելով իր հոդվածը, իր ամեն մի տողով ցուցաբերում է կատարյալ անիրազեկություն ու, թող ներվի ասել, նաև անգրագիտություն։ Այս չի նշանակում, որ մենք դրական կարծիք ունենք Վալադյանի գիտության մասին, սակայն նա այժմ վաղուց բոլորած պիտի լինի յոթերորդ տասնամյակը և միայն դա բավական է, որ նա 1918 թվականին գոնե հասուն ընթերցող լիներ և որպես այդպիսին այսօր չստորագրեր այդ պոռշավոր սուտի տակ։

Երբ Բաթումի հունիսի 4-ի պայմանագրով թուրքերին հաջողվեց «այս անգամ ալ խաբկանքով ի գլուխ բերել իր ղենքի ուժով ընել չի կրցածը» («Աշխատանք»), և հայ զորքն ու աշխարհազորայինները թողին Աղին, Անի, Արաքս, Սարդարապատ, Էջմիածին, Ույուխանլու և Ղամարլու կայարաններն ու կանգ

տռան Էջմիածնի ու Երևանի դարպասներում, թուրքական բանակը, առանց
կռվի գրավելով վերոհիշյալ կայարանները և թքելով Բաթումի հաշտության
պայմանագրի վրա, հունիսի 14—15-ին արշավեց Էջմիածնի և Երևանի վրա,
բայց արդեն Վրաստան մտած գերմանական զորքն ու հրամանատարությունը ո-
չինչ չարին Երևանի համար: Նորից բոլշևիկյան անվանված մահապարտների
5-րդ գունդը և ռուս գնդապետ Պերեկրյոստկովի պարտիզանական զորամասը
Քյորփալու գյուղի բնագծերում ջախջախեցին ու ետ մղեցին թուրքերին: Ի դեպ,
այդ մարտում, որ Արարատյան դաշտի գյուղացիների հիշողության մեջ մնա-
ցել է Քյորփալուի կռիվ անունով, Էջմիածնի պաշտպանության համար ծանր
վիրավորվեց ու հաշմանդամ դարձավ ռուս գնդապետ Պերեկրյոստկովը: Ինչ-
պե՞ս կարելի է հարգանքով չարտասանել այդ ռուս գնդապետի անունը:

Հովհ. Քաջազնունին Սարդարապատին անդրադառնալիս այն անվանում
է «անսպասելի», իսկ Վրացյանը Սարդարապատի հերոսամարտին նվիրված
իր հոդվածը վերնագրել է «Սարդարապատի հրաշքը» («Հուսաբեր», Գահիրե,
1962 թ., հունիսի 4): Մեզ համար պատմության մեջ չկան ո՛չ անակնկալներ,
ո՛չ էլ հրաշքներ: Մեզ համար պատմության ընթացքն ունի իր երկաթե կուռ
տրամաբանությունը, իր օրինաչափությունները, իր անխուսափելիություն-
ները, իր պատճառականությունը: Թիֆլիսի Հայոց ազգային խորհուրդը չէր
կարող պայքարել թուրքական ներխուժման դեմ, որովհետև նա մերժել էր
սովետական օրիենտացիան ու դաշնակցել մենշևիկների և մուսավաթականնե-
րի հետ, որոնք թուրքերի անուղղակի և ուղղակի գործակալներն էին:

Վ. Վալադյանն ու Աշոտ Արծրունին գիտակցելով, որ Բաթումի հաշտությու-
նը դավաճանություն էր, դաշնակցությանն արդարացնելու համար ասում են,
թե դա մեր Բրեստ-Լիտովսկն էր, մենք վստահ էինք դաշնակիցների հաղթա-
նակին:

Նախ՝ դաշնակցականները շուրջ երկու տարի տեսան այդ դաշնակիցնե-
րին, որոնք Անդրկովկաս ոտք դնելու առաջին իսկ օրից վարեցին պրոթուր-
քական քաղաքականություն: Ուրիշ մանրամասնություններ չբերենք. բավա-
կան է ասել, որ դաշնակիցների ներկայությամբ և թողտվությամբ ավելի շատ
հայ կոտորվեց Անդրկովկասում, քան թե 1918 թվականին՝ թուրքական օկու-
պացիայի ժամանակաշրջանում:

Ինչպե՞ս կարելի է հավասարության նշան դնել Բաթումի և Բրեստի միջև:
Բրեստը դադար էր, հանգիստ, իսկ Բաթումի հաշտությունը՝ դավաճանու-
թյուն:

Հայտնի է, որ Սարդարապատի մայիսի 22-ի առաջին պարտության լուրն
առնելով, Վեհիբ փաշան անմիջապես, գիշերով գերմանական «մերսեդեսով»
շտապում է Ալեքսանդրապոլ: Մայիսի 25—26-ի երկրորդ պարտությունը
տեսնելով, Արդահանի վրայով նա շտապ ետ է վերադառնում Բաթում, որ-
տեղ իրենց պատվիրակության նախագահ Խալիլ Բեյից աղերսում է շուտա-
փույթ հաշտություն կնքել հայերի հետ, որոնք արդեն «կատաղաբար են
կռվում»:

Սարդարապատից, Քյորփալուից հետո, երբ թուրքերը գերադասեցին խա-
ղաղ մնալ, և գերմանական, ավստրիական ու թուրքական միացյալ պատվիրա-
կություններն «ի նշան բարեկամության» այցելեցին Երևան ու Էջմիածին,
դաշնակցությունն առաջին հարվածն ուղղեց հինգերորդ գնդի դեմ, որը մա-
հապարտների անունը վաստակելուց առաջ բոլշևիկյան էր հորջորջվում: Գնդի



ղարաբաղցյան միջուկը փոխադրվեց Նոր-Բայազեդ, իսկ մնացած գումարտակ-
ները հանձնվեցին գնդապետ Սամարցևին և վերանվանվեցին 3-րդ գունդ:
Դրանից հետո սկսվեց հալածանք թե իսկական բոլշևիկների, և թե բոլշևիկ
հորջորջվածների դեմ:

***

1919 թվականին Երևանում Սարգիս Կասյանը իր անլեգալ հրատարակած
«Ո՞ւր է ելքը» գրքում, տալով դաշնակցության «քաղաքագետների» բնու-
թագիրը, գրում էր. «Կարճատես, օր-օրի վրա ապրող, շոշափումներով առաջ
գնացող, պատահականությունների վրա քաղաքականություն կառուցող, հա-
մաշխարհային տենդենցը նկատի չունեցող և չըմբռնող» (էջ 61):

Իրեն հարգող ամեն մի կազմակերպություն իր ներկա վարքագիծը հիմ-
նավորած լինելու համար սիրով դիմում է սեփական պատմությանը և իր
նոր վարքագծի նախանշաններ որոնում ու գտնում իր անցյալ քաղաքականու-
թյան ու գործունեության մեջ: Դաշնակցությունն այսօր բացահայտորեն թուր-
քական ռեակցիայի գործակալությունն է Սփյուռքի հայության մեջ: Այս բանն
իրենք են ասում ու կրկնում: Էլ ինչո՞ւ են սրդողում, երբ նրանց ասում են,
որ ձեր այդ թուրքանվեր գործունեությունը նորություն չէ, այլ տասնամյակների
պատմություն ունի:

Այսօր, իմպերիալիստական գլխավոր տերության հետախուզական բա-
ժինների հետնաբակերում ծվարած մի բուռ դաշնակցական բախտախնդիր-
ների հանգիստ չի տալիս ծաղկող Սովետական Հայաստանը: Նրանք հանուն
իրենց անձնական «բարեկեցության» ուզում են Արևելահայաստանն էլ հա-
վասարեցնել Արևմտահայաստանին:

Մեր ձեռքի տակ է Սարգիս Ադամյանի անգլերեն գրված «Armenien
Community» գիրքը: Այդ ճիվաղը մատնության մի ամբողջ հատոր զեկու-
ցագիր է գրել ամերիկյան հետախուզության համար: Ամերիկյան հետախու-
զության ղեկավար ու շարքային ծառայողներին մանրամասն պատմելով, թե
ի՞նչ կուսակցություններ ու հասարակական խմբավորումներ կան ամերիկա-
հայ գաղութի ներսում, թե ինչ վեճեր են մղում նրանք անգամ եկեղեցական
հարցերում, Սարգիս Ադամյանը դաշնակցությունից բացի մյուս բոլոր կու-
սակցություններն ու խմբավորումներն անվանում է «պրոկոմունիստական»,
Սովետական Հայաստանի, ուստի և Սովետական Միության գործակալություն,
որ հայկական կազմակերպություններից միայն դաշնակցությունն է անվերա-
պահորեն վարում պրոամերիկյան, հակասովետական քաղաքականություն:
Մենք ու մենք ենք ձեր հավատարիմ գործակալները, քանի որ,— գրում է Սար-
գիս Ադամյանը,— «դաշնակցության քաղաքական շահագրգռությունները և բա-
րեկեցությունը չեն կարող կապված չլինել Եվրոպայի ու Միացյալ Նահանգների
հակաբոլշևիկյան ուժերի հետ»:

Ուշադրությո՞ւն խոստովանություն: Ամենևին էլ նորություն չէ մեզ համար,
որ դաշնակցությունը եղել է և այսօր էլ մնում է «Եվրոպայի ու Միացյալ Նա-
հանգների հակաբոլշևիկյան ուժերի», այսինքն՝ իմպերիալիզմի գործակալու-
թյունը:

«Դաշնակցությունը,— այնուհետև զեկուցում է Ադամյանը,— չի վախենում հիշեցնե-
լու Թուրքիային անցյալը և միևնույն ժամանակ, հայկական մյուս խմբերի նման, չի

վարում խորապես հակաթուրքական կամպանիա: Ճիշտ է, դաշնակցականների մամուլը դեռևս երբեմն Թուրքիային հիշեցնում է անցյալը, բայց միևնույն ժամանակ գիտակցաբար ձեռնպահ է մնում հարձակումներից Թուրքիայի հետ, քաղաքական նկատառումներով, հոգեբանական հաշտեցումը հեշտացնելու նման ձգտումը համապատասխանում է արևմտյան և ամերիկյան պրոպագանդայի ընդհանուր ոգուն»:

«Դաշնակցությունը,— *շարունակում է նա իր զեկուցագիրը,*— հակված է երկրորդ օրիենտացիայի կողմը, ելնելով այն ենթադրությունից, որ քանի որ Թուրքիան շարունակում է ընթանալ իր ներկայիս կուրսով, ապա նրան պետք է վստահել, նրան պետք է ընդունել արևմտյան խմբավորման մեջ և նրան հնարավորություն տալ իր լուման մտցնելու արևմուտքի գործի մեջ»:

*Առաձն ասում է, որ սպառատավորին միայն գերեզմանը կուղղի: Այսքան դառն դասերից հետո, ինչպիսին հայոց պատմությունն է, մանավանդ նրանց երեսնամյա (1890—1920 թթ.) գործունեության շրջանում, դաշնակցականները մնացել են նույն անուղղելի քյալագյոզները և նույն «քաղաքական ծծկերները»:*

*Հասկանո՞ւմ եք դուք արդյոք, թե ինչ է նշանակում «նրան (Թուրքիային) հնարավորություն տալ իր լուման մտցնելու արևմուտքի գործի մեջ»: Այդ նշանակում է, ոչնչացնել նաև Արևելահայաստանը: Դժոխայինն այստեղ այն է, որ ամերիկյան հետախուզության հետնաբակերում իրենց «բարեկեցությունը» կառուցած դաշնակ պնակալեզներն այս մեկը հասկանում են և ամերիկահայ դաշնակցականների կոնֆերանսում նույնիսկ գրել ու քննել են այդ հարցը:*

*Քննել են թե՝*

«Սովետական Միության հետ ռազմական կոնֆլիկտի դեպքում ինչ վիճակ կստեղծվի մնացած հայերի համար Կովկասում, երբ ամերիկյան զենքով զինված Թուրքիան նեղի ռուսների պաշտպանական դիրքերը և դիմի հրի ու սրի իր տրադիցիոն տակտիկային»:

*Եվ եզրակացրել են՝*

«Ռուսաստանի հետ պատերազմի դեպքում Թուրքիայի ներկայիս ղեկավարները հայերի նկատմամբ ավելի ռեալիստական և մարդասիրական դիրք կբռնեն ոչ միայն այն պատճառով, որ Թուրքիայի կուլտուրական սկզբունքները (*sic*) ենթարկվում են իսկական փոփոխության (*sic*), այլև այն պատճառով, որ Միացյալ Նահանգները թույլ չեն տա ո՛չ կոտորած և ոչ էլ մնացած Հայաստանի իմպերիալիստական զավթում»:

*Մի՞թե կարելի է շարունակ «ծծկեր» մնալ: Այդ ո՞ր իմպերիալիստական պետության քաղաքականությունն է առաջնորդվել ինչ-որ կուլտուրական սկզբունքներով: Պատմությունը պատժել է և կպատժի մոռացկոտներին:*

*Պետք է հիշել, որ Ամերիկան դեռ 1920 թվականին է ցրել այն միշտը, թե իբր «Միացյալ Նահանգները թույլ չեն տա ո՛չ կոտորած և ոչ էլ մնացած Հայաստանի իմպերիալիստական զավթում»: Այդ ժամանակ դաշնակցականները դեռ զորեղ բարեկամներ ունեին Ամերիկայում, Ջերարդը գործում էր իր կոմիտեով, նոր էր լույս տեսել Մորգենթաուի գիրքը, Աչեսոնն էր քայլում Գլադստոնի տրորած ճանապարհով: Եվ, վերջապես, ինքը՝ պրեզիդենտն էր իրեն հայտարարել հայ ժողովրդի և Հայաստանի բարեկամ: Դաշնակցականները խանդավառված արդեն իրենց երևակայում էին Մորգանի խնամիներ: Ամերիկայի առաջին դեմքը՝ պրեզիդենտ Վիլսոնն էր սեփական նախաձեռնությամբ հանձն առել խնամախոսության փափուկ գործը: Սակայն Պենտագոնը*



*արևելք ուղարկեց գեներալ Հարբորդին, որի ստվարաթիվ հանձնախումբն ուսումնասիրեց իրադրությունը Պոլսից մինչև Բաքու: Եվ երբ գեն. Հարբորդը երկար ժամանակ Թուրքիայում մնալուց և Քեմալի ու «Արևելյան վիլայեթների իրավունքների պաշտպանության կոմիտեի» պարագլուխների հետ խորհրդակցելուց հետո, վերջապես, մի քանի օրով ժամանեց նաև Երևան, ապա նա դաշնակցականներին խորհուրդ տվեց իրենց երազած խնամությունը հաստատել Քեմալի հետ: Թեթև հեծելազոր Վալադյանը կարող է այս ամենը չիմանալ, նա այն ժամանակ սլանում էր «չեզոք գոտում»:*

*Այնուհետև այնքան, որքան պրեզիդենտի իսկ առաջարկությամբ Հայաստանի մանդատի ստանձնման հարցը դրված էր կոնգրեսի քննությանը և պրոֆեսոր պրեզիդենտի խնամախոսությունը կարող էր «ազդեցություն գործել» կոնգրեսի վրա, ապա Պենտագոնի ներկայացուցիչը, տեսնելով, որ ինքը կարող է ուշ տեղ հասնել, շտապեց Պոլսից հեռագրով Ամերիկա ուղարկել իր զեկուցագիրը՝ մամուլում տպագրելու համար: «Նյու-Յորք Թայմսը» անմիջապես տպագրեց այդ զեկուցագիրը, որը գրված էր Հայաստանի մանդատի ստանձնման դեմ (փակագծերի մեջ ասենք, որ գեներալների այդպիսի զեկուցագրերն առհասարակ լույս չեն ընծայվում, իսկ այդքան շուտ՝ երբեք): Եվ կոնգրեսը լսեց Պենտագոնին ու մերժեց պրեզիդենտին: Այդպիսի նշանավոր մարդու խնամախոսությունն ապարդյուն անցավ, և դաշնակցականները չարժանացան Մորգանի խնամի դառնալու բախտին: Նրանց մնում էր դառնալ Մորգանի խնամյալներ, և դարձան:*

*Խիստ բնորոշ է այն, որ դեռ Վիլսոնի օրոք, երբ թուրքերը 1920 թվականին կրկին անգամ գրավեցին Կարսը և հինգ հազար հայ կոտորեցին քաղաքում ու նրա շուրջը, ապա Կարսում մնացած ամերիկյան ներկայացուցիչները Կ. Պոլսում նստող ԱՄՆ-ի գերագույն կոմիսար Բրիստոլին և դաշնակից կոմիսարներին 1920 թ. հոկտեմբերի 31-ին հեռագրում են, որ «թուրքերի կողմից Կարսը գրավելուց հետո քաղաքում լիակատար կարգ ու կանոն է հաստատվել, և որ թուրքերը շատ սիրալիր են օտարերկրացիների վերաբերմամբ» (Մուստաֆա Քեմալ, «Նոր Թուրքիայի ուղին», հ. 3, էջ 317, ռուս.): Ինչպես տեսնում եք, ամերիկացիներին հետաքրքրել է թուրքերի վերաբերմունքը միայն օտարերկրացիների և ոչ թե բնիկների նկատմամբ: Այս վերջին տասնամյակում, ամերիկյան հովանավորության ներքո, Գոնյայի հայ գյուղացիության կոտորածը, Կիպրոսի հարցի առնչությամբ հույն-թուրքական վեճի ժամանակ նաև Պոլսահայ գաղութի գլխին սարքված խժդժությունները չե՞ն ասում արդյոք, որ Պենտագոնը երբեք սանձ չի դնի իմպերիալիստական մարտաասյլին լծվածների «կուլտուրական սկզբունքների» կենսագործման վրա:*

*Ամերիկայի պատմությունն ասում է, որ այնտեղ , մանավանդ այժմ, պրեզիդենտները չեն հակադրվում Պենտագոնին, որ Սպիտակ տունը վաղուց արդեն դարձել է Պենտագոնի լսարաններից մեկը՝ № 1 լսարանը:*

*Վալադյանն ու Արծրունին տասը նիզակ են ճոճում պատկերազարդ ամսագրում լույս տեսած մեր մեկ հոդվածի դեմ:*

*Այդ նշանակում է, որ ոչ միայն գնդակը տեղն է առել, այլև այն, որ տարագրության մեջ իրենց եղկելի գոյությունն անպայման «բարեկեցիկ» դարձնելու համար հավաքագրվելով իմպերիալիստական տերությունների հետախուզական ծառայության օրգաններում և վարելով, պրոթուրքական գործունեություն, Մորգանի խնամյալներն այսօր անամոթաբար հայ ժողովրդի*

բոլոր սխրագործությունների իրենց են վերագրում, որպեսզի վարագուրեն սեփական ազգադավ գործունեությունը:

Սովետական կարգերի հաղթանակից մազապուրծ եղած և կապիտալիստական տերությունների հետնախորշերում ծվարած դաշնակցական ավանտյուրիստները դեռևս մնում են հավատարիմ իրենց որդեգրած հավատամքին: Գաղութահայ օջախներում ևս անցած քառասուն տարիներում նրանք փորձում են ահաբեկումների, մատնությունների և այլանդակ խժդժությունների միջոցով դիմադրել պատմության ընթացքին, կտրել տարաբախտ հայությունը մայր հայրենիքից: Մորգանի խնամյալները մնալով նախկին քաղաքական բախտախնդիրները կարծում են, թե կարելի է դանակահարությամբ կասեցնել գաղութահայ աշխատավորների ծայր առած հայրենադարձությունը: Զո՜ւր ջանքեր: Ծաղկած սովետական հայրենիքը մագնիսի պես դեպի իրեն է ձգում աշխարհով մեկ սփռված բոլոր ազնիվ հայ աշխատավորներին: Վերադառնալով սովետական հայրենիք, մեր տանջված գաղութահայ եղբայրները մեզ հետ միասին լծվում են կոմունիզմի կառուցման գործին:

Հոկտեմբերի շնորհիվ հայ ժողովուրդն այսօր ՍՍՌՄ բազմազգ ընտանիքում կերտում է իր բարեկեցիկ ու կուլտուրական կյանքը և իր լուսաշող ապագան: Իսկ դուք, պարոնա՛յք դաշնակցականներ, կուրացել եք այդ շողերից և իմպերիալիստական տերությունների հետախուզական բաժինների հետնաբակերի գարշահոտության մեջ իսպառ կորցրել եք ձեր հոտառությունը և, չնայած դառն դասերին, որոնք պետք է զգաստացնեին ձեզ, նորից չեք առնում արյան հոտը, որ նորից ու նորից գալիս է ձեր նոր, բայց միշտ հին գործունեությունից: Դուք պատեպատ եք ընկնում, մոռանալով, որ հայ ժողովրդի ազատագրության հետ կապված ոչ մի գործ և ոչ մի հերոսական դրվագ ձեզ չի պատկանում:

———

Սովետական Հայաստանի աշխատավորները 1962 թվականին նոր հաջողությունների հասան ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացման, ժողովրդի բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման ասպարեզներում:

Ահա մի քանի թվական տվյալներ.

* 1962 թ. ռեսպուբլիկայում արտադրվել է՝ հանքային պարարտանյութեր 208,5 հազար տոննա, ավտոդողեր՝ 1137 հազար հատ, մետաղահատ հաստոցներ՝ 8594 հազար հատ, էլեկտրաէներգիա՝ 2634 միլիոն կիլովատ-ժամ, ուժային տրանսֆորմատորներ՝ 3889 հազար կիլովատ-ամպեր, ցեմենտ՝ 522,4 հազար տոննա, բամբակե գործվածքներ՝ 52,1 միլիոն քառ. մետր, բրդե գործվածքներ՝ 6214 հազար քառ. մետր, բոլոր տեսակի կենցաղային ժամացույցներ՝ 1840 հազար հատ, պահածո՝ 113,6 միլիոն պայմանական տուփ:

* 1962 թվականին բանվորների ու ծառայողների միջին թիվը, 1961 թվականի համեմատությամբ, ավելացավ 30 հազարով և կազմեց 500 հազար:

* Խնայողական դրամարկղների 377 հազար ավանդատուներ 1962 թվականին ունեին 89,5 միլիոն ռուբլի:

* Միայն 1962 թվականին ռեսպուբլիկայում նոր բնակարաններ ստացան 23 հազար ընտանիքներ: Միաժամանակ պետական և կոլտնտեսային վարկի օգնությամբ գյուղական վայրերում կոլտնտեսականներն ու ինտելիգենցիան կառուցեցին մոտավորապես 6,9 հազար բնակելի տուն:

# ԳԻՏԱԿԱՆ ՀԻՄՆԱՐԿՆԵՐԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Լ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ

ՀԿՊ Երևանի քաղկոմի քարտուղար

Կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագրի իրականացման գործում հսկայական նշանակություն ունի գիտությունը: Ժամանակի բնորոշ գծերից մեկն այն է, որ գիտությունը դառնում է մեր հասարակության արտադրողական ուժերի խթանման վճռական գործոններից մեկը:

Սովետական գիտությունը խոշորագույն նվաճումներ ունի, որոնցով ամբողջ աշխարհն է հիանում:

Կենսագործելով ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները՝ Երևանի գիտահետազոտական հիմնարկների պարտիական կազմակերպությունները գիտության բոլոր աշխատողների գործունեությունն ուղղել են պարտիայի նոր ծրագրի առաջադրած հոյակապ խնդիրների կենսագործմանը: Վերջին տարիների ընթացքում մեր մայրաքաղաքում զգալի չափով ընդլայնվել է գիտահետազոտական հիմնարկների ցանցը: Ստեղծվել են մաթեմատիկական մեքենաների, էներգետիկայի, բիոքիմիայի, սրտաբանության և սրտի վիրաբուժության, միկրոբիոլոգիայի, արվեստի, հնէագիտության ու ազգագրության ինստիտուտներ, ֆիզիկո-տեխնիկական և քիմիական ֆիզիկայի լաբորատորիաներ, հաշվողական կենտրոն, ռադիոբիոլոգիայի, արևելագիտության սեկտորներ և այլ գիտական հաստատություններ: Գիտահետազոտական հիմնարկությունների պարտիական կազմակերպությունները, քննարկելով ՍՄԿՊ XXII համագումարի արդյունքները, կոնկրետ միջոցառումներ են մշակել համագումարի որոշումները կենսագործելու համար: Նրանք զգալի աշխատանք են կատարել պարտիայի և կառավարության կողմից գիտության զարգացման և տեխնիկական պրոգրեսի տեմպերն արագացնելու ուղղությամբ իրենց կոլեկտիվների ուժերը մոբիլիզացնելու համար:

Պարտիական կազմակերպությունների մեծ մասը այժմ սկսել է ավելի կոնկրետ զբաղվել գիտական հետազոտությունների որակի, նրանց բովանդակության հարցերով, ուժեղացրել է հսկողությունը թեմատիկ պլանների կատարման վրա, նրանք համեմատաբար ավելի լավ են զբաղվում արտադրության հետ ունեցած կապերի ամրապնդման գործով: Այդ առումով հատկանշական է ժողտնտխորհի քիմիայի ինստիտուտի սկզբնական պարտիական կազմակերպությունը, որը խորամուխ է եղել ինստիտուտի գիտական աշխատանք-

ների բովանդակության ու կազմակերպման մեջ։ Նրա ուշադրության կենտրոնում մշտապես եղել է գիտահետազոտական թեմատիկ պլանների կատարումը, այդ հարցերի վերաբերյալ ընդունել է գործնական որոշումներ և հետևել է դրանց կատարմանը։

Գիտական հիմնարկների կոլեկտիվներն սկսել են ավելի հաջող կատարել թեմատիկ պլանները, իրենց ուժերը կենտրոնացնել ժողովրդական տնտեսության, գիտության զարգացման համար կարևոր նշանակություն ունեցող պրոբլեմների վրա։ Բավական է նշել, որ միայն գիտությունների ակադեմիայի՝ Երևանում գտնվող 28 գիտական հիմնարկներ 1962 թվականի ընթացքում մշակել են մոտ 200 կարևոր թեմաներ, որոնք ունեն ինչպես տեսական, այնպես էլ ժողովրդա-տնտեսական նշանակություն։ Երևանի բազմաթիվ գիտական հիմնարկներ վեր են ածվել գիտահետազոտական աշխատանքի խոշոր կենտրոնների, որոնք իրականացնում են կարևորագույն գիտական հետազոտություններ՝ ուղղված արտադրողական ուժերի զարգացմանն ու կուլտուրայի վերելքին և իրենց գործերով հայտնի են Սովետական Միության գիտական լայն շրջաններում։ Հատկանշական է, որ գիտությունների ակադեմիայի ինստիտուտներում մշակվող 95 գիտական պրոբլեմներից 26-ը ունեն համամիութենական նշանակություն և կոորդինացվում են ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի պետական կոորդինացիոն կոմիտեի կողմից։

ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների սովետը վերջերս կարևոր որոշում ընդունեցին կենսաբանական գիտությունների հետագա զարգացման միջոցառումների և պրակտիկայի հետ դրանց կապի ամրապնդման վերաբերյալ։

Ձեռք բերված հաջողությունների հետ միասին ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների սովետը նշեցին կենսաբանության բնագավառում տեղ գտած մի շարք լուրջ թերություններ, որպիսիք կան նաև Երևանի գիտահետազոտական հիմնարկներում։

Պարտիայի Կենտկոմը և սովետական կառավարությունը ուշադրություն հրավիրեցին այն բանի վրա, որ անհրաժեշտ է զարգացնել կենսաբանական գիտությունների ամբողջ կոմպլեքսը։ Այդ գիտությունների հիմնական խնդիրը համարվեց պարզել կյանքի երևույթների էությունը, բացահայտել օրգանական աշխարհի զարգացման կենսաբանական օրինաչափությունները։

Պարտիայի Կենտկոմը խնդիր դրեց ըստ ամենայնի ուժեղացնել կապը կենսաբանական գիտահետազոտական հիմնարկների և արտադրության միջև, կենսաբանության նվաճումները լայնորեն օգտագործել ժողովրդական տնտեսության և բժշկության մեջ, ուժեղացնել փոխազդեցությունը կենսաբանության և ֆիզիկայի, քիմիայի, մաթեմատիկայի միջև։

Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ լուրջ աշխատանք են կատարում նաև հասարակական գիտությունների գիտական հիմնարկները, որոնք պարտիայի XXII համագումարի որոշումների հիման վրա վերակառուցել են իրենց աշխատանքի թեմատիկան։ Այժմ պատմության ինստիտուտում պետք է ավելի լուրջ ուշադրություն հատկացվի սոցիալիստական և կոմունիստական շինարարության հարցերի լուսաբանմանը։

Պատմության ինստիտուտի պարտիական կազմակերպությունը առաջիկայում ևս մեր պատմաբանների ուշադրությունը պետք է բևեռի պարտիայի XXII համագումարի որոշումների, համագումարում բարձրացված տեսական



հարցերի մշակման վրա, որոնք հսկայական նշանակություն ունեն մեր գաղափարական աշխատանքի մակարդակի բարձրացման, թշնամական գաղափարախոսության դեմ պայքարելու և աշխատավորների, մասնավորապես, երիտասարդության կոմունիստական դաստիարակության համար։

ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի ընդհանուր ժողովում տված իր զեկուցման մեջ ընկ. Իլյիչովը ընդգծեց այն դրույթը, որ «Գիտության աշխատողների կարևորագույն խնդիրն է ակտիվ պայքար մղել մարքսիզմ-լենինիզմին թշնամի գաղափարախոսությունների դեմ։ Խաղաղ գոյակցությունը,— ասաց նա,— ժխտում է երկու սիստեմների միջև եղած իդեոլոգիական հակասությունների լուծման ռազմական եղանակը, բայց ոչ բուն հակասությունները և ոչ թե նրանց պայքարը։ Իդեոլոգիական պայքարը օբյեկտիվորեն անխուսափելի դասակարգային պայքարի հիմնական ձևերից մեկն է միջազգային արենայում»։ Դժբախտաբար երբեմն մեր առանձին ընկերներ թույլ են պայքարում այս հայտնի դրույթների կենսագործման համար։ Պատմության ինստիտուտի պարտիական կազմակերպությունը ավելի մեծ աշխատանք պետք է կատարի և մոբիլիզացնի մեր պատմաբանների ուժերը էլ ավելի համառ ու հետևողական գիտական պայքար մղելու թշնամական գաղափարախոսությունների դեմ։

Տնտեսագիտության ինստիտուտի պարտիական կազմակերպության առջև դրված կարևոր խնդիրներից է՝ մոբիլիզացնել գիտական կոլեկտիվի ուժերը՝ ուսումնասիրելու և մշակելու ռեսպուբլիկայում արտադրողական ուժերի տեղաբաշխման, արտադրության մասնագիտացման ու կոոպերացման, աշխատուժի բալանսի վերաբերյալ պրոբլեմները, որոնք կարևոր են գիտական հիմնավորված հեռանկարային պլաններ կազմելու համար։ Լուրջ աշխատանքներ պետք է տարվեն նաև ռեսպուբլիկայում տնտեսագիտության գծով տարվող հետազոտական աշխատանքները կոորդինացնելու, բոլոր տնտեսագետների ուժերը մոբիլիզացնելու վերոհիշյալ պրոբլեմները բարձրորակ և ժամանակին մշակելու համար։

Այնուամենայնիվ, հարկավոր է ասել, որ գիտահետազոտական աշխատանքը դեռևս ետ է մնում կյանքից, թույլ է կապված արտադրության հետ. գիտական մի շարք կոլեկտիվներում աչքի է զարնում թեմատիկայի մասնատվածությունը։ Քիչ չեն այն գիտնականները, որոնք տարիներ շարունակ աշխատում են այնպիսի պրոբլեմների վրա, որոնք տեսական կամ գործնական նշանակություն չունեն։ Չի կարելի հաշտվել գիտական հետազոտությունների կոորդինացման թերությունների հետ, որոնք հաճախ հանգեցնում են գիտնականների աշխատանքների պատճենահանմանը, ուժերի ու միջոցների ցրմանը։

Քաղաքի գիտահետազոտական հիմնարկներում գոյություն ունեցող թերությունների հիմնական պատճառներից մեկն այն է, որ գիտահետազոտական հիմնարկներում տիրող վիճակի համար անհրաժեշտ պատասխանատվություն չեն զգում սկզբնական պարտիական կազմակերպությունները։ Դեռևս շատ են գիտահետազոտական հիմնարկների այնպիսի պարտիական կազմակերպությունները, որոնք անտարբերությամբ են անցնում գիտական հետազոտությունների պլանները թերակատարելու, արտադրության մեջ ստացված արդյունքների ներդրումը ձգձգելու, իրենց պարտականությունների կատար-

ման նկատմամբ առանձին գիտական աշխատողների կողմից անպատասխանատվություն հանդես բերելու փաստերի կողքին:

Շատ պարտիական կազմակերպություններ երկչոտություն են հանդես բերում և չեն քննարկում գիտական հետազոտությունների բովանդակությանը և կազմակերպմանը վերաբերող հարցեր, անբավարար են օգտագործում ՍՄԿՊ կանոնադրությամբ իրենց տրված իրավունքները, չեն վերահսկում ադմինիստրացիայի գործունեությունը:

Քիչ չեն այնպիսի կազմակերպությունները, որոնց ազդեցությունը դեռևս թույլ է գիտական հիմնարկի գործունեության վրա: Այդպիսի կազմակերպության օրինակ կարող է ծառայել գիտությունների ակադեմիայի հաշվողական կենտրոնի պարտիական կազմակերպությունը: Հաշվողական կենտրոնն արդեն ունի 173 աշխատակից. այստեղ, ճիշտ է, հաջողությամբ լուծվել են «Գոհար» և «Արագած» հաշվիչ մեքենաների տեղադրման և շահագործման հանձնելու հետ կապված հարցերը և իրոք կան որոշ հաջողություններ, սակայն պարտիական կազմակերպությունը միանգամայն անբավարար է զբաղվել իր առջև կանգնած լուրջ խնդիրների լուծման հարցերով և համարյա չի զգացվել նրա ազդեցությունը հիմնարկի գործերի վրա:

Երևան քաղաքի 26 կոմիսարների շրջանը գնալով հարստանում է գիտահետազոտական նոր հիմնարկներով: Սակայն պարտիայի 26 կոմիսարների շրջկոմը անցած տարում միայն երկու անգամ է անդրադարձել գիտահետազոտական հիմնարկների հետ կապված հարցերին, որը, իհարկե, բավարար չէ:

Գիտահետազոտական հիմնարկներով ամենահարուստ շրջանը Սպանդարյանի շրջանն է, որտեղ տեղավորված է 24 գիտական հիմնարկ: Ճիշտ է, շրջանային կոմիտեն գիտահետազոտական հիմնարկների պարտիական կազմակերպությունների աշխատանքների բարելավման հարցերով զբաղվել է, սակայն շրջկոմի բյուրոներում քննարկված հարցերի մեջ դեռևս փոքր տեսակարար կշիռ ունեն այն հարցերը, որոնք վերաբերում են գիտա-հետազոտական հիմնարկների՝ հատկապես գիտական աշխատանքներին: Քաղկոմն ու շրջկոմները պարտավոր են փոխել իրենց վերաբերմունքը և սիստեմատիկաբար զբաղվել գիտահետազոտական հիմնարկների և նրանց սկզբնական պարտիական կազմակերպությունների աշխատանքով:

Հարկավոր է ուղղակի ասել, որ գերատեսչությունների մեծ մասը անբավարար է ղեկավարում իրենց ենթակայության գիտահետազոտական ինստիտուտների աշխատանքը: Առողջապահության մինիստրությանն են ենթարկվում Երևանում գտնվող 7 գիտահետազոտական հիմնարկություն: Բավական է ասել, որ մինիստրության կոլեգիան պարտիայի XXII համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում այդ հիմնարկությունների աշխատանքներով շատ քիչ է զբաղվել և անհրաժեշտ միջոցներ չի նշել դրանց գործունեությունը բարելավելու համար: Մինչդեռ մինիստրության բոլոր ինստիտուտներն էլ լուրջ օգնության կարիք ունեն:

Բժշկական գիտահետազոտական հիմնարկների աշխատանքների լուրջ թերություններից է այն, որ մշակվող թեմաներից դեռևս քչերը ունեն գործնական նշանակություն, իսկ ստացված արդյունքներից փոքր տոկոսն է ներդրվում պրակտիկ բժշկության մեջ: Օրինակ, մինիստրությանը ենթակա ինստիտուտների կողմից 1960—61 թվականներին ավարտված 579 գիտական աշխատանքներից մինչև 1962 թվականի վերջը միայն 56-ն են երաշխավորվել ներ-



դնելու բժշկական պրակտիկայում: Լուրջ թերություններ կան գիտահետազոտական աշխատանքների պլանավորման գործում: Սրանք հարցեր են, որոնք պետք է անհանգստացնեն մինիստրությանը, որը պետք է լրջորեն քննարկեր և ուղղություն տար դրանց, իսկ նման հարցեր շատ ու շատ կան: Մինիստրությունը պետք է փոխի գիտական հիմնարկների ղեկավարման իր ոճը:

Գիտահետազոտական ինստիտուտների գործունեությունը բավարար չափով չի ղեկավարում նաև ժողտնտխորհը: Դրա արտահայտություններից է այն, որ ժողտնտխորհը 1962 թվականին միայն մեկ անգամ է պլանավորել խորհրդում լսելու իր սիստեմի ինստիտուտներում կատարվող գիտահետազոտական աշխատանքի 9 ամսվա արդյունքները, սակայն, դժբախտաբար, այդ էլ չի արել: Մինչդեռ ժողտնտխորհը ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում տեխնիկական պրոգրեսի, տեխնոլոգիայի կատարելագործման շատ կարևոր հարցեր կարող է և պետք է լուծի իր գիտահետազոտական հիմնարկների օգնությամբ:

Ժողովրդա-տնտեսական մեծ նշանակություն ունի, օրինակ, մեքենաների, սարքավորումների և մեխանիզմների չուգունը և գունավոր մետաղները մոդիֆիկացված չուգունով ու պլաստմասսայով փոխարինելը, որը կպահովի սև և գունավոր մետաղների մեծ խնայողություն և որ ավելի կարևոր է, կերկարացնի այդ մեքենաների ու սարքավորումների շահագործման ժամկետը և զգալիորեն կիջեցնի նրանց քաշը: Այդ աշխատանքը, որին ձեռնամուխ է եղել մեքենաշինության տեխնոլոգիայի ինստիտուտը, դեռևս ընթանում է շատ դանդաղ: Կամ, երկու տարուց ավելի է, ինչ ստեղծվել է քարի և սիլիկատների գիտահետազոտական ինստիտուտը, որի հիմնական խնդիրը նորագույն տեխնոլոգիական պրոցեսների մշակման և նրանց ավտոմատացման, շինանյութերի արդյունաբերության ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականության բարձրացման ու վառելանյութի, էլեկտրաէներգիայի, հումքի ծախսային գործակիցների իջեցման ուղղությամբ տարվող աշխատանքն է, սակայն, հարկավոր է ասել, որ այդ ուղղությամբ դեռևս շատ քիչ բան է կատարված:

Լեռնամետալուրգիական գիտահետազոտական ինստիտուտի կոլեկտիվը, բավականին հաջող զբաղվելով լեռնահանքային արդյունաբերության տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման հարցերով, որոնցից շատերը արդեն արմատավորված են արտադրության մեջ, անբավարար է զբաղվում լեռնամետալուրգիական ձեռնարկությունների ավտոմատացման հարցերի մշակմամբ, որը մեծ հեռանկարներ կբացեր, հատկապես հարստացման ֆաբրիկաներում պղնձա-մոլիբդենային և պոլիմետաղական կոնցենտրատների արտադրությունը և նրանց որակը բարձրացնելու գործում:

Այս բոլորից հետևում է, թե իրեն ենթակա գիտահետազոտական ինստիտուտների նկատմամբ ժողտնտխորհի ղեկավարման բարելավումը որքան կարևոր դեր կարող է կատարել ժողովրդական տնտեսության հետագա զարգացման կարևոր խնդիրների լուծման գործում:

ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումներից ելնելով, գիտությունների ակադեմիայի սիստեմից որոշ գիտական հիմնարկներ պետք է անցնեն գերատեսչությունների ենթակայության, հետևապես նրանք պարտավոր են հաշվի առնել այս քննադատությունը: Պարտիայի Երևանի քաղկոմը և շրջկոմները պետք է հասնեն այն բանին, որ իրենց ենթակայության

տակ գիտական հիմնարկներ ունեցող գերատեսչությունները արմատապես բարելավեն ղեկավարությունը այդ հիմնարկների նկատմամբ։

Ռեսպուբլիկայի էներգետիկայի, մեքենաշինության, մետալուրգիայի, քիմիայի, շինարարության, գյուղատնտեսության, առողջապահության բնագավառներում ժողովրդա-տնտեսական հսկայական նշանակություն ունեցող առաջադրանքների լուծման գործում վճռական դեր ունի կատարելու գիտության և արտադրության կապի հետագա ամրապնդման ուղղությամբ տարվող աշխատանքը։

Պարտիայի Կենտրոնական կոմիտեն պարտիական օրգանների ուշադրությունը հատկապես սրում է այն հիմնական թերության վրա, որ դեռևս գիտահետազոտական ինստիտուտների պարտիական կազմակերպությունների մեծ մասը անբավարար է զբաղվում պետական պլանով նախատեսված թեմատիկայի կատարմամբ։ Թեմատիկ պլանների թերակատարումը չի արժանանում պարտիական կազմակերպությունների, շրջկոմների ու քաղկոմի լուրջ քննադատությանն ու սկզբունքային գնահատականին։ Այդ է պատճառը, որ դեռևս շատ են այն ինստիտուտները, որտեղ թերակատարվում են գիտահետազոտական աշխատանքների պլանները։ 1962 թվականին ՀՍՍՌ գիտությունների ակադեմիայի ինստիտուտներում չի կատարվել 21 թեմա, դրանց մեջ քիչ չեն այնպիսի թեմաները, որոնք շատ կարևոր նշանակություն ունեն գիտության և արտադրության համար։ Երևանի գիտահետազոտական հիմնարկներում 1962 թվականի պետական պլանով նախատեսված թեմաների մոտ 15 տոկոսը չի կատարված։

Անհրաժեշտ է ուղղակի ասել, որ դեռևս անբավարար է ավարտված գիտական հետազոտությունների արդյունքների ներդրումը արտադրության մեջ։ Ավարտված աշխատանքներն արտադրության մեջ ներդնելու կարևորությունը թերագնահատելու փաստերը շատ են։ Եվ չի կարելի հաշտվել մի շարք գիտական հիմնարկներում տարածված այն կարծիքի հետ, որ իբր գիտական աշխատողների խնդիրը միայն կայանում է նրանում, որպեսզի ավարտեն հետազոտությունները, հրապարակեն եզրակացությունները, իսկ ինչ վերաբերում է դրանց պրակտիկ օգտագործմանը, ապա դա արդեն արտադրության աշխատողների գործն է։ Պրակտիկան ցույց է տալիս, որ գիտական հետազոտությունների արդյունքները գիտական աշխատողների ակտիվ մասնակցությամբ արտադրության մեջ ներդնելու դեպքում գործը միշտ էլ հաջողությամբ է պսակվում։ Վերջապես, մի՞թե գիտնականը կարող է անտարբեր նայել, թե առանձին բյուրոկրատներ ինչպես են երբեմն տարիներով ձգձգում գիտական ամբողջ կոլեկտիվի ստեղծագործ աշխատանքի արդյունքների ներդրումը։ Ներդրման գործերով բավարար չափով չեն զբաղվում հատկապես ՀՍՍՌ գիտությունների ակադեմիայի ինստիտուտները։ Պատահական չէ, որ երբ ԳԱ նախագահությունում քննարկվում էր տեխնիկական գիտությունների բաժանմունքի գիտական հիմնարկների 1963 թվականի թեմատիկ պլանը, պարզվեց, որ ոչ մի ինստիտուտի գիտական խորհուրդ պլանի մեջ չի մտցրել ներդրման հարց և նախագահությունը ստիպված էր շտկել այն։

Այդ կարևոր հարցում մեր շատ գիտնականներ պետք է օրինակ վերցնեն նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի դիրեկտոր, ՀՍՍՌ ԳԱ ակադեմիկոս Ա. Մնջոյանից և ժողտնտխորհի քիմիայի ինստիտուտի դիրեկտոր, ՀՍՍՌ ԳԱ ակադեմիկոս Մ. Մանվելյանից, որոնք իրենց հայտնագործություն-



ները, իրենց գիտական աշխատանքը ավարտված չեն համարում, քանի դեռ այն պրակտիկայում չի ներդրվել, չի օգտագործվել։ Իրոք, նրանց ջանասիրությունը, հետևողականությունը, գործը մինչև վերջ հասցնելու ձգտումն ու կամքը շատ մեծ դեր են կատարում այդ հարցում։

ՀՍՍՌ գիտությունների ակադեմիայի նախագահությունը, երբ քննարկում էր օրգանական քիմիայի ինստիտուտի ացետիլենի լաբորատորիայի աշխատանքի մասին քիմիական գիտությունների դոկտոր Ա. Վարդանյանի զեկուցումը, պարզվեց, որ լաբորատորիայի կողմից մշակված է քացախաթթվի համար հիմնական ելանյութ հանդիսացող քացախային ալդեհիդի ստացման նոր, մատչելի եղանակ։

Այդ մեթոդի լաբորատոր ստուգումն ավարտվել է 1960 թ., այնուհետև, 1961 թ. Կիրովի անվան գործարանում ՀԳՀՍԿԻ ֆիլիալի հետ միասին դա կատարված փորձերով ստացված է նաև կիսագործարանային մասշտաբով։ Սակայն, ներդրման գործը ձգձգվել է. նույնիսկ մինչև այժմ չի ավարտվել դրա տնտեսական հիմնավորումը. այն ձգձգվել է նախ ընկ. Վարդանյանի և ինստիտուտի պարտիական կազմակերպության անհետևողականության պատճառով և այն բանի հետևանքով, որ այդ գործում ժողտնտխորհի քիմիական արդյունաբերության վարչությունում հարկ եղած շահագրգռվածություն հանդես չեն բերել։

Մեր գիտահետազոտական հիմնարկների հիմնական նպատակը պետք է հանդիսանա այնպիսի պրոբլեմների մշակումը, որոնք նոր ուղիներ բացեն արդյունաբերության մեջ, լրջորեն խթանեն ժողովրդական տնտեսության զարգացմանը, այնպես, ինչպես ժողտնտխորհի անօրգանական քիմիայի ինստիտուտում կատարվող հետազոտությունները հիմք տվեցին ստեղծելու Հրազդանի խոշոր լեռնաքիմիական կոմբինատը։ Գիտահետազոտական հիմնարկների պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ հետևողական և սիստեմատիկ աշխատանք տանել գիտության և արտադրության կապի հետագա ամրապնդման, գիտության արդյունքներն արտադրության մեջ ժամանակին ներդնելու ուղղությամբ։

Անժխտելի է այն, որ այժմ, քան երբևէ, կարևոր նշանակություն է ստացել գիտական հիմնարկների ճիշտ տեղաբաշխման և տարբեր բնագավառների գիտնականների ուժերը, նրանց ջանքերը միավորելու և ճիշտ օգտագործելու հարցերը, մանավանդ գիտությունների այն ճյուղերի համար, որոնք լաբորատոր փորձնական սարքավորումների մեծ պահանջներ են ներկայացնում։

Գիտահետազոտական հիմնարկների առջև դրված լուրջ և պատասխանատու խնդիրների լուծումը հիմնականում կախված է բարձրորակ կադրերի առկայությունից, որոնք, վերջին հաշվով, որոշում են գործի հաջողությունը։ Եվ այդ է պատճառը, որ պարտիան այդքան մեծ ուշադրություն է դարձնում գիտա-մանկավարժական կադրերի պատրաստմանը։

Գիտական կադրերի պատրաստման գործում մեր ռեսպուբլիկան հասել է լուրջ հաջողությունների։ Այդ գործում խոշոր նվաճումներ կան նաև Երևանի գիտահետազոտական հիմնարկներում ու բարձրագույն ուսումնական հաստատություններում։ Սակայն, հարկավոր է խոստովանել, որ մայրաքաղաքում գիտական կադրերի աճը ետ է մնում բուռն թափով զարգացող գիտության ու տեխնիկայի պահանջներից, իսկ պարտիական կազմակերպությունների այդ ուղղությամբ կատարած աշխատանքը դեռևս բավարար չէ։ Առանձնապես

վատ է բարձր որակավորման աշխատողների՝ գիտության դոկտորների պատրաստման գործը։ Գիտական աշխատողների պահանջը գնալով աճում է։ Գիտահետազոտական հիմնարկներում զգացվում է այնպիսի գիտնականների պակասություն, որոնք մասնագիտանում են ֆիզիկայի, մաթեմատիկայի, մեխանիկայի, քիմիայի նոր բնագավառներում, գիտության այն ճյուղերում, որոնք կապված են արտադրության կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման, ճշգրիտ սարքաշինության հետ։ Բարձր որակավորման կադրերի պակաս կա նաև գյուղատնտեսության բնագավառի գիտական հիմնարկներում։

Հայտնի է, որ գիտական կադրերի պատրաստման հիմնական օղակներից մեկը ասպիրանտուրան է։ Այժմ Երևանի բարձրագույն ուսումնական հաստատությունների և գիտահետազոտական հիմնարկների ասպիրանտուրաներում սովորում են մոտ 600 մարդ, 1959 թվականի 281-ի դիմաց։ Սակայն այս բնագավառում նույնպես թերությունները շատ են։ Հաճախ ասպիրանտուրա են ընդունվում մարդիկ, որոնք գիտական աշխատանքում ընդունակություններ հանդես չեն բերել։ Եվ պատահական չէ, որ նրանցից շատերն ուսումն ավարտելուց հետո թեկնածուական դիսերտացիաներ պաշտպանել չեն կարողանում։ Պետք է ասել, որ դեռևս մեր բուհերի և գիտահետազոտական հիմնարկների պարտիական կազմակերպությունները անբավարար են զբաղվում ասպիրանտուրայի ընդունելության կազմակերպման գործով, որի հետևանքով տարիներ շարունակ թերակատարվում է ասպիրանտուրայի ընդունելության պլանը, այն էլ շատ հաճախ թերակատարվում է գիտության նորագույն ճյուղերի գծով։ Ստեղծված վիճակն անհանդուրժելի է, և մենք պարտավոր ենք բոլոր միջոցները ձեռնարկել դրությունը շտկելու համար։

Մեր շատ անվանի գիտնականներ սիրով զբաղվում են գիտական կադրերի պատրաստման, նրանց գիտական աճի ու դաստիարակության գործով։ Այդպիսի գիտնականներից օրինակ կարող են ծառայել Հայկական ՍՍՌ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոսներ Արտաշես Շահինյանը և Մխիթար Ջրբաշյանը, որոնք իրենց երկարամյա գիտամանկավարժական գործունեության ընթացքում պատրաստել ու պատրաստում են բազմաթիվ բարձրորակ գիտական աշխատողներ։ Սակայն, ավելորդ չէ այստեղ նշել, որ մեզ մոտ քիչ չեն նաև «առանց աշակերտի» գիտնականները, որոնք փոխարինողների պատրաստման գործով վատ են զբաղվում, պատասխանատվություն չեն ըզգում գիտության այն ճյուղի զարգացման համար, որին իրենց կյանքն են նվիրել։ Մինչդեռ գիտական աշխատանքն ու կադրերի պատրաստումը յուրաքանչյուր գիտնականի սրբազան պարտքն է, և այդ երկուսը միասին պետք է չափանիշ լինեն գիտնականի աշխատանքը գնահատելու, արժեքավորելու ժամանակ։

Մեր անվանի գիտնականները պարտավոր են գիտության մեջ իրենց ձեռք բերածը հաղորդել երիտասարդությանը։ Ուստի հարկավոր է անվանի գիտնականներին ավելի լայնորեն ներգրավել դասախոսական աշխատանքում, կարճատև, հատուկ կուրսերի միջոցով ուսանողությանը լուրջ գիտելիքներ հաղորդել գիտության նորագույն ճյուղերի գծով։ Այդ տեսակետից ուսանելի օրինակ է ցույց տալիս ՀՍՍՌ ԳԱ պրեզիդենտ ընկ. Վիկտոր Համբարձումյանը, որը ոչ միայն համալսարանում դասավանդում է, այլև աստրոֆիզիկայի ամբիոնի վարիչն է, դիպլոմնիկներ է ղեկավարում։ Խիստ չպետք է համարվի,



եթե ասենք, որ գիտությունների ակադեմիայի, գիտահետազոտական ինստիտուտների և բարձրագույն դպրոցների այդ ուղղությամբ ունեցած կապը դեռևս չի բավարարում այսօրվա պահանջներին, որովհետև մեր անվանի գիտնականներից շատերը կապված չեն բարձրագույն ուսումնական հաստատությունների հետ, չեն դասավանդում։

Գիտական կադրերի պատրաստումից, նրանց հոգատար կերպով աճեցնելուց մեծապես կախված է այն լուրջ գիտական խնդիրների լուծումը, որոնք դրել է պարտիայի XXII համագումարը, հետևապես այդ հարցերը պետք է գտնվեն մեր գիտահետազոտական հիմնարկների ու բարձրագույն ուսումնական հաստատությունների պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։

Գիտական հետազոտությունների հաջող կատարման համար, բացի կադրերից, շատ կարևոր են նաև նյութական հնարավորությունները, առանձնապես ճշգրիտ գիտությունների համար այն լաբորատոր-փորձնական բազան, որտեղ իրականացվում են այդ հետազոտությունները։ Պարտիան և կառավարությունը խոշոր միջոցներ են տրամադրում գիտության զարգացման համար։ ՀԿՊ Կենտկոմը և Հայաստանի կառավարությունը հսկայական գործ են կատարել ու օգնել են Երևանի գիտահետազոտական հիմնարկների ընդլայնմանը, նրանց հնարավորությունների մեծացմանը։ Ամեն տարի աճում են կապիտալ ներդրումները։ Սակայն պետք է ասել, որ այն ժամանակ, երբ մեր գիտահետազոտական հիմնարկների նյութական բազան դեռևս չի բավարարվում գիտության աճած պահանջները, մենք միանգամայն անբավարար ենք օգտագործում եղած միջոցները։ Զարմանալի է, որ գիտական օբյեկտների շինարարության համար տրամադրված գումարների մի զգալի մասը չի իրացվում։ Բավական է ասել, որ միայն նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի կոմպլեքսի շինարարության պլանի թերակատարման հետևանքով վերջին չորս տարում ակադեմիան կորցրել է 800 հազար ռուբլուց ավելի գումար, որով կարելի էր մի քանի շենքեր կառուցել։

Դա միանգամայն անթույլատրելի է և ցույց է տալիս, որ մեր շինարարական կազմակերպությունները, շինարարության մինիստրության ղեկավարները թերագնահատում են գիտական օբյեկտների շինարարությունը և անպատասխանատու վերաբերմունք են հանդես բերում դեպի այդ կարևոր գործը։ Պարզ երևում է, որ շինարարության մինիստրության ղեկավարները, ՀԿՊ Կենտկոմի որոշումից, Կենտկոմի պլենումում նրանց հասցեին եղած լուրջ քննադատությունից հետո անգամ բավարար չափով չեն բարձրացրել շինարարական այն տրեստների ղեկավարների պատասխանատվությունը, որոնք գիտական օբյեկտների կառուցման պետական առաջադրանք ունեն։ Իսկ պարտիական օրգանները, այդ թվում Երևանի քաղկոմը, դեռևս շինարարներից հաշիվ չեն պահանջել գիտական օբյեկտների շինարարության պլանները ձախողելու համար։

Մեր խնդիրն է՝ վերջ տալ այս հարցում գոյություն ունեցող անպատասխանատվությանը և հասնել այն բանին, որ գիտահետազոտական հիմնարկների շինարարության համար հատկացված կապիտալ ներդրումները լրիվ իրացվեն և բոլոր օբյեկտները ժամանակին հանձնվեն շահագործման։

Մայրաքաղաքի գիտական հիմնարկների առջև դրված լուրջ և պատասխանատու խնդիրների լուծումը գիտական հիմնարկների պարտիական կազ-

մակերպություններից պահանջում է ուշադրության կենտրոնում պահել գիտական կադրերին պարտիականության ու բարձր պատասխանատվության ոգով դաստիարակելու գործը։ Պետք է ասել, որ մեզ մոտ գիտական կադրերի կոմունիստական դաստիարակության ուղղությամբ կատարվող աշխատանքը դեռևս չի բավարարում պարտիայի XXII համագումարի որոշումներին։ Մի շարք գիտահետազոտական ինստիտուտների պարտիական կազմակերպություններում ՍՄԿՊ XXII համագումարի նյութերի, այնտեղ դրված տեսական հարցերի մշակումը դեռևս չի կազմակերպվում անհրաժեշտ բարձր մակարդակով, պահանջվող չափով չեն զբաղվում գիտական աշխատողների գաղափարական կոփմամբ։ Պարտիայի Սպանդարյանի և 26 կոմիսարների շրջկոմների ոչ բավարար աշխատանքի հետևանքով գիտական աշխատողները թույլ մասնակցություն ունեն բնակչության շրջանում տարվող ագիտացիոն պրոպագանդիստական աշխատանքներին։

Գիտական հիմնարկների պարտիական կազմակերպությունների մարտական խնդիրն է՝ համառ և սիստեմատիկ պայքար մղել առանձին գիտական աշխատողների մոտ երբեմն դրսևորվող այն տրամադրությունների դեմ, որոնք ձայնակցում են պարտիայի և ժողովրդի կողմից վաղուց դատապարտված բուրժուական գաղափարախոսությանը։

Այստեղ պետք է նշել, որ կադրերին գաղափարայնության, կոմունիստական սկզբունքայնության ոգով դաստիարակելու գործում կարևոր նշանակություն ունի գիտահետազոտական հիմնարկներում ստեղծագործական առողջ մթնոլորտի ստեղծումը։ Հանրահայտ է, գիտությունը չի կարող զարգանալ առանց մտքերի բախման, առանց բանավեճերի, կարծիքների փոխանակման։ Սակայն պետք է ասել, որ քաղաքի որոշ գիտական հիմնարկություններում ոմանք խախտում են այդ կարևոր սկզբունքը, գիտական վեճերը վեր են ածում խմբծանքի և խոչընդոտում կոլեկտիվների նորմալ աշխատանքը։ Մի շարք գիտական աշխատողներ հաճախ չեն ընդունում արդարացի քննադատությունը, չեն կարողանում հաշտվել այն մտքի հետ, որ իրենց աշխատանքի կամ աշխատության մեջ էլ կարող են թերություններ լինել, կարծում են, թե իրենք միայն անթերի գործ կարող են ստեղծել։ Այդպիսի գիտական աշխատողները քննադատությանը պատասխանում են անձնական վիրավորանքով, չարակամորեն են տրամադրվում ընկերոջ նկատմամբ։ Քննադատողներն էլ երբեմն սուբյեկտիվ վերաբերմունք հանդես բերելով, ընկնում են ծայրահեղությունների մեջ կամ անսահման գովերգում են աշխատանքը, կամ ընդհակառակը՝ այդ աշխատանքի մեջ ոչ մի լուսավոր կետ չեն տեսնում։ Ցավոք, մեր մամուլը երբեմն տեղ է տալիս այդպիսիներին։

Գիտական աշխատանքի համար ստեղծագործական մթնոլորտի ապահովման խնդիրը պետք է լրջորեն անհանգստացնի մեր պարտիական կազմակերպություններին, որովհետև դրանից մեծապես կախված է գիտահետազոտական աշխատանքի հաջողությունը։

Պարտիայի քաղկոմը, շրջկոմները և գիտական բոլոր հիմնարկների սկզբնական պարտիական կազմակերպությունները պարտավոր են կադրերի գաղափարական դաստիարակությունը դարձնել իրենց գործունեության կենտրոնական հարցը, կոնկրետ միջոցներ ձեռնարկել՝ բարելավելու գիտական աշխատողների կոմունիստական դաստիարակության կարևոր գործը։

---

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱԺԱՆՄԱՆ ՆՈՐ ՏԻՊ

Ա. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

ԱՇԽԱՏԱՆՔԻ միջազգային բաժանումը հասարակական աշխատանքի բաժանման ձևի արտահայտությունն է, որը դուրս է գալիս ազգային պետական շրջանակներից և ձեռք է բերում միջազգային նշանակություն։ Այն աշխատանքի բաժանում է ազգային պետությունների միջև։

ՍՄԿՊ Ծրագրում նշված է, որ գոյացել է աշխատանքի միջազգային բաժանման նոր տիպ, որը ձևավորվել է սոցիալիզմի երկրների տնտեսական և գիտատեխնիկական համագործակցության, նրանց ժողովրդա-տնտեսական պլանների կոորդինացման, արտադրության մասնագիտացման ու կոոպերացման պրոցեսում։ Աշխատանքի միջազգային բաժանման սոցիալիստական նոր ձևը վճռական դեր է խաղում համաշխարհային սոցիալիստական սիստեմի էկոնոմիկայի աննախընթաց զարգացման գործում։ Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումն արմատապես տարբերվում է աշխատանքի միջազգային կապիտալիստական բաժանման հին ձևից և ունի իր առանձնահատկություններն ու առավելությունները։

## I

ԱՇԽԱՏԱՆՔԻ հասարակական բաժանումը մարդկային հասարակության մեջ առաջացել է շատ վաղուց և հանդիսանում է նյութական բարիքների արտադրության զարգացման կարևորագույն պայմանը։ Մարդիկ աշխատանքի պրոցեսում օգտագործելով աշխատանքի տարբեր գործիքներ և առարկաներ, սկսել են արտադրել տարբեր արդյունքներ և այդպիսով մասնագիտացել են տարբեր բարիքներ արտադրելու մեջ։ Աշխատանքի բաժանումը, ինչպես ընդգծել են մարքսիզմ-լենինիզմի կլասիկները, միշտ արտացոլում է տվյալ հասարակարգում աշխատանքի պայմանների, կամ, ավելի ճիշտ՝ արտադրության միջոցների որոշակի բաշխումը։

Աշխատանքի գործիքների և առարկաների, կամ արտադրության միջոցների զարգացմանն ու կատարելագործմանը զուգընթաց սկսել է ավելի խորանալ ու կատարելագործվել հասարակական աշխատանքի բաժանումը։ Այդ զարգացման պրոցեսը որոշակի չափով նկատելի է եղել ինչպես ստրկատիրական, այնպես էլ ֆեոդալական ֆորմացիաներում։ Աշխատանքի բաժանման շրջանակները մեծ չափով ընդարձակվում են կապիտալիզմի ժամանակ, հատ-

կապես մեքենայական արտադրության զարգացման հիման վրա։ Աշխատանքի բաժանման պրոցեսի զարգացումը բնորոշ է նաև սոցիալիստական ֆորմացիայի համար և Մարքսի խոսքերով ասած՝ «...աշխատանքի բաժանումն ամբողջ հասարակության մեջ — միևնույն է, ապրանքա-փոխանակության միջոցով է այն կատարվում, թե դրանից անկախ — հատուկ է ամենատարբեր հասարակական-տնտեսական ֆորմացիաներին...», («Կապիտալ», հ. I, էջ 378—379)։

Աշխատանքի բաժանման պրոցեսի զարգացումը հանգեցնում է նրան, որ այն հետզհետե դուրս է գալիս տվյալ երկրի ազգային սահմաններից։ Բնակլիմայական պայմաններին և արտադրամիջոցների զարգացման մակարդակին համապատասխան, տարբեր ազգեր ու ժողովուրդներ ավելի ու ավելի են մասնագիտանում այս կամ այն բարիքների արտադրության մեջ, որը հանգեցնում է միջազգային առևտրի զարգացման, հետևապես և միջազգային շուկայի առաջացման։ Մարքսը նշում է, որ «Մինչ մեքենաների գյուտը, տվյալ երկրի արդյունաբերությունը գլխավորապես զբաղվում էր այն հումքի մշակմամբ, որը հանդիսանում էր իր սեփական ընդերքի արդյունքը: Այսպես Անգլիան մշակում էր բուրդ, Գերմանիան — վուշ, Ֆրանսիան — մետաքս և վուշ, Օստ-Ինդիան և Լևանտը — բամբակ և այլն: Մեքենաների և շոգու օգտագործման շնորհիվ աշխատանքի բաժանումն այնպիսի չափեր ընդունեց, որ ազգային հողից կտրված խոշոր արդյունաբերությունը կախված է արդեն բացառապես համաշխարհային շուկայից, միջազգային փոխանակումից և աշխատանքի միջազգային բաժանումից» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 4, էջ 157)։ Ահա այն պայմանները, որոնք ձևավորում են աշխատանքի միջազգային բաժանումը և համաշխարհային շուկան։

Մարքսի այս կլասիկ պարզաբանումը հիմնովին հերքում է բուրժուական տնտեսագետների այն պնդումները, թե աշխատանքի միջազգային բաժանման գլխավոր պատճառն աշխարհագրական պայմաններն են և ոչ թե արտադրողական ուժերի զարգացումը։ Այդ դեպքում հարց է ծագում, ինչով բացատրել, որ մինչև խոշոր մեքենայական արտադրությունը, աշխատանքի միջազգային բաժանումը խիստ թույլ էր զարգացած, մինչդեռ երկու դեպքում էլ բնակլիմայական պայմանները գրեթե նույնն էին։ Բանն այն է, որ մինչև կապիտալիստական խոշոր մեքենայական արտադրությունը, հատկապես ստրկատիրության և ֆեոդալիզմի ժամանակ արտադրողական ուժերն այնքան թույլ էին զարգացած, որ չէին կարող աշխատանքի միջազգային բաժանման հնարավորություններն իրականություն դարձնել։ Միայն զարգացած խոշոր մեքենայական ինդուստրիայի, տրանսպորտի և կապի միջոցների առկայության պայմաններում հնարավոր եղավ այն դարձնել իրականություն։

Աշխատանքի միջազգային բաժանման էությունն ու բնույթը բնորոշվում են ոչ միայն նրանով, թե ինչպիսին է արտադրության մակարդակը և ինչ ձևով է կատարվում բնության հարստությունների տերիտորիալ բաժանումը, այլև նրանով, թե ում ձեռքում են գտնվում արտադրության միջոցները։ Դրանից ելնելով էլ աշխատանքի բաժանման զարգացման տարբեր աստիճանները բնորոշվում են սեփականության տարբեր ձևերով։ Ելնելով նշածից, նկատելի է այն արմատական տարբերությունը, որ գոյություն ունի աշխատանքի միջազգային բաժանման երկու հակադիր սիստեմների՝ կապիտալիստականի և սոցիալիստականի միջև, որոնց արտադրահարաբերությունների հիմքում ընկած են սեփականության տարբեր ձևերը։



Աշխատանքի միջազգային կապիտալիստական բաժանման հիմքում ընկած է արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը։ Դրա շնորհիվ կապիտալիզմի պայմաններում պետությունները փոխհարաբերության մեջ են մտնում ոչ հավասար իրավունքներով։ Ուժեղ պետությունները թույլերի նկատմամբ դառնում են տիրապետող և մրցակցության հետևանքով համաշխարհային առևտրի մեջ նրանք գրավում են հրամանատարական դիրքեր։ Դա նպաստում է այն բանին, որ ուժեղ պետությունները բռնագրավում են հումքի աղբյուրները, տնտեսապես շահագործում թույլ զարգացած երկրներին և տնտեսական ու քաղաքական տեսակետից վերջիններիս կախման մեջ դընում իրենցից։ Այս խայտառակ և դաժան սկզբունքների հիման վրա է կառուցված իմպերիալիզմի գաղութային սիստեմը, որն այժմ քայքայվում է։

Աշխատանքի միջազգային կապիտալիստական բաժանման պրոցեսը հասցրել է նրան, որ կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրությունն աստիճանաբար կենտրոնացվել է մի քանի հզոր երկրներում։ Այսպես, օրինակ, ԱՄՆ-ին, Անգլիային, Ֆրանսիային, Գերմանիայի ֆեդերատիվ ռեսպուբլիկային, որտեղ բնակվում է երկրագնդի բնակչության 1/6 մասը, բաժին է ընկնում կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրության մոտ 3/4-ը, ընդ որում միայն ԱՄՆ-ի բաժինը կազմում է դրա մոտ կեսը։ Մինչդեռ տնտեսական և կուլտուրական տեսակետից թույլ զարգացած երկրներին, որտեղ բնակվում է աշխարհի բնակչության մոտ 50 տոկոսը, բաժին է ընկնում համաշխարհային արդյունաբերության միայն 7, էլեկտրաէներգիայի համաշխարհային արտադրության՝ 6,8 և պողպատի համաշխարհային ձուլման՝ 3 տոկոսը։ Կապիտալիստական աշխարհի առավել օբյեկտիվ և հեռատես տնտեսագետներն ու պետական գործիչներն ավելի ակտիվ են քննադատում աշխատանքի կապիտալիստական միջազգային բաժանման բնույթն ու հետևանքները։ Այսպես, օրինակ, Եվրոպայի գծով ՄԱԿ-ի տնտեսական հանձնաժողովի նախկին գործադիր քարտուղար Գ. Մյուրդալն իր «Համաշխարհային էկոնոմիկա» գրքում, թույլ զարգացած երկրների էկոնոմիկայի մասին գրում է. «Առանց հաշվի առնելու նրանց էկոնոմիկայի ոչ պրոպորցիոնալ բնույթը, որը հանդիսանում է գաղութակալության ու տնտեսական կախվածության ժամանակի ժառանգությունը, չի կարելի հասկանալ և մեկնաբանել թույլ զարգացած երկրների ձգտումը դեպի ինդուստրացում» («Социалистическое международное разделение труда», էջ 13)։ Լատինական Ամերիկայի երկրների գծով ՄԱԿ-ի տնտեսական հանձնաժողովի գործադիր քարտուղար պրոֆեսոր Ռաուլ Պրեբիշը նշում է, որ Լատինական Ամերիկայի երկրների զարգացման օբյեկտիվ պահանջները փշրում են աշխատանքի միջազգային բաժանման հնացած ձևը։ Այդ աշխարհամասի երկրների զարգացման նոր ուղղության օրինակ է ցույց տալիս Կուբայի ռեսպուբլիկան, որը վարելով ինդուստրացման քաղաքականություն, կանգնել է անկախ տնտեսական զարգացման ուղու վրա։

Աշխատանքի միջազգային կապիտալիստական անարդար բաժանմանը ծանր հարված է հասցնում թույլ զարգացած, ոչ սոցիալիստական երկրներին սոցիալիստական լագերի երկրների, այդ թվում հատկապես ՍՍՌՄ-ի, անշահախնդիր տնտեսական օգնությունը։ Այս հիման վրա սոցիալիստական և թույլ զարգացած ոչ սոցիալիստական երկրների միջև ձևավորվել և զարգանում են տնտեսական նոր հարաբերություններ, որոնք մի կողմից նպաստում են

*այդ երկրների էկոնոմիկայի արագ զարգացմանը, մյուս կողմից՝ մերկացնում իմպերիալիստական երկրների գաղութատիրական քաղաքականությունը։ Իմպերիալիզմի հեռատես և լուրջ մտածող քաղաքագետներն այդ պրոցեսը լավ են հասկանում։ Այսպես, օրինակ, ամերիկյան հայտնի քաղաքական գործիչ Ա. Ստիվենսոնն այդ կապակցությամբ գրել է. «Սովետական տնտեսական և քաղաքական ներթափանցումը դժվարահաղթելի է։ Ինչպես երևում է, բոլորից դժվար է մեզ հասկանալ մեր առաջ կանգնած վտանգի ռեալականությունը...»* (Е. Варга, «Капитализм XX века», *էջ 98)։*

## II

*ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆ աշխատանքի միջազգային կապիտալիստական բաժանման, աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման նոր տիպը խարսխված է արտադրության միջոցների նկատմամբ հանրային սեփականության, ժողովրդի իշխանության, մարքսիզմ-լենինիզմի գաղափարախոսական սկզբունքների վրա։ Այս սոցիալ-տնտեսական քաղաքական ընդհանրությունը հանդիսանում է այն օբյեկտիվ հիմքը, որի վրա խարսխված են սոցիալիստական երկրների ամուր և բարեկամական փոխադարձ հարաբերությունները։ Ինչպես նշված է ՍՄԿՊ նոր Ծրագրում,—* «Սոցիալիստական պետությունների համագործակցությունը նրանցից յուրաքանչյուրին թույլ է տալիս առավել ռացիոնալ ու լիակատար կերպով օգտագործել իր ռեսուրսները, զարգացնել արտադրողական ուժերը։ Սոցիալիզմի երկրների տնտեսական և գիտա-տեխնիկական համագործակցության, նրանց ժողովրդա-տնտեսական պլանների կոորդինացման, արտադրության մասնագիտացման ու կոոպերացման պրոցեսում ձևավորվում է աշխատանքի բաժանման նոր տիպ» *(ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 442—443)։*

*Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը, որպես օբյեկտիվ անհրաժեշտություն, բխում է սոցիալիստական սիստեմի զարգացման օրենքներից՝ սոցիալիզմի հիմնական տնտեսական, ժողովրդական տնտեսության պլանաչափ, պրոպորցիոնալ զարգացման, աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման օրենքներից և այլն։*

*Ելնելով սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի պահանջներից, սոցիալիստական երկրների միջև տնտեսական կապերը, այդ թվում նաև աշխատանքի բաժանումը ենթարկվում են աշխատավորների հարաճուն պահանջների բավարարմանը։ Ժողովրդական տնտեսության պլանաչափ պրոպորցիոնալ զարգացման օրենքի հիման վրա սոցիալիստական երկրների միջև տեղի է ունենում աշխատանքի ռացիոնալ բաժանում՝ հաշվի առնելով ամեն մի երկրի հնարավորությունները։ Յուրաքանչյուր երկիր իր ռեսուրսների մի մասը հատկացնում է մյուս երկրների պահանջները բավարարելուն և իր հերթին բարեկամական օգնություն է ստանում նրանցից։ Դրա միջոցով վերացվում են ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի զարգացման զուգահեռությունը, հետևապես՝ աշխատանքի ավելորդ ծախսումները։*

*Բացի դրանից, աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը հեշտացնում է ժողովրդական դեմոկրատիայի երկրների, կապիտալիզմից ժառանգած, տնտեսական հետամնացության ու տնտեսական զարգացման միակողմանիության վերացումը, օգնում այդ երկրներին՝ ավելի արագ ամրապնդելու ժողովուրդների բարեկամությունը։ Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումն իր առավելությունների շնորհիվ նպաստում է արտադրության անշեղ զարգացմանը, արտադրական ծախքերի կրճատմանը, առաջավոր տեխնիկայի յուրացմանն ու օգտագործմանը և հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։*

*Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման զարգացման շահերը պահանջում են ավելի ամրապնդել անշահախնդիր տնտեսական կապերը երկրների միջև։ Այս տենդենցը, տնտեսական պլանների կոորդինացման հիման վրա, հանգեցնում է սոցիալիստական երկրների արտադրական ջանքերի միավորման, որը շատ կարևոր է արդի էտապում։* «Միասնական, մի ընդհանուր պլանով բոլոր ազգերի պրոլետարիատի կողմից կարգավորվող համաշխարհային տնտեսության՝ որպես ամբողջության ստեղծման տենդենցը...» *(Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 168), ներկա պայմաններում հանդես է գալիս հատուկ ուժով։*

*Սովետական Միությունը և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, ունենալով հսկայական բնական հարստություններ, տնտեսական և մարդկային հզոր ռեսուրսներ, զարգացնում են իրենց արդյունաբերության բոլոր անհրաժեշտ ճյուղերը։ Սոցիալիստական լագերի մյուս երկրները չունեն այդպիսի հնարավորություններ։ Դրա համար, հենվելով սոցիալիստական լագերի և, առաջին հերթին, Սովետական Միության տնտեսական օգնության վրա, նրանք առավել չափով զարգացնում են արտադրության այն ճյուղերը, որոնց համար ունեն բարենպաստ բնական և տնտեսական պայմաններ։ Դրա առավելությունը նրանում է, որ հնարավորություն է տալիս սոցիալիստական երկրներին՝ զգալի չափով խնայելու նյութական ու ֆինանսական միջոցներ, ավելի լրիվ օգտագործելու բնական հարստությունները, գիտության ու տեխնիկայի նվաճումները, կրճատելու շինարարության ժամկետները, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը։*

*Սոցիալիստական երկրների արտադրական ջանքերի միավորումն աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման հիման վրա մեծ դեր է խաղում այդ երկրների արտադրողական ուժերի զարգացման համար։ Մի շարք երկրների ջանքերի միավորման շնորհիվ միասնական էլեկտրացանց ստեղծելու կապակցությամբ արժե հիշատակել Վ. Ի. Լենինի այն իմաստուն խոսքերը,* «...որ ժամանակակից առաջավոր տեխնիկան հրամայողաբար պահանջում է ամբողջ երկրի և մի շարք հարևան երկրների— էլեկտրիֆիկացիան մի պլանով» *(Երկեր, հ. 33, էջ 147)։ Առաջնորդի այս ցուցումն այսօր արդեն դարձել է իրականություն։ Արտադրողական ուժերի հետագա զարգացումը պահանջում է ավելի մեծ չափով ծավալել կոոպերացումը սոցիալիստական երկրների միջև էներգետիկայի ասպարեզում։*

*Ընթացիկ յոթնամյակում ՍՍՌՄ-ի և եղբայրական ժողովրդա-դեմոկրատական երկրների միջև կկառուցվեն նոր հզոր էլեկտրահաղորդման գծեր։ Արդեն իրականացված փաստ է դարձել ՍՍՌՄ-ի արևմտաուկրաինական էներգասիստեմի միացումը Հունգարիայի, Ռումինիայի և Չեխոսլովակիայի էներգասիստեմների հետ։ Յոթնամյակի վերջին տարիներին ՍՍՌՄ-ից Հունգարիա կհաղորդվի տարեկան մեկ միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, Կալինինգրադյան էներգասիստեմը 1959 թվականին միացվել է Լեհական էներգասիստեմին (ք. Կենտշին)։ Այսպիսով հիմք է դրվում հետագայում ՍՍՌՄ-ի*

եվրոպական շրջանի և Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրների էներգասիստեմների միացման:

Ժամանակակից պայմաններում, երբ արտադրության պրոցեսում տեղի է ունենում տեխնիկական ռևոլյուցիա, մեծ նշանակություն են ստանում արտադրության կոոպերացումը և մասնագիտացումը, հետևապես և՝ արտադրության ավտոմատացումը: Որոշ սոցիալիստական երկրներում, ինչպես ԳԴՌ-ում, Չեխոսլովակիայում, Հունգարիայում (չհաշված ՍՍՌՄ-ը և Չինաստանը) արտադրության ավտոմատացման ու մասնագիտացման հիման վրա տեղի է ունենում արտադրանքի մի շարք տեսակների մասսայական թողարկում, որը տվյալ երկրի ներքին շուկայի նեղության պատճառով հնարավոր չէ լրիվ սպառել և, հետևապես պահանջ է զգացվում ավելի լայն շուկայի: Այսպիսով, արտադրության մասնագիտացման և կոոպերացման պահանջը սոցիալիստական երկրների համար կարևոր նշանակություն է ստանում: Ելնելով այդ պահանջներից, Տնտեսական փոխօգնության խորհուրդը վերջին տարիներին ընդունել է մի շարք հանձնարարականներ խորհրդի մեջ մտնող սոցիալիստական երկրների համար: Դրա հիման վրա միջպետական մասնագիտացման և կոոպերացման պետք է ենթարկվեն ավելի քան 1000 մեքենաների ու սարքավորումների տարբեր տեսակներ և մոտ 500 տեսակ քիմիական արտադրանք: Մեքենաշինական արտադրանքի միջազգային մասնագիտացման, Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների հեռանկարային պլանների պահանջներից ելնելով 1959—65 թվականներին նախատեսվում է 2,2 անգամ ավելացնել ՍՍՌՄ-ից ՏՓԽ-ի մեջ մտնող մյուս երկրներն արտահանվող մեքենաների ու սարքավորումների թիվը: Իսկ այդ երկրներից, 1965 թվականին Սովետական Միություն (1957 թվականի համեմատությամբ) 2,3 անգամ շատ մեքենաներ ու սարքավորումներ պետք է ներմուծվեն: Արտադրության մասնագիտացման և կոոպերացման տեսակետից նպատակահարմար է ածխարդյունաբերության համար սարքավորման արտադրությունը կենտրոնացնել Լեհաստանում, ԳԴՌ-ում, Չեխոսլովակիայում, ցեմենտի և տրիկոտաժի արդյունաբերության սարքավորման արտադրությունը՝ գլխավորապես ԳԴՌ-ում, իզոթերմիկ վագոններինը՝ միայն ԳԴՌ-ում: Չեխոսլովակիան մասնագիտանալու է էներգետիկ և դարբնամամլակային սարքավորումների, ինչպես նաև կաշվի և կոշկեղենի արդյունաբերության սարքավորում թողարկելու մեջ: Հունգարիան դադարեցրել է ապրանքատար վագոնների արտադրությունը, բայց մի քանի անգամ ավելացնում է դիզելատորների, ջերմաքարշների, բազմատեղ ավտոբուսների, ինչպես նաև կապի սարքերի ու միջոցների արտադրությունը և այլն:

Սոցիալիստական երկրների միջև աշխատանքի բաժանումը պայմանավորված է նաև այդ երկրների հումքի ռեսուրսների անհավասար պաշարներով: Հումքի պաշարների տեսակետից ավելի սահմանափակ են ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրները: Այսպես, օրինակ, ԳԴՌ-ն ներմուծման միջոցով է բավարարում նավթի համարյա ամբողջ պահանջը, երկաթահանքի, քարածխի, կապարի, ցինկի պահանջի մինչև երկու-երրորդը, սև մետաղների գլանվածքի, կոքսի, պղնձի և այլնի պահանջի մեկ երրորդը: Չեխոսլովակիան ներմուծում է երկրում օգտագործվող գրեթե ողջ նավթը, գունավոր մետաղները, երկաթահանքի գերակշռող մասը: Զգալի քանակությամբ նավթ է ներմուծում Հունգարիան: Սակայն նա հարուստ է ալյումինի արդյու-



նաբերության հումքով. ալյումինը արտահանում է ուրիշ երկրներ: Ինչպես հայտնի է, Ռումինիան հարուստ է նավթով, բայց աղքատ է երկաթահանքով, կոքսացված ածխով, պղնձով և ալյումինով: Լեհաստանն ունի իր սեփական ածուխը, կոքսը, մի շարք գունավոր մետաղներ, բայց շատ քիչ նավթ և երկաթահանք ունի: Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան դեռևս չի կարողանում բավարարել իր պահանջները սեփական նավթով, նա կարիք է զգում անտառանյութի և հումքի մի շարք տեսակների: Այդ կարիքները բավարարվում են փոխադարձ օգնության միջոցով:

ՏՓԽ-ը 1958 թվականի դեկտեմբերին ընդունեց հանձնարարական նավթամուղի կառուցման մասին՝ ՍՍՌՄ-ից Հունգարիա, ԳԴՌ, Լեհաստան և Չեխոսլովակիա նավթ տեղափոխելու համար: Կառուցման ընթացքում այն ստացավ «Բարեկամության նավթամուղ» անունը, որը մեծ նշանակություն կունենա այդ երկրների էկոնոմիկայի զարգացման համար: Արդեն կառուցվել և շահագործման են հանձնվել այդ նավթամուղի առանձին տեղամասերը: Սոցիալիստական պետություններն իրենց ջանքերը միավորում են՝ կառուցելու նաև երկաթուղային ճանապարհներ: ՍՍՌՄ-ի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի և Բուլղարիայի միացյալ ջանքերով Դանուբի վրա կառուցված է խոշոր կամուրջ, որն իրավամբ կոչում են բարեկամության կամուրջ: ՍՍՌՄ-ի, ՉԺՌ-ի և ՄԺՌ-ի համագործակցության հիման վրա կառուցվել է երկաթուղի չինական Ցզինինի քաղաքից մինչև Ուլան-բատոր, որը հնարավորություն է տվել մոտ հազար կիլոմետրով կրճատել ճանապարհը Մոսկվայից մինչև Պեկին: ՍՍՌՄ-ը և սոցիալիստական Չինաստանը համատեղ կառուցում են Լանչժոու—Ուրումչի—Ալմա-Աթա երկաթուղին:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմն ունի անսպառ բնական հարստություններ, որոնք հնարավորություն են տալիս աշխատանքի ճիշտ բաշխման շնորհիվ այս կամ այն երկրի հումքի կարիքները բավարարելու մյուս երկրների եղբայրական օգնությամբ:

## III

ԱՇԽԱՏԱՆՔԻ միջազգային սոցիալիստական բաժանումն իր ծագման և զարգացման ընթացքում անցել է որոշակի էտապներ:

Առաջին էտապն ընդգրկում է այն ժամանակաշրջանը, երբ ծագեց համաշխարհային սոցիալիստական սիստեմը և սոցիալիստական երկրների միջև սկսեցին հիմնավորվել ամուր տնտեսական կապեր: Դրանց մեջ վճռական տեղ է գրավում տնտեսական կապերի ամրապնդումը Սովետական Միության հետ: Այդ շրջանում սկսեց ձևավորվել աշխատանքի միջազգային բաժանման նոր սոցիալիստական տիպը: 1949 թվականին Տնտեսական փոխօգնության խորհրդի ստեղծումը, որի մեջ մտան Եվրոպայի ժողովրդա-դեմոկրատական երկրները և Սովետական Միությունը, կարևոր նշանակություն ունեցավ սոցիալիստական երկրների միջև համագործակցության ուժեղացման և աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման զարգացման ու խորացման համար:

Այդ ժամանակաշրջանում սոցիալիստական երկրների միջև աշխատանքի բաժանումը հիմնականում մի նպատակ էր հետապնդում՝ արագացնել նրանց էկոնոմիկայի վերականգնումը և բարելավել բնակչության՝ առաջին անհրա-

ժեշտ կարևորագույն առարկաների պահանջը։ Տնտեսական համագործակցու-
թյան ասպարեզում այդ ժամանակ որոշակի տեղ էին գրավում արտաքին
առևտրական հարաբերությունները, պետությունների միջև գիտա-տեխնիկա-
կան նվաճումների փոխանակումը, վարկավորումը և այլն։

Երկրորդ էտապում սոցիալիստական երկրներում վերացվում են ժողո-
վրրդական տնտեսության պլանավորման մեջ տեղ գտած թերությունները և
մեծ նշանակություն է ձեռք բերում անմիջական արտադրական համագործակ-
ցությունը։ 1956 թվականից հետո իրականացվում է սոցիալիստական երկր-
ների ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի զարգացման հիմնա-
կան հարցերի համաձայնեցումը։ Իսկ 1959 թվականից սկսվում է ժողովրդա-
տնտեսական պետական պլանների կոորդինացումը։ Աշխատանքի սոցիալիս-
տական միջազգային բաժանման հիմնական պահանջը երկրորդ էտապում
հանդիսացել է թույլ և միջին աստիճանի զարգացած երկրներում ինդուստրաց-
ման քաղաքականության իրականացումը, սոցիալիզմի և կոմունիզմի նյութա-
տեխնիկական բազայի ստեղծումը՝ սոցիալիստական լագերի երկրներում։

ՍՍՌՄ-ում և սոցիալիստական լագերի մի շարք երկրներում ընդունված
որոշումները՝ մինչև 1980 թվականը ժողովրդական տնտեսության զարգացման
գլխավոր հեռանկարային պլանների մշակման մասին և ՏՓԽ-ի 12-րդ սեսիա-
յի (1960 թ. հունիս) հանձնարարականն այդ պլանների կոորդինացման վե-
րաբերյալ, նշանավորում են Երրորդ էտապի սկիզբը աշխատանքի միջազգա-
յին սոցիալիստական բաժանման զարգացման մեջ։

Սոցիալիստական երկրների ներքին քաղաքական և սոցիալ-տնտեսական
բնագավառներում, ինչպես նաև նրանց փոխհարաբերություններում տեղի ու-
նեցած որակական խոր փոփոխությունները հասցրին զարգացման այդ նոր,
ավելի բարձր էտապին։ Ինչպես պարտիայի XXII համագումարին տված ՍՄԿՊ
Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշեց Ն. Ս. Խրուշչովը՝ «Այժմ այդ սիս-
տեմը թևակոխել է իր զարգացման նոր էտապը։ Այժմ գլխավորն է, անշեղո-
րեն զարգացնելով բոլոր սոցիալիստական երկրների և նրանցից յուրաքան-
չյուրի էկոնոմիկան, արտադրության բացարձակ ծավալով հասնել սոցիալիզմի
համաշխարհային սիստեմի գերակշռության՝ կապիտալիստականի հանդեպ։
Դա կլինի սոցիալիզմի պատմական մեծ հաղթանակը» (ՍՄԿՊ XXII համա-
գումարի նյութերը, էջ 11)։

Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման քսան-
ամյա պլանը, որը նախատեսում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի
ստեղծում ՍՍՌՄ-ում, ունի բացառիկ կարևոր նշանակություն ոչ միայն Սո-
վետական Միության, այլև սոցիալիստական լագերի բոլոր երկրների էկոնո-
միկայի վերելքի համար։ Միայն արտադրական ջանքերի միավորումը, դրանց
կոորդինացումն աշխատանքի միջազգային բաժանման հիման վրա, իրոք կա-
րող է մեծապես նպաստել սոցիալիստական երկրների արտադրողական ուժե-
րի բարձր տեմպերով զարգացմանը։ Դա վճռական նշանակություն կունենա
սոցիալիզմի և կապիտալիզմի միջև տնտեսական մրցության ասպարեզում
հաղթող դուրս գալու և սոցիալիստական առանձին երկրների տնտեսական
զարգացման մակարդակների միջև տարբերությունների աստիճանական հաղ-
թահարման համար։ Ինչպես նշել է Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXI համագումա-
րում, «Սոցիալիստական լագերի էկոնոմիկայի զարգացման մեջ կոչված են
մեծ դեր խաղալու աշխատանքի միջազգային բաժանումը... Դրանում են սո-



ցիալիզմի ամբողջ լագերում և առանձին վերցրած յուրաքանչյուր սոցիալիս-
տական երկրում արտադրության աճի նոր, լրացուցիչ հնարավորությունները։
Ոչ մի երկիր միայնակ չէր կարող զարգանալ այնպիսի բուռն տեմպերով, ինչ-
պես սոցիալիստական պետությունների սիստեմում» («ՍՍՌՄ ժողովրդական
տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մա-
սին», էջ 93)։

Այդ նվաճումներն ավելի ցայտուն են դառնում, երբ սոցիալիստական
երկրների զարգացման տեմպերը համեմատում ենք կապիտալիստական եր-
կրների էկոնոմիկայի զարգացման տեմպերի հետ։ Այդ տեսակետից բնորոշ
են արդյունաբերության արտադրանքի աճի տեմպերը։ Եթե սոցիալիստական
երկրների արդյունաբերական արտադրության ծավալը 1960 թվականին, 1937
թվականի համեմատությամբ, ավելացել է 6,8 անգամ, ապա կապիտալիստա-
կան երկրներում այն ավելացել է մոտ 2,5 անգամ։ Եթե սոցիալիզմի երկր-
ներում արդյունաբերության աճի տարեկան միջին տեմպը 1951—1960 թթ.
կազմում էր 13,6, ապա կապիտալիզմի երկրներում այն կազմել է միայն 4,8
տոկոս։ 1957—1962 թթ. սոցիալիստական երկրների արդյունաբերության ար-
տադրանքն ավելացել է 70, իսկ կապիտալիստական երկրներինը՝ 25 տո-
կոսով։

Համաշխարհային արդյունաբերության արտադրության մեջ սոցիալիզմի
բաժինը, որը 1955 թվականին կազմում էր 27 տոկոս, 1962 թվականին հա-
սավ մոտավորապես 37-ի։ 1950-ից մինչև 1960 թվականն ընկած ժամանա-
կաշրջանում սոցիալիստական երկրների ապրանքաշրջանառությունն աճեց
ավելի քան երեք անգամ, իսկ կապիտալիստական երկրների ապրանքաշրջա-
նառությունը՝ միայն երկու անգամ։ Սոցիալիստական լագերում արդյունաբե-
րական արտադրանքի տեսակարար կշիռը ժողովրդական տնտեսության մեջ
1961 թ. կազմել է մոտավորապես 75 տոկոս, որը վկայում է սոցիալիզմի
համաշխարհային սիստեմի ժողովրդական տնտեսության զարգացման ին-
դուստրիալ ուղղության մասին։ Ռևոլյուցիոն մեծ իրադարձություն է ժողովր-
դական դեմոկրատիայի երկրների մեծ մասում գյուղատնտեսության կոոպե-
րացման ավարտումը։ Ամբողջ սիստեմի մասշտաբով ըստ գյուղատնտեսու-
թյան ընդհանուր հողատարածության, սոցիալիստական սեկտորի բաժինն
այժմ անցնում է 90 տոկոսից։

Սոցիալիզմի նվաճումները և նրա առավելությունն ավելի են աչքի ընկ-
նում, երբ համեմատության մեջ ենք դնում երկու հակադիր սիստեմների ամե-
նախոշոր տերությունների ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի զարգացման արդյունքներն ու
հեռանկարները։ Մինչռևոլյուցիոն Ռուսաստանն արդյունաբերական ընդհա-
նուր արտադրանքի տեսակետից 8 անգամ ետ էր մնում ԱՄՆ-ից։ ՍՍՌՄ-ի
արդյունաբերական արտադրությունը 1950 թ. հասել էր ԱՄՆ-ի արդյունաբե-
րական արտադրության մակարդակի 30, իսկ 1960 թ. 60 տոկոսին։ 1958—
1960 թվականների ընթացքում Սովետական Միության արդյունաբերական
արտադրությունն աճել է ավելի քան 30, իսկ ԱՄՆ-ինը միայն 6 տոկոսով։
Արդյունաբերական ձեռնարկությունների թերբեռնվածությունն ու գործազր-
կությունը բնորոշ են ԱՄՆ-ի և մյուս կապիտալիստական երկրների տնտեսու-
թյան համար։ 1959 թ. ԱՄՆ-ում չի օգտագործվել պողպատաձուլական գոր-
ծարանների հզորության 37 տոկոսը, իսկ 1960 թ. վերջին օգտագործվել է

պողպատաձուլական արդյունաբերության արտադրական հզորության 50 տոկոսից էլ պակաս մասը։ ԱՄՆ-ի դերը հետզհետե փոքրանում է։

Հակառակ դրան Սովետական Միության տնտեսական հզորությունը տարեցտարի ավելի է աճում։ 1959—1962 թթ. երկրի արդյունաբերության համախառն արտադրանքը յոթնամյա պլանով նախատեսված 39-ի փոխարեն աճեց 45 տոկոսով։ Այդ չորս տարիներին պլանից դուրս արտադրվել է 28 մլրդ ռուբլու արդյունաբերական արտադրանք։ ՍՍՌՄ-ի արդյունաբերության զարգացման այս բարձր տեմպերը հնարավորություն կտան կարճ ժամանակամիջոցում գերազանցել ԱՄՆ-ի արտադրության զարգացման մակարդակը։

Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների ձեռք բերած խոշոր նվաճումները փայլուն հեռանկարներ են բացում ամբողջ սոցիալիստական սիստեմի էկոնոմիկայի հետագա զարգացման համար։ Սոցիալիստական լագերի արդյունաբերական արտադրությունը 1959—1965 թթ. կավելանա մոտ 2,3 անգամ։ Մոտակա 10 տարիների ընթացքում ՍՍՌՄ-ի արդյունաբերական արտադրանքի ծավալը կմեծանա մոտ 2,5 անգամ, իսկ 20 տարվա ընթացքում՝ մոտ 6 անգամ, շատ հեռու թողնելով ԱՄՆ-ի ներկա արտադրության ընդհանուր ծավալը։ Գյուղատնտեսական արտադրության մթերքների ընդհանուր ծավալն առաջին տասնամյակում կմեծանա մոտ 2,5, իսկ 20 տարում՝ 3,5 անգամ։ Արդեն առաջին տասնամյակում ՍՍՌՄ-ը բնակչության մեկ շնչին ընկնող հիմնական գյուղատնտեսական մթերքների արտադրությամբ կգերազանցի ԱՄՆ-ին։

***

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ երկրների էկոնոմիկայի հետագա զարգացման շահերը պահանջում են, ինչպես նշված է կոմունիստական և բանվորական պարտիաների 1960 թվականի Մոսկվայի խորհրդակցության Հայտարարության մեջ՝ «Կամավորության, փոխադարձ շահավետության և գիտա-տեխնիկական համաշխարհային մակարդակի ըստ ամենայնի բարձրացման հիման վրա սոցիալիստական սիստեմի շրջանակներում ժողովրդատնտեսական պլանների կոորդինացման, արտադրության մասնագիտացման և կոոպերացման միջոցով շարունակ կատարելագործել աշխատանքի միջազգային բաժանման սիստեմը» (էջ 23)։

Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման կատարելագործումն այն կարևորագույն գործոններից է, որը մեծ չափով նպաստում է հաջողությամբ ստեղծելու կոմունիզմի նյութատեխնիկական բազան, հնարավորություն ընձեռում սոցիալիստական սիստեմի բոլոր ժողովուրդներին այս կամ այն չափով միաժամանակ անցնելու կոմունիզմին։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի մեծագույն նվաճումները բարերար ազդեցություն են թողնում համաշխարհային հասարակական զարգացման ընթացքի, կապիտալիստական երկրների ժողովուրդների պայքարի վրա։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմն իր օրինակի ուժով հեղափոխում է կապիտալիստական երկրների աշխատավորների գիտակցությունը, ոգեշնչում նրանց՝ կապիտալիզմի դեմ մղվող իրենց արդար պայքարում։

---

## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ ՈՒՂԻՈՎ

Սովետական հերոս ժողովուրդը, ընթանալով կոմունիզմի նյութական-տեխնիկական բազայի կառուցման ճանապարհով, թևակոխել է յոթնամյակի հինգերորդ տարին։

Աննախընթաց հաջողությունների է հասել մեր հայրենիքը։ Բավական է միայն նշել, որ ցեմենտի և ածխի արդյունաբերության բնագավառներում մենք զգալիորեն գերազանցեցինք ողջ կապիտալիստական աշխարհին, այդ թվում նաև ԱՄՆ-ին։ Անցյալ տարվա երրորդ եռամսյակում մեր երկիրն արտադրեց ավելի շատ պողպատ, քան Ամերիկայի Միացյալ Նահանգները։ Ընթացիկ տարում մենք կարտադրենք մոտ 80 մլն. տոննա պողպատ։

Մեր բազմազգ հայրենիքի փառավոր հաղթանակներում իր լուման է մուծել նաև Հայաստանի աշխատավորությունը։ 1962 թվականին մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները համախառն արտադրանքի պլանը կատարեցին 102,5 տոկոսով։ 1961 թվականի համեմատությամբ արտադրանքի թողարկումն ավելացավ 8,3 տոկոսով։ Դրա առյուծի բաժինը տվել են ժողտնտխորհի ձեռնարկությունները, որոնք 1962 թվականի պլանները կատարեցին 102,5 տոկոսով։

Գերակատարված են նաև մյուս տեխնիկական տնտեսական ցուցանիշները։ 3,1 տոկոսով գերակատարված է աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը, ինքնարժեքի իջեցման շնորհիվ առաջացած խնայողության գումարը հասնում է մի քանի միլիոն ռուբլու։

Քանակական այս խոշոր նվաճումների հետ մեկտեղ տեղի է ունեցել հետաքրքրական որակական-ստրուկտուրային տեղաշարժ։ Ռեսպուբլիկայի բյուջեն, միայն արտապլանային կուտակումների հաշվին, լրացուցիչ ստացավ ավելի քան 5 միլիոն ռուբլի։

Բնական գազի մուտքը ռեսպուբլիկա հեղաշրջում է առաջացրել ո՛չ միայն մեր ազգաբնակչության կենցաղում ու կյանքում, այլև վիթխարի տեղաշարժ է կատարել արդյունաբերության, կուլտուրայի և տեխնիկական առաջընթացի, նրա ստրուկտուրայի բարեփոխման ասպարեզում, ինքնարժեքի իջեցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, էլեկտրաէներգիայի խնայողության, արտադրությունը ոչ էներգատար ռելսերի փոխադրելու բնագավառներում։

Այս տարի մենք շահագործման ենք հանձնում Ս. Մ. Կիրովի անվան գործարանի ացետիլենի արտադրության կոմպլեքսը։ 1964—1965 թվականներին, երբ լրովին կավարտվի ու գործող ձեռնարկությունների շարքը կմտնի այդ

կոմպլեքսը, մենք կունենանք ացետիլենի ամենախոշոր բազան՝ ողջ Սովետական Միությունում։ Այն զարկ կտա այնպիսի անհրաժեշտ նյութերի արտադրությանը, ինչպիսիք են՝ սինթետիկ կաուչուկը, արհեստական ու սինթետիկ մանրաթելերը, պլաստիկ մասսաներն ու խեժերը, թունավոր քիմիկատներն ու հիրբիդները։ Իսկ սրանք էլ, իրենց հերթին, հնարավորություն կտան ստեղծելու արհեստական հումք արտադրող և վերամշակող՝ մանվածքային, գործվածքային, տրիկոտաժի ու կարի ձեռնարկություններ, ռետինե-տեխնիկական իրերի, արհեստական կաշվի ու մուշտակների արտադրության ձեռնարկություններ, կստեղծվեն կոշիկի հսկայական ֆաբրիկաներ, պլաստիկ մասսաներից դետալներ շտամպող գործարաններ։ Նույն բնական գազից Կիրովականի քիմիական կոմբինատում կարտադրվի կարբամիդ (միզանյութ), գոյություն ունեցող ամոնիակի արտադրությունը կաշխատի բնական գազի բազայի վրա և այն 2,5—3 անգամ կընդարձակվի։

Ամենից առաջ այս միջոցառումը մեզ հնարավորություն կտա (կառուցվող ջերմաէլեկտրակայանի արտադրության հետ մեկտեղ) տարեկան խնայելու առնվազն 500 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և 250 միլիոն խորանարդ մետր Սևանի ջուր։

Երկրորդ՝ մելամինի առկայության պայմաններում կարբամիդը, որի արտադրությունը տարեկան կկազմի 90—95 հազար տոննա, հնարավորություն կտա ստեղծելու պլաստիկ մասսաների արտադրության երկրորդ խոշոր բազան մեր ռեսպուբլիկայում։

Վերջապես գազի առկայությունը լայն հնարավորություններ ստեղծեց գործարանա-ֆաբրիկային կաթսայատներն ու մի շարք տեխնոլոգիկ ագրեգատներ ու պրոցեսներ կարծր ու հեղուկ վառելանյութից փոխադրել գազի։

Անսահմանափակ են բնական գազի (մեթանի) կիրառման և օգտագործման ասպարեզները։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության խորհուրդը պլանավորում է այն օգտագործել արդյունաբերության այլ ճյուղերում։

Խոշոր տեղաշարժ է կատարված նաև էլեկտրոնիկայի բնագավառում, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, ռադիոէլեկտրոնիկայի, կիսահաղորդիչների կիրառման ու մի շարք այլ ասպարեզներում։

Զգալի հաջողություններ են ձեռք բերվել նոր տիպի կոնստրուկցիաների հաստոցներ թողարկելու գործում։ Լուսավանի հաստոցաշինական գործարանի ներտաշ հաստոցներն իրենց արտադրական բարձր հատկություններով արդեն գովասանքի են արժանացել ամբողջ Սովետական Միությունում։ Լավ անուն են վաստակել նաև Լենինականի դազգահաշինական գործարանի արտադրած շաղափող հաստոցները։ Մեր ռեսպուբլիկայի նորագույն տեխնիկայի նվաճումներից է Կիրովականում արտադրվող ճշգրիտ հաստոցների թողարկումը, որը հետագայում է՛լ ավելի է զարգանալու։ Մենք թողարկում ենք մի քանի տասնյակ տիպի ու սիստեմի կոնտրոլ չափիչ սարքեր ու գործիքներ։ Դրանցից մի քանիսը իրենց տիպով միակն են Սովետական Միությունում։

Ձնայած կապիտալ շինարարության պլանների թերակատարման, ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերը հարստացան այնպիսի ձեռնարկություններով, ինչպիսիք են՝ Կիրովականի մետաքսաթելի գործարանը, Երևանի պոլիվինիլացետատ գործարանի ացետիլ-ցելյուլոզի արտադրական խմբավորումը, Արարատի ցեմենտի շիֆերի կոմբինատի 4-րդ տեխնոլոգիական գիծը, Այրումի կոնսերվի գործարանը, Լուսավանի գործիքաշինական գործարանի



չուգունի ձուլվածքների արտադրական կորպուսները, հայէլեկտրագործարանի համանուն ցեխը, Երևանի սարքաշինական գործարանի հսկայական կորպուսը, Կիրովականի մելամինի արտադրության ողջ կոմպլեքսը (որը միակն է Սովետական Միությունում) և տասնյակ այլ ցեխեր ու տեխնոլոգիական գծեր։

Հաշվետու տարում ժողտնտխորհի ձեռնարկությունները յուրացրել են ավելի քան հարյուր նոր տեսակի արտադրանքներ, այդ թվում՝ էլեկտրական մեքենաներ, սարքեր, գործիքներ, քիմիկատներ, ժողովրդական սպառման ապրանքներ ու առարկաներ։

Հաջողությունների մյուս գրավականը նոր տեխնիկայի ներդրումն է, պրոցեսների ու հոսքային գծերի ավտոմատացումը, աշխատատար պրոցեսների մեքենայացումը, ձեռքի աշխատանքը խսպառ վերացնելու ձգտումը։

Ճիշտ է, նոր տեխնիկայի գծով նախատեսված 406 միջոցառումներից ներդրվել են միայն 359-ը։ Բայց այդ նույնպես դրական արդյունք է տվել, դրա շնորհիվ ստացվել է 7500 հազար ռուբլու պայմանական տնտեսական օգուտ։

1962 թվականին ժողտնտխորհի ձեռնարկություններում ստեղծվել են 32 կոմպլեքս-մեքենայացման ու ավտոմատացման լրացուցիչ տեղամասեր, 29 հոսքային-կոնվեյեր գծեր. արդյունաբերական ձեռնարկություններում տեղադրվել են 890 բարձր արտադրողական հատուկ ագրեգատներ, մեքենաներ, սարքեր ու դազգահներ։

Այս ասպարեզում լավ արդյունքի են հասել հատկապես փայտամշակման, սննդարդյունաբերության, թեթև արդյունաբերության, կաթի ու մսի և դազգահաշինական արդյունաբերությունների ճյուղային վարչությունները։

Լենինի անվան հայէլեկտրագործարանի չուգունի ձուլման ցեխի կոմպլեքս մեքենայացման պայմանական օգուտը հասնում է 700 հազար ռուբլու։

✓ Ձուլվածքների կոմպլեքս մեքենայացման աշխատանքները Ձերժինսկու անվան գործարանում տարեկան կտան 150 հազար ռուբլու խնայողություն։ Գործվածքների սպիտակեցման և ձևավորման օպերացիաների հոսքային գծի ավտոմատացման շնորհիվ Լենինականի տեքստիլ կոմբինատը տարեկան կտնտեսի 60 հազար ռուբլի, զգալիորեն կլավանա արտադրանքի որակը։ Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանը ներդրել է մի քայլող կոնվեյեր, որի օգնությամբ այնտեղ կատարվում են մոնտաժային աշխատանքներ։ Կիրովականի մսի կոմբինատի մի շարք աշխատանքների կոնվեյերացմամբ տարեկան կտնտեսվի ավելի քան 46 հազար ռուբլի։ Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատում ավտոմատացվեցին ջարդման-մանրացման բաժնի աշխատանքները, տարեկան օգուտը կազմեց 82 հազ. ռուբլի։

Մեր մեքենաշինական, դազգահաշինական, սարքաշինական, էլեկտրատեխնիկական ձեռնարկությունները յուրացրել ու բաց են թողնում տասնյակ նոր տիպի համանուն արտադրանքներ. այդ թվում՝ յուղային տրանսֆորմատորներ՝ 63, 100 և 160 կիլովոլտ ամպեր կարողությամբ, փոքր գաբարիտների ասինխրոնային էլեկտրաշարժիչներ, զանազան լագոմիտներ, միլիվոլտմետրեր, МЭВ—10/1—166, 10/2,5—160 ու այլ մեխանիզմներ և այլն։

***

ԻՆՉՊԵՍ տեսանք, անցյալ տնտեսական տարում ձեռք բերված հաջողությունները բավականին մեծ են. սակայն, ցավոք սրտի, պետք է նշել, որ

ժողտնտխորհի սիստեմում կան մի շարք լուրջ թերություններ, որոնց շուտափույթ լիկվիդացումը հրամայական պահանջ է մեզ համար։

Անցյալ տարի 31 արտադրական ձեռնարկություններ (կամ ժողտնտխորհի ձեռնարկությունների 10,2 տոկոսը) չեն կատարել համախառն արտադրանքի պլանները և երկրին չեն տվել մոտ 11.783 հազար ռուբլու արտադրանք։

Շատ ձեռնարկությունների ղեկավարներ, ընկնելով համախառն արտադրանքի ցուցանիշների հետևից, չեն կատարել ասորտիմենտային առաջադրանքները. հատկապես վատ են աշխատել Երևանի կաբելի, լուսատեխնիկական, գեղարվեստական ժամացույցների, մեխանիկական գործարաններն ու մի շարք այլ ձեռնարկություններ։ Սննդարդյունաբերության վարչության ձեռնարկություններում ասորտիմենտային պլանը կատարված է միայն 55, թեթև արդյունաբերության՝ 53, շինանյութերի արդյունաբերության՝ 55 տոկոսով և այլն։ Իրերի նման վիճակը հանգեցրեց այն բանին, որ ժողտնտխորհը, ընդհանուր առմամբ, ասորտիմենտային պլանը կատարեց միայն 60 տոկոսով։

Մոտ 63 ձեռնարկություններ չեն կատարել օգուտների ու կուտակումների պլանները։ 70 ձեռնարկություններ գրեթե չեն կատարել ինքնարժեքի իջեցման առաջադրանքները և տասնյակ ձեռնարկություններ՝ աշխատանքի արտադրողականության պլանները։ Գունավոր մետալուրգիայի և լեռնահանքային վարչության ձեռնարկությունները աշխատանքի արտադրողականության առաջադրանքը, ընդհանուր առմամբ, կատարել են միայն 99,3 տոկոսով։

Մի շարք ձեռնարկություններ՝ հատկապես թեթև ու սննդի արդյունաբերության ճյուղային վարչությունների սիստեմներում, թողարկել են ցածրորակ արտադրանք, որոնցից սպառողը հրաժարվում է (կոշկեղեն, հագուստեղեն, հանքային ջրեր, կորդ, լիմոնադ և այլն)։

Ջգալիորեն թերակատարվել է կապիտալ ներդրումների պլանը։ Անցյալ տարի շահագործման չհանձնվեցին՝ մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ, այդ թվում Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատը։ Բանը նրանում է, որ վերջինիս համար արդեն պլան է իջեցված և այն առաջին եռամսյակում պետք է պղնձի կոնցենտրատ տա Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատին։ Չէ՞ որ այդ կարող է ազդել պղնձի ձուլման պլանների կատարողականի վրա, որի հետևանքով Երևանի կաբելի գործարանը չի ստանա անհրաժեշտ քանակի պղինձ։

***

ԱՅՍ տարի միայն ժողովրդական տնտեսության խորհրդի գծով, 1962 թվականի համեմատությամբ, արտադրանքն ավելանալու է 11,2 տոկոսով։ Ելնելով պարտիայի Կենտրոնական կոմիտեի նոյեմբերյան պլենումի որոշումների ոգուց, ժողտնտխորհը և պետպլանը պլանավորել են արդյունաբերության առանձին ճյուղերի ավելի բուռն վերելք։ Այսպես՝ քիմիական արդյունաբերությունը 1963 թվականին ռեսպուբլիկայում աճելու է 40, շինանյութերի արդյունաբերությունը՝ 13,1, մեքենաշինությունը՝ 14,2 տոկոսով։ Ուրախալի է նշել, որ կարևորագույն արտադրանքների գծով այդ աճն ավելի ակնբախ է։ Այդ են ցույց տալիս ստորև բերված համապատասխան թվերը. սինթետիկ խեժի արտադրությունը կավելանա՝ 327, շարժական էլեկտրակայաններինը՝ 45, ավտոպահեստամասերինն ու նորմալներինը 35-ից 86, կերամիկական խողովակ-



ներինը՝ 221 տոկոսով. սննդարդյունաբերության մեջ կենդանական յուղի արտադրությունը կավելանա 26, պահածոներինը՝ 34, գինիներինը՝ 20, հանքային ջրերինը՝ 20 տոկոսով և այլն։

Աշխատանքի արտադրողականությունը, 1962 թվականի համեմատությամբ, կբարձրանա 4,5 տոկոսի սահմաններում, այդ թվում՝ քիմիական արդյունաբերության մեջ՝ 16,5 և մեքենաշինության մեջ՝ 6 տոկոսով։

Կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը 1963 թվականին կկազմի ավելի քան 108 միլիոն ռուբլի, որը նախորդ տարվա համեմատությամբ 18 տոկոսով ավելի է, ռադիոէլեկտրոնիկայի ձեռնարկությունների կապիտալ ներդրումներն ավելանալու են 22,2, մեքենաշինությանը՝ 20,5 տոկոսով, այդ թվում ավտոմոբիլային արդյունաբերության ենթաճյուղինը՝ 250 տոկոսով։ Կապիտալ ներդրումների՝ 25-ից 55 տոկոսի աճ է նախատեսվում՝ հացաբուլկեղենի, մսի ու կաթի, ձկան, փայտամշակման, թեթև, շինանյութերի արդյունաբերության բնագավառում և այլ ճյուղերում։

Այս պատվավոր, բայց տակավին ոչ դյուրին հարցերի լուծումը ժողտընտխորհի, նրա ճյուղային վարչությունների, հիմնարկների ու ձեռնարկությունների կոլեկտիվներից ու տնտեսվարներից պահանջում է ու կպահանջի մեծ կազմակերպվածություն, քրտնաջան աշխատանք, ունակություն և, որ գլխավորն է՝ բազմահազար կոլեկտիվի ուժերի մոբիլիզացում։

Կան նաև մի շարք հարցեր, որոնց լուծմամբ պետք է զբաղվի ո՛չ միայն ժողովրդական տնտեսության խորհուրդը, այլև մի շարք գերատեսչություններ ու հիմնարկներ։

Անցյալ տնտեսական տարում շինարարները շահագործման չհանձնեցին բազմաթիվ ձեռնարկություններ, առանձին կառույցներ ու ցեխեր։ Նման դրությունն այլևս հանդուրժել չի կարելի։ Եթե ռեսպուբլիկայի շինարարության մինիստրությունը ընթացիկ տարվա առաջին եռամսյակում շահագործման չհանձնի Ագարակի պղնձա-մոլիբդենային կոմբինատի ողջ կոմպլեքսը, ապա առանց չափազանցության կարելի է ասել, որ գունավոր մետալուրգիայի վարչության տարեկան պլանների կատարումը վտանգի տակ է։ Անհրաժեշտ է, որ մեր շինարարները ամեն ջանք գործադրեն Ագարակի կոմբինատը շուտափույթ շահագործման հանձնելու համար։

Մոտենում է գյուղատնտեսական մթերքների գնումների և վերամշակման եռուն շրջանը։ Կձախողվի այդ գործը, եթե շինարարներն արագ շահագործման չհանձնեն կաթի ու պանրի գործարանները՝ Ցանըղում, Հրազդանում, Ալավերդում, Ազիզբեկովում. ծխախոտի պահեստները՝ 12 շրջաններում ու առաջին հերթին՝ Թալինում, Մարտունիում, Բասարգեչարում, Սևանում և այլուր, ծխախոտի ֆերմենտացիոն գործարանը՝ Ուզունթալայում. մի քանի գինու գործարաններ ու մթերման կայաններ՝ մոտ 40000 տոննա խաղողի վերամշակման համար. Հոկտեմբերյանի կոնյակի գործարանը, սպիրտի պահպանման և հնացման մառանը և շատ այլ ձեռնարկություններ ու ցեխեր։

Ինչպես վերը նշեցինք, ընթացիկ տարում պլանավորված է 11,2 տոկոսով արտադրանքի և մոտ 4,5 տոկոսով աշխատանքի արտադրողականության աճ։ Արտադրանքի աճը տեղի է ունենալու ի հաշիվ նոր գործարկվող արդյունաբերական ձեռնարկությունների։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման, տեխնիկական-տնտեսական մյուս բոլոր ցուցանիշների բարելավման և նոր տեխնիկայի ներ-

դրման պլանները կատարելու բնագավառում շատ անելիքներ կան։ Պլանով նախատեսված է ընթացիկ տարում ներդնել 433 միջոցառում—9500 հազար ռուբլու պայմանական օգուտով։

Այդ միջոցառումներից 106-ը ներդրվելու են արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման բնագավառում։ Այդ հնարավորություն կտա արտադրության բազմաթիվ ճյուղերում ֆիզիկական ծանր աշխատանքը փոխարինել ավելի թեթև աշխատանքով, կատարելագործել արտադրանքի տեխնոլոգիան, բարձրացնել նրա որակը։ Իննսունվեց միջոցառումներ ներդրվելու են հնացած հաստոցների, սարքերի, գործիքների փոխարեն ժամանակակից հաստոցներ, սարքեր, գործիքներ և այլն թողարկելու համար։

Ժողտնտխորհի ձեռնարկություններում այս տարի կստեղծվեն 55 կոմպլեքս մեքենայացման և ավտոմատացման հանգույցներ, 48 հոսքային-կոնվեյեր գծեր։

Հայկական ՍՍՌ գիտությունների ակադեմիայի օրգանական քիմիայի ինստիտուտը զբաղվում է մի չափազանց կարևոր հարցով՝ պնևմոտրանսպորտով (խտացրած օդի օգնությամբ մանրացրած կարծր նյութերի տեղափոխություն)։ Պնևմոտրանսպորտը և նրա իդեան ավելի քան հարյուր տարի է, ինչ գոյություն ունեն։ Բայց ո՞րն է նորի այն առավելությունը, որի համար աշխատանքների ղեկավար Ա. Մ. Գասպարյանը պատենտ է ստացել (որպես գյուտարար)։ Մինչ այդ գոյություն ունեցող ապարատուրայի միջոցով՝ 1 խորանարդ (նորմալ-խորանարդ) մետր օդը տեղափոխում էր 6—7 մինչև 10—12 կգ կարծր նյութ։ Ընկ. Գասպարյանին հաջողվել է ստեղծել չափազանց պարզ մի ապարատ, որի միջոցով մեկ նորմալ խորանարդ մետր օդը կարողանում է տեղափոխել 200—250 կգ կարծր նյութ, փոշի։ Դրա շնորհիվ համապատասխան քանակությամբ նյութ, ժամանակ, էներգիա է կրճատվում։ Ամենակարևորն այստեղ շրջապատի հիգիենիկ վիճակն է։ Սովորական ապարատներն իրենց շուրջն ստեղծում են փոշու հսկայական քուլաներ, որոնց դեմ պայքարելու, նրանց որսալու համար հսկայական ծախսեր են արվում։ Գասպարյանի ստեղծած ապարատուրան զերծ է այս թերություններից։ Այն արդեն մոնտաժվում է Քանաքեռի ալյումինի գործարանում և շուտով կգործարկվի։ Այդ տրանսպորտով պահեստից կավահողը կտեղափոխվի էլեկտրոլիզի ցեխը և կբաժանվի ըստ առանձին վաննաների։ Մեծ հաջողությամբ այն կարելի կլինի կիրառել ցեմենտ, կիր, պեմզա և այլ շինանյութեր տեղափոխելու համար, քիմիական բազմապիսի կարծր նյութեր, փոշի տեղափոխելու նպատակով։ Խոշոր արդյունք է տալիս այն հացահատիկների տեղափոխման բնագավառում՝ հատկապես էլեվատորների տեխնոլոգիական պրոցեսներում։

Հայտնի է, որ լեռնահանքային արդյունաբերության մեջ հանքերի մշակման բաց եղանակը համարվում է ամենաառաջավորը։ Այն այժմ լայնորեն կիրառվում է մեր ռեսպուբլիկայում։ Այս տարի այդ աշխատանքները կշարունակվեն բազմապատկված թափով ու մասշտաբներով։ 1962 թվականին այդ եղանակով վերամշակված է 3200 հազար խորանարդ մետր հանքանյութ. 1963 թվականին այն կհասնի 4350 հազար խորանարդ մետրի։ Քաջարանի պղնձամոլիբդենային հանքերում լրիվին պետք է ավտոմատացվի լեռնային տեսակների մանրացման պրոցեսը։

Վերջերս շահագործման հանձնվեց Լուսավանի գործիքաշինական գործարանի ձուլվածքների արտադրությունը։ Այս տարի նախատեսված է կոմպլեքս-



մեքենայացման ենթարկել ձուլածոների պրոցեսը։ Կոմպլեքս-մեքենայացման պետք է ենթարկվեն Սպիտակի շաքարի գործարանի ճակնդեղի պահեստները, կահույքի գործարանների չորանոցների բեռնավորման-բեռնաթափման աշխատանքները, Երևանի նուրբ բրդեղենի ֆաբրիկայի ծանր աշխատատար պրոցեսները։

Երևանի ավտոդողերի գործարանում պետք է ավտոմատացվի նյութերի կշռման և առաքման պրոցեսը՝ ռետինախառնիչների բարդ հանգույցում։

Արդյունաբերողների, գիտահետազոտական ինստիտուտների գծով աշխատողների և ինքնուրույն կոնստրուկտիվ բյուրոների նախագծողների համատեղ ջանքերով պետք է մշակվեն՝ կոշիկների 100 նոր մոդելներ, տրիկոտաժի 120, կարի արտադրանքի 150 նոր տեսակներ։

Ս. Մ. Կիրովի անվան գործարանն այս տարի պետք է արտադրի հերբեցիդի նոր տեսակ՝ կրոտիլին նյութը, որը հացահատիկային կուլտուրաների մոլախոտերի դեմ պայքարելու լավագույն միջոց է։ Գործարանը կթողարկի ամրացուցիչ 3—АР՝ նոր մեթոդով չուգունի ձուլածոներ արտադրելու համար։

Վ. Ի. Լենինի անվան հայէլեկտրագործարանը կարտադրի ДАЗО սխեմի խոշոր էլեկտրաշարժիչներ, որոնք կունենան մոտ 25 տոննա քաշ։ Այստեղ կարտադրվեն մի քանի տեսակի ու տիպի նոր յուղային տրանսֆորմատորներ՝ 100—160 կվտ կարողությամբ։ Լենինականի «Ստրոմմաշինան» կթողարկի СМ—914 նոր կարևոր մեքենա՝ ճանապարհային եզրաքարեր մշակելու համար։

Այս տարի առաջին անգամ կթողարկվեն երևանյան դաշնամուրներ և Լենինականի «Շիրակ» տնային-կենցաղային սառնարանների կոմպրեսորներ։ Կթողարկվեն տասնյակ նոր տիպի սարքեր, գործիքներ, ղազգահներ, կտորեղեն, գորգեր և այլն։

Դիլիջանում և Իջևանում կառուցվում են տեխնիկական առաջադիմության համար կարևոր նշանակություն ունեցող արդյունաբերական ձեռնարկություններ։ Դրանց լրիվ կարողությամբ գործարկելուց հետո կաշխատեն տասը հազար մարդ։ Այդ գործարանների թողարկած արտադրանքը հսկայական նշանակություն կունենա ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացման գործում։ Որոշակի աշխատանք է տարվելու ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության խորհրդի արդյունաբերական ձեռնարկություններում արտադրության մասնագիտացման և կոոպերացման ուղղությամբ։ Այն վիթխարի հնարավորություններ կտա է՛լ ավելի բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, բարելավելու արտադրանքի որակը, առավել ռացիոնալ կազմակերպելու աշխատանքը։ Փորձը ցույց է տալիս, որ արտադրության մասնագիտացման ու կոոպերացման շնորհիվ լայն ասպարեզ է բացվում մեքենաների դետալների պատրաստումը հոսքայինի փոխադրելու, կոմպլեքսային մեքենայացում և ավտոմատացում արմատավորելու համար։

Ընթացիկ տարում մեծ ու պատվավոր խնդիրներ են դրված մեր առջև, որոնց լուծումը կապված է որոշակի դժվարությունների հետ։ Սակայն մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի նոյեմբերյան պլենումը նշել է այդ դժվարությունները հաղթահարելու ուղիները և ռեսպուբլիկայի արդյունաբերության բնագավառի աշխատողներն իրենց բոլոր ջանքերը կգործադրեն՝ պատվով կատարելու յոթնամյակի հինգերորդ տարվա առաջադրանքները։

Ս. ԹԵՎՈՍՅԱՆ

Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի նախագահի տեղակալ

# ՄԱՐՏՈՒՆԵՑԻՆԵՐԸ ԾՈՒԱՋ ԵՆ ԸՆԹԱՆՈՒՄ

ՍՈՎԵՏԱԿԱՆ Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի նոյեմբերյան պլենումն անհրաժեշտ համարեց պարտիական ղեկավար օրգանները վարից վեր վերակազմել, դրա հիմքում դնելով արտադրական սկզբունքը, քանի որ մեր ժամանակաշրջանում կոմունիստական շինարարության մեջ գլխավորը արտադրությունն է, նյութական և հոգևոր բարիքների առատության ստեղծումը: Պլենումը նշեց, որ կենտրոնացնելով ուշադրությունը արտադրության հարցերի վրա, պարտիական կազմակերպությունները հնարավորություն կունենան ավելի կոնկրետ զբաղվելու պետական առաջադրանքների կատարման հարցերով:

Գյուղատնտեսության ղեկավարումը վերակազմելիս ստեղծվեց Մարտունու խոշորացված շրջանը, որի արտադրական վարչությունը ներկայումս միավորում է 24 կոլտնտեսություն ու սովխոզ: Նրանց օգտավետ հողերի ընդհանուր տարածությունը մոտ 90 հազար հեկտար է, որից վարելահող՝ 32 հազար, մարգագետիններ՝ 45 հազար հեկտար և այլն: Արտադրական վարչության տնտեսություններում մշակում են հացահատիկ, կերի կուլտուրաներ, իսկ վերջին ժամանակներս զարգանում են ծխախոտագործությունն ու այգեգործությունը:

Երեք ամիս է, ինչ ստեղծվել և գործում է Մարտունու գյուղական արտադրական պարտիական կոմիտեն: Պարտիական կազմակերպության հիմնադիր կոնֆերանսում կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության պետ, ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի մասնակից ընկ. Հ. Թարջումանյանն իր զեկուցման մեջ խոսելով գյուղատնտեսական մթերքների արտադրության բնագավառում կոլտնտեսությունների ու սովխոզների անցյալ տարվա ձեռք բերած որոշակի հաջողությունների մասին, միաժամանակ նշեց այն ռեզերվները, որոնց խելացի օգտագործումը հնարավորություն կտա հաջողությամբ լուծելու յոթնամյակի առաջադրանքները:

Մարտունու գյուղական արտադրական պարտկոմը (քարտուղար Հ. Սահակյան) հաշվի առնելով պարտիայի այն ցուցումը, որ գործի հաջողությունը վճռում են հմուտ և բանիմաց կադրերը, իր բյուրոյի անդրանիկ նիստում քննության է առել կադրերի ընտրության և տեղաբաշխման հարցը: Պարտիական կոմիտեի և արտադրական վարչության ապարատները կոմպլեկտավորվեցին հմուտ և ձեռներեց, արտադրությունը լավ հասկացող մարդկանցով, ուշի-ուշով ընտրվեցին նաև տնտեսությունների ղեկավար աշխատողները, հաշվի առնելով նրանց կազմակերպական ունակություններն ու գիտելիքները. 24 կոլտնտեսությունների նախագահներից և սովխոզների դիրեկտորներից 17-ը ունեն բարձրագույն և միջնակարգ կրթություն, այդ թվում 13-ը՝ մասնագիտական:



Մեր օրերում, կոմունիզմի կառուցման ներկա ժամանակաշրջանում, գյուղատնտեսության վերելքի շղթայի գլխավոր օղակը գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և հանրային անասնաբուծության մթերատվության բարձրացումն է: Այդ գլխավոր օղակից էլ կառչել են մարտունեցիները:

Պարտիական կոմիտեն մտահոգվելով գյուղատնտեսության արտադրության ղեկավարման հարցերով, հիմնականում զբաղվում է կազմակերպական-գաղափարական գործով՝ կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության, առաջավոր փորձի ուսումնասիրման ու արմատավորման, կատարման ստուգման, աշխատանքի կոմունիստական ձևերի զարգացման, մասսաների դաստիարակության և այլ աշխատանքներով: Իր գործունեությամբ նա ոչ թե փոխարինում է արտադրական վարչությանը, նրա մասնագետներին, այլ բարձրացնում նրանց հեղինակությունը և պատասխանատվությունը՝ գյուղատնտեսության վերելքն ապահովելու համար: Բայց թե՛ պարտիական կոմիտեի, թե՛ արտադրական վարչության նպատակը մեկն է՝ մոբիլիզացնել բոլոր ուժերը, խելացի օգտագործել եղած ռեզերվները և դրանով իսկ բարձրացնել սոցիալիստական դաշտերի բերքատվությունը, ավելացնել հանրային հոտի մթերատվությունը:

Պարտիական կոմիտեն, արտադրական վարչությունն իրենց աշխատանքի ծանրությունը փոխադրել են կոլտնտեսություն, սովխոզ, բրիգադա, ֆերմա: Կոմիտեի քարտուղարը, արտադրական վարչության պետը, կոմիտեի ու վարչության աշխատակիցներն իրենց աշխատանքային օրվա մեծ մասն անց են կացնում կոլտնտեսություններում ու սովխոզներում, գործնականորեն օգնում տեղի ընկերներին՝ բարձրացնելու արտադրությունը:

## II

ԱՐՏԱԴՐԱԿԱՆ վարչության կոլտնտեսություններն ու սովխոզներն անցյալ տարի արտադրեցին պլանից ավելի տասնմեկ հազար ցենտներ հացահատիկ, նախորդ տարվա համեմատությամբ զգալի չափով ավելացրին անասնաբուծական մթերքների արտադրությունը և հաջողությամբ կատարեցին կաթի, մսի, բրդի, ձվի արտադրության ու վաճառքի պետական առաջադրանքները. կուտակեցին մեկ և կես անգամ ավելի շատ խոտ և պատրաստեցին երկու անգամ ավելի շատ սիլոս:

Հիանալի արդյունքների հասան բազմաթիվ կոլտնտեսություններ, սովխոզներ, դաշտավարական բրիգադներ և անասնաբուծական ֆերմաներ: Վարդենիկի կոլտնտեսությունը, որի նախագահ Սաճաստր Խաչատրյանը համեստ և հմուտ տնտեսվար է, անցյալ տարի յուրաքանչյուր հեկտարից ամբարել է մոտ 19 ցենտներ հացահատիկ, ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից ստացել 24 ցենտներ բերք. Նախորդ տարվա համեմատությամբ այստեղ կուտակել են մեկ ու կես անգամ ավելի շատ կեր և զգալիորեն ավելացրել անասնաբուծական մթերքների արտադրությունը: Կոլտնտեսությունը պատվով է կատարել պետական բոլոր առաջադրանքները: Վարդենիկցիներն իրենց ազնիվ աշխատանքով արժեքի եկամուտը հասցրել են ինն հարյուր հազար ռուբլու և յուրաքանչյուր աշխօրի դիմաց ստացել 3 ռուբլի 30 կոպեկ, այսինքն այնքան, որքան Արարատյան դաշտավայրի առաջավոր կոլտնտեսությունների անդամները:

Կամոյի սովխոզի նախրապան Միսակ Շահինյանը տարվա ընթացքում անկորուստ աճեցրել ու պահպանել է իր խնամքին հանձնված հիսունութ հորթը: Լիճքի փորձացուցադրական տնտեսության ծխախոտագործները բերքատվության առաջադրանքը կատարել են 153 տոկոսով: Սարուխանի կոլտնտեսությունում Արշավիր Ենգիբարյանի օղակը իր մշակած չորս հեկտար կաղամբի ցանքատարածության ամեն մի հեկտարից միջին հաշվով ստացել է 580 ցենտներ բերք: Բերքատվության առաջադրանքները գերակատարելու համար օղակի անդամները որպես պարգև-հավելում ստացել են 1460 ռուբլի:

Այս հաջողություններն առաջին հերթին արդյունք են այն բանի, որ մարդիկ աշխատում են ազնվորեն, բարձրացել է հողագործության կուլտուրան, բարելավվել անասունների խնամքը, կոլտնտեսություններն ու սովխոզներն սկսել են մշակել այն, ինչ ավելի ձեռնտու է, ավելի արդյունավետ:

## III

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ պարտիական ղեկավարման վերակազմումը մեծ եռանդ է հարուցել գյուղատնտեսության մարզում աշխատողների շրջանում և հնարավորություն տվել նոր ձևով կազմակերպելու գործը: Յոթնամյակի հինգերորդ տարվա առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար մասսաների խորքից սկիզբ առած սոցիալիստական մրցությունը օր-օրի ծավալվելով կոլտնտեսություններում ու սովխոզներում, համաժողովրդական բնույթ է ստացել: Ամբողջ երկրով մեկ պայքարում են պարտիայի առաջադրանքը կատարելու՝ չորս միլիարդ երկու հարյուր միլիոնից չորս միլիարդ հինգ հարյուր միլիոն փութ հացահատիկ գնելու և անասնաբուծական մթերքների արտադրությունը շեշտակիորեն ավելացնելու համար: Այդ մրցության դրոշակակիրներն են Կրասնոդարի երկրամասի Ուստ-Լաբինսկի արտադրական վարչության հողագործները: Գյուղատնտեսության բոլոր աշխատողներին ուղղված նրանց կոչին մեր ռեսպուբլիկայում առաջինն արձագանքեցին Մարտունու արտադրական վարչության հողագործներն ու անասնաբույծները: Վերլուծելով իրենց գործունեության 1962 թվականի արդյունքները, նրանք պարտավորվել են յոթնամյակի հինգերորդ տարում արտադրել 217 հազար ցենտներ ամբարային հաց, որը 18,5 տոկոսով ավելի է անցյալ տարվա ստացվածից, անջրդի տարածությունների մեկ հեկտարից հավաքել 12,1 ցենտներ բերք: Նրանք պարտավորվել են անցյալ տարվա համեմատությամբ խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացնել 7 տոկոսով, որից կովերինը՝ 10, մանր եղջերավոր անասուններինը՝ 8,7, խոզերինը՝ 10,5, թռչուններինը՝ 40 տոկոսով, մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը ավելացել է 140 կիլոգրամով, մեկ ոչխարի բրդատվությունը՝ 400 գրամով: 1962 թվականի համեմատությամբ այս տարի մսի արտադրությունն ավելանալու է 24, կաթինը՝ 21,6, բրդինը՝ 30, ձվինը՝ 71,3 տոկոսով, ինչպես և պետությանը վաճառվող մթերքներն ավելացնել միս՝ 12, կաթ՝ 24,7, բուրդ՝ 32, ձու՝ 44 տոկոսով:

Ահա գյուղատնտեսական մթերքների արտադրության այս տարվա բնագիծը, որի նվաճման համար մարտունեցիները լարել են իրենց ջանքերը: Նրանք հաշվի են առել, թե ինչ միջոցներով են բարձրացնելու հացահատիկի, ծխախոտի, կերի ցանքատարածությունների բերքատվությունը, ավելացնելու անասնաբուծական մթերքների արտադրությունը:



Կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության գյուղատնտեսության առաջավորների ընդունած սոցիալիստական պարտավորության հիման վրա յուրաքանչյուր կոլտնտեսություն և սովխոզ մշակել է հացահատիկի, ծխախոտի, բանջարեղենի, մսի, կաթի, բրդի արտադրության և կեր կուտակելու կոնկրետ պլանը: Բոլորը ձգտում են մի նպատակի և համոզված ասում են.

— Անպայման կկատարենք մեր պարտավորությունը:

## IV

ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ և սովխոզներում ծավալված սոցիալիստական մրցությունը, մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը գլխավորում է արտադրական պարտիական կոմիտեն, որը ջանում է հաջողությամբ կենսագործել ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումները:

Գաղափարական աշխատանքը տնտեսական խնդիրների հաջող լուծման կարևորագույն միջոցն է, կոմունիզմի կառուցման հզոր զենքերից մեկը: Արտադրական պարտիական կոմիտեն, սկզբնական պարտիական կազմակերպություններն աշխատավորներին անդադրում պարզաբանում են ՍՄԿՊ ներքին ու արտաքին քաղաքականության հարցերը, յոթնամյակի հինգերորդ տարվա խնդիրները, սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները: Կոլտնտեսությունների ակումբներում և աչքի ընկնող վայրերում փակցված լոզունգներում, դիագրամներում, պլակատներում նշված են այն բնագծերը, որոնք այս տարի գրավելու են Մարտունու արտադրական վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները: Այստեղ պարտիական կազմակերպությունները մասսաների հետ տարվող գաղափարական աշխատանքը զուգակցում են կազմակերպչականի հետ, մասսաների սրտերում բորբոքում հայրենասիրությունը, նրանց ոտքի հանում ու մոբիլիզացնում՝ տնտեսական առաջադրանքները պատվով կատարելու համար:

Սոցիալիստական մրցության կազմակերպիչներն ու գլխավորողները կոմունիստներն են, որոնք քայլում են գյուղատնտեսության վերելքի համար պայքարողների առաջին շարքերում: Կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատող կոմունիստների բացարձակ մեծամասնությունն անմիջականորեն գործում է արտադրության մեջ, հանդես բերում ձեռներեցություն և ցույց տալիս անձնական օրինակ: Բարձր պահելով Լենինի պարտիայի անդամի վեհ կոչումը, նրանք ազնվությամբ են կատարում իրենց հայրենասիրական պարտքը: Ինչ պարտավորվել էին երեկ, այսօր պայքարում են այն կյանքում կենսագործելու համար, պրակտիկ կերպով ցույց տալով, որ կոմունիստի խոսքի և գործի միջև խզում չկա:

Կոմունիստ Վաչագան Գասպարյանը Վարդենիկի կոլտնտեսության դաշտավարական բրիգադավարներից է: Իր ղեկավարած բրիգադայի անդամների հետ նա անցյալ տարի աճեցրել է հիանալի բերք, որի շնորհիվ այժմ նրա անունը հայտնի է մեր ռեսպուբլիկայում: Այս տարի Գասպարյանը պարտավորվել է հեկտարից ստանալ 25 ցենտներ հացահատիկ, 260 ցենտներ կարտոֆիլ, 28 ցենտներ ծխախոտ:

Բերքատվության այդ մակարդակն ապահովելու համար բրիգադը կոմբինացված եղանակով սնուցել է աշնանացան ցորենի ցանքատարածությունների-

ները, օրգանական և հանքային պարարտանյութերի խառնուրդով պարարտացրել է գարնանացան կուլտուրաներին հատկացված բոլոր հողերը, ցանքը կատարում է ընտրովի և կոնդիցիոն սերմերով։ Դրանցով բրիգադան բարձր բերք ստանալու կայուն հիմք է դրել։

Լիճքի սովխոզի անասնաբուծական ֆերմայում կոմունիստ Աղվան Բաղդասարյանի բրիգադայի անդամներն օրինակելի են պահպանում իրենց հանձնրված անասունները։ Եթե անցյալ տարի բրիգադան իր խնամած կովերից (գլխաքանակն անփոփոխ է) հունվար-փետրվար ամսին միջին հաշվով օրական ստացել է 450 կիլոգրամ կաթ, ապա այս տարի՝ 790 կիլոգրամ։ Նախրում ծնված հորթերից ոչ մի կորուստ չի եղել։

Բադիկյան գյուղի սովխոզում լայն պայքար է սկսվել անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու համար։ Առաջավոր անասնապահների շարքերում է կոմունիստ կթվորուհի Արեհատ Վարդանյանը։ Հունվար-փետրվար ամիսներին իր խնամած կովերից նա ստացել է հինգ հարյուր կիլոգրամով ավելի կաթ, քան անցյալ տարի նույն ժամանակաշրջանում։

Կարևորն այն է, որ 1962 թ. սկզբի ամիսների հետ համեմատած, կաթի արտադրությունն ավելացրել են ոչ միայն հարյուրավոր կթվորուհիներ, բազմաթիվ ֆերմաներ, այլև շատ կոլտնտեսություններ և սովխոզներ։ Այս տարվա երկու ամսում, անցյալ նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, Բադիկյան գյուղի սովխոզը կաթի արտադրությունը գրեթե կրկնապատկել է, իսկ Կամո քաղաքի սովխոզն ավելացրել է 300 ցենտներով (3,7 տոկոս յուղայնությամբ), Ղարանլուղի սովխոզը՝ 273 ցենտներով։ Վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները անցյալ տարվա առաջին եռամսյակի համեմատությամբ այս տարվա նույն ժամանակամիջոցում պետությանը ավելի են վաճառել մոտ 2000 ցենտներ կաթ, 1000 ցենտներ միս և 100 հազար հատ ձու։

Մեծ ջանքեր են գործադրվում սեփական հոտի վերարտադրության հաշվին անասունների գլխաքանակն ավելացնելու համար։ Այս տարվա մարտի մեկին, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, Վարդենիկի կոլտնտեսությունում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 14 տոկոսով, իսկ մանր եղջերավորներինը՝ 19 տոկոսով. այժմ կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերման ունի մոտ տասը հազար ոչխար։ Լավ ցուցանիշներ ունի Զորագյուղի ոչխարաբուծական ֆերման (վարիչ՝ կոմունիստ Եղիազար Մանուկյան)։ Այստեղ նույն ժամանակաշրջանում մանր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 16 տոկոսով, այդ թվում մայրական կազմինը՝ 18 տոկոսով։

Կոմունիստ Գարսևան Առաքելյանն արտադրության փարոսներից է։ Նա ազնվորեն աշխատում է, որպեսզի Լիճքի սովխոզում արագ կերպով զարգանա թռչնաբուծությունը և մսի արտադրության մեջ զգալի տեղ գրավի թռչունի միսը։ Այժմ ֆերմայում կան ավելի քան յոթ հազար ռուսական սպիտակ և երևանյան ցեղի հավեր, որոնց գլխաքանակն առաջիկայում զգալի չափով ավելանալու է։ Այժմ ֆերման օրական տալիս է չորս անգամ ավելի շատ ձու, քան 1962 թվականի համապատասխան ժամանակաշրջանում։

Այդ ամենն առաջին հերթին արդյունք է կերի պաշարների կուտակման։ Ահա թե ինչու պարտիան հրամայական խնդիր է դրել՝ ստեղծել կերի կայուն բազա. երբ կա կեր, ապա կա նաև կաթ, միս, բուրդ, ձու։ Պարտիայի այս պահանջը լավ են ընկալել մարտունեցիները. նրանք անցյալ տարի ամռանը



գործեցին ժրաջան, անասունների համար կուտակեցին հնարավորին չափ շատ կեր։ Կերի կայուն բազա ստեղծելու շնորհիվ անասնաբույծները կոլտնտեսություններում և սովխոզներում կազմակերպում են մաքիների վաղ ծին։

V

Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր ծրագրային խնդիրներից է համարում ամեն կերպ զարգացնել գյուղատնտեսական գիտությունը, լայնորեն տարածել հողագործության և անասնաբուծության ասպարեզում ձեռք բերված գիտության նվաճումներն ու առաջավորների փորձը և դրանք արմատավորել արտադրության մեջ։

Այդ նպատակով Մարտունու գյուղական պարտիական կոմիտեն, կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչությունը աշխատավորների համար կազմակերպել են ագրո-զոոտեխնիկական խմբակներ, սեմինարներ, դասընթացներ, որտեղ ուսումնասիրվում են գյուղատնտեսական գիտության նվաճումները և առաջավորների փորձը։ Սեմինարներում և ագրոզոոտեխնիկական խմբակների պարապմունքներում զրույցներ ու զեկուցումներ են անցկացնում գյուղատնտեսության մասնագետները, հանդես են գալիս նաև արտադրության առաջավորները, որոնք պատմում են իրենց աշխատանքային փորձի մասին և գործնականորեն ցույց տալիս, թե ինչպես պետք է խնամել անասուններին, մշակել հողը, օգտագործել տեխնիկան՝ լավ արդյունքի հասնելու համար։

Կամո քաղաքի սովխոզում ոչխարաբույծների խմբակում զոոտեխնիկի զրույցներից բացի, իրենց փորձի մասին պատմել են առաջավոր հովիվներ Լեոն Ենգիբարյանը, Սիմոն Գալոյանը և Պապին Կոտոյանը, որոնք անցյալ տարի յուրաքանչյուր հարյուր մաքիից ստացել ու պահպանել են 94 գառ, ամեն մի ոչխարից խուզել են չորս ու կեսից հինգ կիլոգրամ բուրդ։ Մեխանիզատորների խմբակում գյուղատնտեսական տեխնիկան խնամելու և արդյունավետ օգտագործելու մասին զրույցներ է անցկացրել արտադրական վարչության տեսուչ-կազմակերպիչ Վ. Մարդոյանը։

Անասնաբուծական շատ մթերքներ արտադրելու համար անհրաժեշտ է բարելավել անասունների ցեղը։ Պարտիայի այդ ցուցումի կենսագործման ուղիով են գնում մարտունեցիները։ Կոլտնտեսություններում և սովխոզներում առանձնացվել են բարձրակիթ, մսատու մայրերից ծնված մատղաշներ և հատուկ խնամք է տարվում դրանց աճեցման համար։ Կամո քաղաքի սովխոզի Ավետիք Ասոյանի և Հրանտ Ղափանցյանի բրիգադաներում աճեցնում են 250 այդպիսի հորթեր։ Այդ ցեղի կովերը տարեկան տալիս են 2000—2500 կիլոգրամ կաթ (3,7 տոկոս յուղայնությամբ), մինչդեռ սովորական ցեղի կովերը տալիս են 1100—1200 կիլոգրամ կաթ։

Երբ նայում ես այդ մատղաշներին, մի պահ մտովին պատկերացնում ես տավարի ապագա նախիրը, ուր այժմյան գաճաճ կովերի փոխարեն կլինեն գեղեցիկ, բարձր մթերատու կովեր, երբ մարդն ավելի քիչ աշխատանքով շատ արդյունք կստանա։

Գյուղատնտեսության փարոսների օրինակը ցույց է տալիս, որ ազնիվ աշխատանքով մարդիկ կարող են նշանակալի չափով բարձրացնել հանրային դաշտերի բերքատվությունն ու հոտի մթերատվությունը։ Առաջավորների փոր-

ձի տարածման և արմատավորման միջոցով պարտիական կոմիտեն և արտադրական վարչությունը ետ մնացող տնտեսություններին ցույց են տալիս առաջավորներին հասնելու ուղին։

Ջոլաքարի կոլտնտեսությունից ահազանգ ստացվեց, որ անասնաբուծական ֆերմայում գործերը բարվոք չեն, վատ խնամքի հետևանքով մատղաշների անկում կա, թերակատարվում է կաթի արտադրության պլանը։ Պարտիական կոմիտեի տեսուչ պարտկազմակերպիչ Թ. Ավետիսյանը, արտադրական վարչության գլխավոր անասնաբույժ Ռ. Ղարիբյանի հետ եղան կոլտնտեսությունում և ուշի-ուշով ուսումնասիրեցին ֆերմայի վիճակը։ Պարզվեց, որ մատղաշի անկումը, կաթի արտադրության պլանի թերակատարումը ֆերմայի վարիչի անպատասխանատվության հետևանքն են։

Հրահանգչի և անասնաբույժի առաջարկով ֆերմայի վարիչին ազատեցին աշխատանքից, նրա փոխարեն նշանակելով զոոտեխնիկ Ս. Գալստյանին։ Սակայն նրանք չբավարարվեցին սոսկ կազմակերպչական միջոցառումով, այլ գործնական օգնություն ցույց տվին ֆերմայի նոր վարիչին՝ բարելավելու անասունների խնամքն ու կերակրումը։ Այժմ Ջոլաքարի կոլտնտեսության անասնաբուծական ֆերմայում գործերը հաջող են գնում, անցած ամիսներին ոչ մի մատղաշի կորուստ չի եղել, զգալիորեն շատ կաթ է արտադրվել։

Մարտունու արտադրական վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները վարելահողի գրեթե կեսը օգտագործում են հասկավոր կուլտուրաներ մշակելու համար։ Հենց տարվա սկզբից պայքար է ծավալվել՝ հանուն բարձր բերքի։ Այդ նպատակով մինչև ցանքն սկսվելը դաշտ է փոխադրվել երկու անգամ ավելի շատ պարարտանյութ, քան անցյալ տարի, բոլոր տնտեսությունները ապահովվել են ընտիր, բերքատու և կոնդիցիոն սերմերով, վերանորոգել են գյուղատնտեսական տեխնիկան, կուտակել հանքային կոմբինացված պարարտանյութեր՝ սնուցելու աշնանացան ցորենը։

— Մենք մինչև հիմա հողից անընդհատ վերցրել ենք,— իրավացիորեն ասում են հողագործները,— բայց փոխարենը քիչ ենք տվել, այժմ պարտավոր ենք շատ տալ և շատ էլ պահանջել հողից։

Այստեղ լայն հեռանկարներ կան գյուղատնտեսական արժեքավոր և եկամտաբեր ճյուղերից մեկի՝ ծխախոտագործության զարգացման համար։ Անցյալ տարի Մարտունու արտադրական վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները յուրաքանչյուր հեկտարից ստացան 17,1 ցենտներ հումք, պլանով նախատեսված 15-ի փոխարեն և առաջադրանքից ավելի պետությանը վաճառեցին 134 տոննա ծխախոտ։ Բարձր բերքի համար ծխախոտագործների սոցիալիստական մրցության մեջ նրանք շահեցին առաջնությունը և չորս անգամ նվաճեցին ՀԿՊ Կենտկոմի և ռեսպուբլիկայի մինիստրների սովետի փոխանցիկ դրոշը։ Ոգեշնչված բարձր արդյունքներով, կոլտնտեսություններն ու սովխոզները պարտավորվել են 1963 թ. ծխախոտի պլանտացիաների տարածությունը հասցնել 1074 հեկտարի, որը 70 տոկոսով ավելի է յոթնամյա պլանով նախատեսվածից և յուրաքանչյուր հեկտարից ստանալ 18 ցենտներ բերք։

Փորձը ցույց է տալիս, որ Մարտունու գոտում լավ արդյունք են տալիս հնդեղեն կուլտուրաները, հատկապես ոլոռը։ Անցյալ տարի 125 հեկտար ոլոռի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացվել է 60 ցենտներ չոր խոտ կամ 200 ցենտներ կանաչ զանգված։ Համոզվելով, որ ոլոռը լավագույն միջոց է կերի բազան ամրապնդելու համար, մար-



տունեցիները պլանավորել են այս տարի այդ կուլտուրայի ցանքատարածությունը հասցնել 1200 հեկտարի, ի հաշիվ ցելերի և նվազ արդյունավետ խոտաբույսերի տարածության։

## VI

ԱՅՍՊԵՍ, մարտունեցիներն արձագանքելով Ուստ-լաբինսկի հողագործներին, ձգտում են յոթնամյակի հինգերորդ տարին դարձնել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման նոր տարի։ Այդ ճանապարհին նրանք արդեն առաջին քայլն արել են՝ պատրաստ դիմավորելով գարնանացանը։ Սակայն դեռևս կան թերի գործեր, պակասություններ։

Մի շարք կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների անհանգըստացնում է գյուղատնտեսական մեքենաների պահեստամասերի պակասը։ Նրանց այդ անհանգստությունն օրինական է։ Չէ՞ որ գարնան գյուղատնտեսական աշխատանքի եռուն պահին, բերքահավաքի ժամանակ կարող են խափանվել մեքենաները։ Այդ խափանումներն անմիջապես վերացնելու և պարապուրդ չտալու համար հարկավոր է հայթայթել պահեստի մասեր։ Այնինչ այս հարցը քիչ է մտահոգում «Հայգյուղտնտեխնիկայի» միավորման բաժանմունքի ղեկավարներին։

Կան կոլտնտեսություններ, որոնք ընդհանուր երթի պոչից են գնում, իրենց դանդաղկոտությամբ թուլացնում են առաջընթացի թափը։ Ճիշտ է, այդ տնտեսությունները գտնվում են արտադրական վարչության և պարտկոմի ուշադրության կենտրոնում, սակայն գործի հաջողությունը պահանջում է ավելի վճռականություն ու հետևողականություն՝ ետ մնացող տնտեսությունները առաջավորներին հասցնելու։

Պլանավորված է Լիճքի սովխոզում աճեցնել հիսուն հազար ճուտ։ Սակայն ռեսպուբլիկայի պլանային և շինարարական կազմակերպությունները, գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրությունը մոռանում են, որ միայն պլանավորումը բավական չէ։ Պլանն առաջադրելիս, գործն սկսելու համար անհրաժեշտ է միջոցներ հատկացնել, թռչնանոց կառուցելու համար նախագիծ ու նախահաշիվ կազմել և ուղարկել սովխոզ։

Ուրախալի է, որ Մարտունին բռնել է տնտեսական վերելքի ուղին. տնտեսապես հզորանում են կոլտնտեսություններն ու սովխոզները, բարձրանում կոլտնտեսականների ու բանվոր-ծառայողների եկամուտները։ Այդ առաջընթացըն ինչպես հարկն է չի դրսևորվում կենցաղում։ Առանց հատակագծերի ու նախագծերի մարդիկ կառուցում են տներ, նույնիսկ երկու հարկանի, իսկ երբ նայում ես շուրջդ, նորից նեղ, ծուռ ու ցեխոտ փողոցներ, ծառազուրկ բակեր։ Ճիշտ է, շրջսովետի գործկոմի նախագահ ընկ. Գ. Հունանյանին ցավ է պատճառում այդ, նա արդեն մտահոգված է գյուղերի բարեկարգման հարցով, բայց մեծ գործի հաջողությունը պահանջում է նաև ռեսպուբլիկական շինարարական, նախագծող կազմակերպությունների ձեռներեցությունը։

Արդեն գարուն է։ Գարնան բուրմունք է փչում ամենուրեք։ Այժմ գյուղատնտեսության բնագավառի հարվածային գործը՝ գարնանացանն է։ Մարտունեցիները բոլոր ջանքերը գործադրում են սեղմ ժամկետում և որակով կատարելու գարնանացանը, դրանով իսկ ամրապնդելու գյուղատնտեսական տարվա հաջողությունների հիմքը։

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

# ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻՆ

## ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ ՓԱՐՈՍԸ

«Սոցիալիզմն ունի օրինակի ուժ»: Պետք է գործնական օրինակով ցույց տալ կոմունիզմի նշանակությունը:

Վ. Ի. ԼԵՆԻՆ

1

ԱՇԽԱՐՀՆ այսօր բաժանված է սոցիալական և քաղաքական երկու հակադիր սիստեմների, որոնց մրցությունն իրար հետ կազմում է արդի համաշխարհային պատմության բովանդակությունը, հասարակական զարգացման առանցքը: Ներկայումս պարզորեն դրսևորվել են մարդկության զարգացման երկու գիծ, պատմական երկու տենդենց: Մեկը՝ ռեակցիայի, ճնշման ու պատերազմի գիծն է, որը հատուկ է կապիտալիստական սիստեմին: Մյուսը՝ սոցիալական առաջադիմության, մարդու իսկական ազատության, ստեղծագործ աշխատանքի ու խաղաղության գիծը. այն հատուկ է սոցիալիստական սիստեմին:
Դա հենց մեր զարգացման ու առաջընթացի մայրուղին է:

Մեծ Հոկտեմբերի այգաբացով սկսվեց մարդկության պատմության այդ նոր դարագլուխը: Ստեղծվեց մի հասարակարգ, որի դրոշի վրա գրված է՝ «Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն ու Երջանկություն բոլոր մարդկանց, բոլոր ժողովուրդներին». նրա նշանաբանն է՝ «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջների» ամենամարդասիրական սկզբունքը:

Արդեն 46 տարուն է բոլորել այդ հասարակարգը: Եվ քայլ առ քայլ առաջ շարժվելով պատմության անհայտ ուղիներով, անընդհատ նորանոր ուժեր ընդգրկելով իր վեհ գործի մեջ, մեծամեծ դժվարություններ հաղթահարելով, մեր հայրերն ու ավագ եղբայրները մեր սերնդի աչքի առաջ կերտեցին մի հոյակապ շենք, որի անունը սոցիալիստական հայրենիք է:

Այն այսօր հզոր է, առաջավոր ու առաջատար: Նա մի ջահ է աշխարհի բոլոր ժողովուրդների առաջընթացը լուսավորող, մի փարոս, որով իրենց կողմնացույցներն են ուղղում կապիտալի ու շահագործման լծի տակ կքած աշխատավորները, որի օրինակին են ձգտում հետևել գաղութակալության լուծը թոթափած հարյուր միլիոնավոր մարդիկ՝ հողագնդի տարբեր անկյուններում:





Ի՞ՍԿ որո՞նք են սովետների երկրի այն նվաճումները, որոնց ներգործությունը մարդկության համաշխարհային զարգացման ընթացքի վրա այդքան մեծ է, նշանակալի:

Առաջին հերթին դրանք մեր հայրենիքի տնտեսական հաջողություններն են: Դեռևս 1921 թվականին Վլադիմիր Իլյիչն այն միտքն արտահայտեց, որ «Այժմ միջազգային ռևոլյուցիայի վրա մենք մեր գլխավոր ներգործությունն անում ենք մեր տնտեսական քաղաքականությամբ: Սովետական Ռուսաստանի ռեսպուբլիկային են նայում բոլորը, աշխարհի բոլոր երկրները, առանց որևէ բացառության և առանց որևէ չափազանցության» (Երկեր, հ. 32, էջ 526): Առաջնորդվելով Լենինի այդ դրույթներով, Սովետական Միության աշխատավորությունը, կոմունիստական պարտիայի առաջնորդությամբ իրականացրեց մեր երկրի ինդուստրացման պլանը: Այսօր մեր հայրենիքը տալիս է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի 20 տոկոսը, իսկ սոցիալիստական լագերի հետ միասին՝ մոտ 37 տոկոսը:

1962 թվականին մեր արդյունաբերությունը մոտ 54 անգամ ավելի արտադրանք է թողարկել, քան 1913 թվականին: Արդյունաբերության հիմնական տեսակների արտադրության ցուցանիշներով մենք աշխարհում երկրորդ տեղն ենք դուրս եկել, իսկ առանձին տեսակների արտադրությամբ, օրինակ, ածխի հանույթով, տրակտորների թողարկմամբ և մի շարք այլ բնագավառներում, գերազանցելով կապիտալիստական աշխարհի ամենահզոր տերությանը՝ ԱՄՆ-ին, դուրս ենք եկել առաջին տեղը: Ավելի քան 76 միլիոն տոննա պողպատ, 55,3 միլիոն տոննա չուգուն են տվել մեր մետաղագործներն անցյալ տարի, մեր նավթարդյունաբերողներն արտադրել են 186 միլիոն տոննա նավթ, ավելի քան 75 միլիարդ խորանարդ մետր բնական գազ, մեր հանքափորները՝ 517 միլիոն տոննա քարածուխ, էներգետիկները՝ 369 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա: Այսօր Սովետական Միության արդյունաբերության համախառն արտադրանքը մոտավորապես հավասար է Անգլիայի, ԳՖՌ-ի և Ֆրանսիայի մակարդակին՝ միասին վերցրած: Եվ այդ այն դեպքում, երբ 1913 թվականին, մենք նրանցից յուրաքանչյուրից ետ էինք 1,5—4 անգամ:

Մեծ են նաև սոցիալիզմի ուղին թևակոխած եղբայրական մյուս ժողովուրդների հաջողությունները տնտեսության տարբեր բնագավառներում: Հատկանշական է, որ 1960 թ. նրանք ՍՍՌՄ-ի հետ միասին տվել են համաշխարհային ածխի հանույթի 52,1 տոկոսը, չուգունի 35,1, պողպատի մոտ 31 տոկոսը, շինափայտի 42,1 տոկոսը և այլն: Սովետական Միության տնտեսական պրոգրեսի արդյունքներն արդեն այնպիսին են, որ օրակարգի հարց է դարձել բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող արդյունաբերական և գյուղատնտեսական ապրանքների արտադրությամբ մոտակա տարիներում կապիտալիստական աշխարհի ամենաառաջավոր երկրներից անցնելը:

Կուլտուրայի բնագավառում ևս մեր հաջողություններն աննախընթաց են: Մեր գրականությունը, երաժշտությունն ու արվեստն ամբողջությամբ վերցրած անհամեմատ բարձր են այսօրվա կապիտալիստական երկրների կուլտուրայից ու արվեստից: Իսկ ժողովրդական լուսավորության, մասնագետ կադրերի պատրաստման ասպարեզում մեզ հետ չեն կարող համեմատվել նույնիսկ կապիտալիստական առաջավոր մի շարք երկրները՝ միասին վերցրած: Յուրա-

քանչյուր չորրորդ քաղաքացին սովետական երկրում սովորում է, իսկ յուրաքանչյուր ութսուներորդը՝ բարձրագույն ուսումնական հաստատության ուսանող է։ Հնարավոր չէ մեր կենցաղը պատկերացնել առանց էլեկտրականության, ռադիոյի, հեռուստատեսության, կինոյի, թատրոնի, որոնք լայնորեն մուտք են գործել մեր անծայրածիր երկրի ամենահեռավոր անկյուններն անգամ։

Առավել ակնառու են մեր նվաճումները գիտության բնագավառում։ Այստեղ մենք հասել ենք այնպիսի մակարդակի, որ մեր արհեստական արբանյակներն ու հրթիռներն ամենաբազմազան հետազոտություններն են կատարում մթնոլորտի և միջմոլորակային տարածությունների ամենատարբեր շերտերում, երբ մեր տիեզերական հրթիռները հասնում են լուսին, շրջանցում այն, դառնում արեգակի արհեստական արբանյակ, սլանում դեպի Վեներա ու Մարս։

Սովետական Միությունն առաջինը հասավ ատոմային էներգիայի օգտագործմանը՝ խաղաղ նպատակներով։ Առաջին ատոմային էլեկտրակայանը, առաջին ատոմային սառցահատը և մարդկային մտքի մեծ թռիչքի շատ ու շատ այլ արգասիքներ, Սովետական Միության, մեր հայրենիքի մարդկանց ջանքերով են ստեղծվել։ Ողջ աշխարհը հիացավ Յուրի Գագարինի առաջին տիեզերական թռիչքով, Գերման Տիտովի երկրի շուրջը կատարած 17 պտույտներով, Անդրիան Նիկոլաևի և Պավել Պոպովիչի մի քանի օր տևող խմբակային թռիչքով՝ մեր մոլորակի շուրջը։ Պատմության մեջ դեռ ոչ մի երկիր, ոչ մի ժողովուրդ գիտության զարգացման նման մակարդակի չի հասել։ Մեր հայրենիքի նվաճումներն այնքան ակնառու են այս ասպարեզում, որ այն աներկմտորեն խոստովանում են կապիտալիստական աշխարհի բուրժուական մտածելակերպ ունեցող մարդիկ անգամ։

Հասկանալի է, թե ձեռք բերված այս հաջողությունները միջազգային ինչպիսի հեղինակություն ստեղծեցին Սովետական Միության համար։ Եվ ոչ միայն հեղինակություն։ Մեր հայրենիքն այսօր մի յուրատեսակ ձգողականությամբ աշխարհի բոլոր ծայրերից դեպի իրեն է քաշում ամենատարբեր գույնի ու ցեղի, ամենաբազմազան սոցիալական հայացքների ու դավանանքի տեր շատ ու շատ ազնիվ մարդկանց սրտերը, մտքերն ու խոհերը։

Սովետական Միության տնտեսական, կուլտուրական, գիտական այս առաջընթացը քաղաքական այնպիսի իրադրություն են ստեղծել աշխարհում, որ մեծ փոփոխություններ են տեղի ունենում արժեքների գնահատման ասպարեզում։ Միասնական, համախմբված սոցիալիստական լագերի առկայությունը միանգամայն փոխել է ուժերի հարաբերակցությունը սոցիալիզմի և կապիտալիզմի միջև։ Եթե մի ժամանակ ֆրանսիական մեծ ռեալիստ Ռոմեն Ռոլանին բուրժուական մամուլը հետապնդում էր 1917 թվականի դեկտեմբերի 6-ին գրած «Ռուսական ռևոլյուցիայի հաղթանակը մեզ թվում է անհրաժեշտ պայման Եվրոպայի ողջ ապագայի համար» խոսքերի պատճառով, ապա այսօր իմպերիալիզմի ջատագովները միշտ չէ, որ կարող են հալածել ճշմարտությունը շատ ավելի բազմակողմանի և խոր վերլուծությամբ ներկայացնող անձնավորություններին։ Նույնիսկ Անգլիայի նման պահպանողական տրադիցիաներ ունեցող երկրում այսօր գործում են Ջոն Դեսմոնդ Բեռնալի նման հումանիստ գիտնականներ, որոնք մինչև վերջ ճանաչելով իմպերիալիզմի գիշատիչ էությունը, խզելով իրենց կապերն այդ անիծյալ իրականության հետ, անվերապահորեն կանգնեցին մարքսիզմ-լենինիզմի կողմը, դարձան կոմունիստներ և



իմպերիալիզմը մերկացնող ու սոցիալիզմը գովերգող աշխատություններ են հրատարակում։

Իմպերիալիզմն այլևս ի վիճակի չէ կասեցնելու պատմության արագ առաջընթացը, որը միայն ու միայն նրա կործանումն է մոտեցնում և բերում է մեր մեծ գործի և գաղափարների համաշխարհային հաղթանակը։

Հասարակական զարգացման վրա մեր ազդեցության անժխտելի ապացույց է կապիտալիզմի համաշխարհային սիստեմի ճգնաժամի խորացումը. ստեղծված փակուղուց ելք փնտրելու ճանապարհին իմպերիալիզմն իր հույսը դնում է ատոմային զենքի վրա։ Արգելում և օրենքից դուրս է հայտարարում կոմունիստական պարտիաները, բանվորներին զրկում է գործադուլների իրավունքից, կոմունիզմը վարկաբեկելու ձգտումով ամեն տեսակ հերյուրանքներ է տարածում նրա հասցեին։ Բայց այդ միջոցառումները հակառակ ազդեցություն են ունենում և գնալով իմպերիալիզմն ավելի ու ավելի է նեխում։ Սակայն դա «...չի նշանակում արտադրողական ուժերի լրիվ լճացում, խցանում և չի բացառում կապիտալիստական էկոնոմիկայի աճն առանձին ժամանակաշրջաններում, առանձին երկրներում» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 447)։

## 3

Մեկ դար առաջ, երբ կոմունիզմն իբրև ուրվական էր շրջում Եվրոպայում, կապիտալիզմի գաղափարախոսները չէին ցանկանում նկատել այն։ Միջազգային կոմունիստական շարժման կազմակերպումով Կարլ Մարքսն ու Ֆրիդրիխ Էնգելսը նոր հասարակարգի պրակտիկ իրականացման ուղիներ նշեցին։ Շարունակելով նրանց մեծ գործը՝ Լենինը հիմնադրեց բոլշևիկյան պարտիան, որը ռուսական կայսրության անծայրածիր տարածություններում ոտքի հանեց աշխատանքի մարդկանց և փշրեց շահագործման ու կեղեքման լուծը։ Ստեղծվեց առաջին բանվորա-գյուղացիական, սոցիալիստական պետությունը։

Բայց մենք այն ժամանակ միայնակ էինք, տնտեսապես թույլ ու հետամնաց և կապիտալիզմը փորձեց նոր հասարակարգը սաղմում ճզմել, ոչնչացնել։ Ավելի քան չորս տարի տևեց 14 տերությունների ռազմական ինտերվենցիան. ավերվեց երկիրը, քայքայվեց նրա տնտեսությունը, բայց մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով տոգորված աշխատավոր դասակարգերի անդրանիկ պետությունը կանգուն մնաց...

Լլոյդ ջորջերի, չերչիլների, վիլսոնների և մյուսների բաղձանքներն անկատար մնացին։ Իմպերիալիստները փոխեցին իրենց տակտիկան։ Ռազմական ինտերվենցիային հաջորդեց տնտեսական բլոկադան։ Կապիտալիստական հասարակարգը մեզ չէր ուզում ճանաչել։ Բայց փաստերը համառ են և ստիպում են, ի վերջո, իրենց հետ հաշվի նստել։ Ճենովայում, Լոզանում և Լոկառնոյում տեղի ունեցան առաջին պաշտոնական հանդիպումները. կապիտալիստական պետությունները ստիպված եղան ճանաչել մեր գոյությունը։ Սկսվեցին կապիտալիստական տերությունների դիվանագիտական լարախաղերը, որոնց նպատակն էր՝ առանց զենքի ի կատար ածել ձախողված ինտերվենցիայի պլանները։ Դարձյալ վրիպում...

Անցան համառ աշխատանքով, ստեղծագործական թռիչքներով լի տարիները և աստիճանաբար մեր երկիրը նվաճեց այն բարձունքները, որոնց պատմությունն անվանել է քայքայված տնտեսության վերականգնում, երկրի ին-

դուստրացում և կոլեկտիվացում: Երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրեին մեր մեծ հայրենիքն արդեն ավարտել էր սոցիալիզմի լիակատար կառուցումը: Բայց սկսվեց աշխարհավեր նոր փոթորիկը... Ոգեշնչված նույն չերչիլների ու չեմբեռլենների թողտվության քաղաքականությունից, հիտլերյան հորդաները փորձեցին իրենց հզոր ռազմական մեքենայի օգնությամբ երկրի երեսից ջնջել սոցիալիստական պետությունը: Ծավալվեց կռիվը կենաց ու մահու:

47 երկար ու ձիգ ամիսներ տևեց ճակատամարտն այնահեղ, որը 1945 թվականի մայիսի 9-ին աշխարհին ավետեց ֆաշիզմի կործանումը, սոցիալիզմի հաղթանակը: Բայց այդ հաղթանակը միայն մեկ բանակի հաղթանակը չէր մյուսի նկատմամբ: Այդ հաղթանակն աշխարհին բերեց մի նոր որակ: Երկրորդ համաշխարհային պատերազմի թոհ ու բոհում ծնվեց սոցիալիստական ճամբարը, որը Սովետական Միության քաղաքական, տնտեսական ու կուլտուրական օգնության շնորհիվ հետագա զարգացման բուռն տարիներին կատարեց պատմական մեծ թռիչք, արմատապես փոխելով իրերի դրությունը համաշխարհային ասպարեզում:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրների հետ այլևս անզոր են հաշվի չնստել մեր թշնամիները՝ կապիտալիստական աշխարհի տերերը:

Մեր մեծ հաղթանակներից սթափվեցին գաղութային լծի տակ դարերով ճնշված մեկ միլիարդից ավելի ազգաբնակչություն ունեցող երկրների ժողովուրդները: Հնդկաստանում ու Ինդոնեզիայում, Հնդկաչինում և Բիրմայում, Մալայայում ու Արաբական Արևելքում և, վերջապես, Սև աշխարհամասում կործանվեցին, ընկան գաղութային տիրապետությունները, ծնվեցին նոր, ազգային անկախ երկրներ: Միայն Աֆրիկայում դրանց թիվն այժմ անցնում է երեք տասնյակից:

Գաղութային լուծը թոթափող շատ երկրներ արդեն տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը վերացնելու կուրս են վերցրել: Ու նրանց այդ կարևոր գործի հաջողության գրավականը դարձյալ մեր առաջընթացն է, մեր օրինակի ներգործությունը: Ահա թե ինչպես է գնահատում մեր հայրենիքի դերը համայն մարդկության առաջընթացում Հնդկաստանի պառլամենտի դեպուտատ, պրոֆեսոր Խիրեն Մուկերջին. «Երբ հորիզոնում ծագեց սովետական կարմիր աստղը, աշխարհի բոլոր ժողովուրդները, այդ թվում և Հնդկաստանը զգացին նրա ձգողական ուժն ու հմայքը... Հոկտեմբերյան ռևոլյուցիայի փայլուն օրինակը և նրան հաջորդող վիթխարի նվաճումները Սովետական Ռուսաստանում, հանդիսացան Հնդկաստանի բանվոր դասակարգի և գյուղացիության շարժման ծավալման շարժառիթները: Հոկտեմբերը մեծ ազդեցություն ունեցավ ամբողջ Ասիայի ազգային-ազատագրական շարժման զարգացման վրա»:

Իսկ ի՞նչ են ասում գաղութակալության շղթաներից ազատագրվող Աֆրիկայի նոր երկրների պետական գործիչները: Ծանոթանանք նրանցից մի քանիսի մտքերին: «Սովետական Միության ժողովուրդները բացեցին ողջ աշխարհի աչքերը և ցույց տվին, որ ազատության հասնելու ելած ժողովուրդն անպարտելի է: Հոկտեմբերյան մեծ ռևոլյուցիան 1917 թվականին իր հետ բերեց մեր Աֆրիկայի ապագայի պրոբլեմների լուծումը»,— հայտարարել է Մալիի Ռեսպուբլիկայի պրեզիդենտ Մոդիբո Քեյթան: Ահա և մեր հասարակարգի ստեղծողի գործունեության ճշմարտացի բնութագիրը: «Լենինն այնպիսի անձնավորություն էր, որն իրեն ամբողջովին նվիրեց ոչ միայն ռուս ժողովրդի գործին, այլև



ողջ մարդկության գործին: Նա ստեղծեց հասարակական նոր սիստեմ, որը հսկայական ներգործություն ունեցավ համաշխարհային պատմության զարգացման վրա»— այսպես է ասել Գանայի Ռեսպուբլիկայի պրեզիդենտ Քվամե Նքրուման:

4

ԳՆԱԼՈՎ նեղանում են կապիտալիզմի շրջանակները, թուլանում նրա դիրքերը, հեղինակազրկվում իմպերիալիստական գաղափարները: Եվ, պատահական չէ, որ ամերիկյան ոչ անհայտ քաղաքագետ, միլիոնատեր Հարիմանն ստիպված է ելքը փնտրել... կապիտալիզմի անվանափոխության մեջ, հույս ունենալով դրանով նրան հանել անելանելի վիճակից: «Փոխ առնելով Խրուշչովի տերմինաբանությունը,— ասել է նա,— մենք պետք է «թաղենք» «կապիտալիզմ» բառը»:— Իսկ էությո՞ւնը, պարոն Հարիման: Նրա հետ ի՞նչ եք մտադիր անել: Չէ որ աշխարհի յուրաքանչյուր անկյունում կապիտալիզմը-իմպերիալիզմը հոմանիշն է դարձել կեղեքման, շահագործման, կեղծիքի ու ստի:

Իմպերիալիստական «մեծ տան» անդամի նման խոստովանությունը մի ավելորդ անգամ ապացուցում է, որ իմպերիալիստների գործերը վատ են: Եվ այդ վիճակից դուրս գալու համար, իրենց կորսված դիրքերը վերականգնելու համար, նրանք դիմում են ամեն ինչի: Սոցիալիստական համաշխարհային սիստեմին տնտեսական հարված հասցնելու ցանկությամբ նրանք դիմում են գաղութադեմպինգի քաղաքականության՝ արտաքին առևտրի բնագավառում: Գաղութակալության լծից ազատագրված ժողովուրդներին սոցիալիզմի ուղուց ետ պահելու ձգտմամբ նրանք զանազան վարկեր են առաջարկում նրանց, տնտեսակամն ու նյութական որոշ օգնություն ցույց տալիս: Բայց իմպերիալիզմն ամենուրեք արդեն այնպես է հեղինակազրկվել, որ մոնոպոլիստների ոչ մի մանյովր այլևս չի փոխի իրերի դրությունը: Այսօր ամենուրեք բոլորին էլ քաջ հայտնի է, որ կապիտալի աշխարհում ուշադրության կենտրոնում են, ինչպես գրում է ամերիկյան հայտնի տնտեսագետ Ջակոբ Օզերսը «...արտադրողի և ոչ թե սպառողի շահերը: Ապրանքները ոչնչացվում կամ օտարերկրյա շուկաներն են նետվում դեմպինգային գներով... արտադրությունը սահմանափակվում է, որպեսզի բարձրացվեն գները» (Дж. Озерс, «Должны ли люди голодать?», էջ 22):

Հակառակ դրան, լավ են ընթանում սոցիալիստական աշխարհի գործերը: Մեր հեղինակությունն օրավուր բարձրանում է, մեր ազդեցությունը՝ աճում: Կապիտալի աշխարհի հասարակ մարդկանցից շատերն արդեն ճանաչել են մեր գաղափարները, ընդունել դրանք: Այդ են վկայում թեկուզ և այն փաստերը, որ բազմամիլիոն աշխատավորներ միավորված են տասնյակ երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների շարքերում, առաջադիմական մասսայական բանվորական արհմիություններում: Եվ, ինչպես ցույց տվեց Արհմիությունների համաշխարհային ֆեդերացիայի VI կոնգրեսը, աշխատավորական այդ հզոր բանակն իր ճնշող մեծամասնությամբ կանգնած է սոցիալիզմի կողմը՝ խաղաղության և մարդկության առաջադիմության կողմը:

«Սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ վիթխարի փոփոխություններ տեղի ունեցան հասարակական զարգացման բնույթի մեջ: Հազարավոր տարիներ մարդիկ տառապում էին հասարակական օրենքների տարերային գործողություններից, հանդիսանում էին նրանց խղճուկ խաղալիքները: Սոցիալիզմի օրոք մարդիկ ոչ միայն ճանաչում են օբյեկտիվ օրենքները, այլև տիրապետում են դրանց: Բանվորներն ու գյուղացիները, որոնց շահ-

գործողները բամաճրում էին ոռպես անդեմ, իներտ մասսայի, սոցիալիստական պայմաններում ցուցադրեցին ստեղծագործության ճիրավի անսաճման ընդունակություններ. ճերոսության ճրաշճներ, առասպելական արիություն, դյուցազնական ուժ: Սովետական Միության օրինակը բոլոր երկրների աշխատավորների սրտերում վստաճություն ծնեց իրենց ուժերի նկատմամբ»:

Այսպես է բնութագրել համաշխարհային իրադարձությունների այդ կարևորագույն հարցը ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 166):

Սովետական Միության օրինակի ուժը հանգեցրեց այն բանին, որ այսօր ներքին ճակասություններից բզկտվող կապիտալիստական ճամաշխարճային սիստեմի կողքին կանգնել է օրավուր հզորացող սոցիալիստական ճամաշխարճային սիստեմը, որն իր վրա է բևեռել աշխարհի բոլոր ազատատենչ մարդկանց հայացքները: Եվ ոչ միայն բևեռել: Նրա սերտ բարեկամական օգնությունը հնարավորություն ստեղծեց նախկին գաղութային երկրների համար՝ թոթափել իմպերիալիզմի շղթաները, կանգնել ազգային առաջընթացի ուղու վրա, ամենաակտիվ կերպով դիմադրել իմպերիալիզմի տնտեսական էքսպանսիային:

Առանց մեր հայրենիքի մասնակցության այսօր հնարավոր չէ համամարդկային, համաշխարհային որևէ պրոբլեմ մշակել և, առավել ևս, այն լուծել ու իրականացնել:

Այսպիսին են մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով աշխարհը վերակառուցելու ելած աշխատավոր մարդկանց ձեռք բերած պատմական նվաճումները, այսպիսին է սոցիալիստական-կոմունիստական հասարակարգի հեղինակությունը, այսպիսին է մեր առաջընթացի ազդեցության ներգործությունը համայն մարդկության զարգացման ընթացքի, նրա օրինաչափությունների վերափոխման վրա:

Առաջին անգամ մարդկության պատմության մեջ կանգնելով պետության ղեկի մոտ, աշխատավոր դասակարգերը գործնականորեն ապացուցեցին, որ կապիտալիստական հասարակարգի այնպիսի արատներ, ինչպիսիք են՝ մարդու կողմից մարդու շահագործումը, խրոնիկական գործազրկությունն ու տնտեսական ճգնաժամերը, աճող սերնդի ուսման և կրթության, բնակչության բուժսպասարկման, թոշակավորման և այլ հարցեր բախտի քմահաճույքին թողնելը, ոչ այլ ինչ է, քան անտագոնիստական դասակարգեր ունեցող հասարակության սոցիալական անիրավահավասարության արդյունք և ոչ երբեք ի վերուստ տրրված անփոփոխ, հաստատուն օրենք: Սոցիալիստական հասարակությունում վերջնականապես տրվեց այդ հարցերի ճիշտ լուծումը: Այսօր մեզ մոտ կյանքի վայելքներից օգտվում են ոչ թե ինչ-որ ընտրյալներ, այլ հասարակության բոլոր անդամները, բոլոր նրանք, ովքեր իրենց հանրօգուտ աշխատանքով բազմապատկում են նոր, իսկական ճայրենիքի նյութական և հոգևոր հարստությունները:

Այս ամենը սթափեցրեց կապիտալի ստրկության մեջ խարխափող զանգվածներին: Այդ է վկայում նրանց պայքարի սրությունն արդի էտապում, նրանց ամենաբազմազան սոցիալ-տնտեսական, քաղաքական պահանջների փոփոխությունը: Կապիտալիստական երկրների աշխատավորներն այսօր պահանջում են անվճար բուժսպասարկում, գործարանատերերի կամ պետության հաշվին վճարվող կենսաթոշակ, վճարովի արձակուրդ, էժան և հարմարավետ բնակարաններ, ձեռնարկությունների իսկական ազգայնացում և այլն: Սա իհարկե



դեռևս պայքար չէ հանուն սոցիալիզմի, բայց այսպիսի պայքարում հասունանում է բոլոր աշխատավորների դասակարգային ինքնագիտակցությունը:

Սոցիալիզմի օրինակը մասսաների աչքում հեղինակազրկում է կապիտալիզմը: Միաժամանակ նա գործնականում ցուցադրում է իր առավելությունները, որոնք ապահովում են արդարացի կարգեր ու պայմաններ հասարակ մարդկանց լավ ապրելու համար, ապացուցում է սոցիալիստական գաղափարների ռեալ լինելը: Սոցիալիզմի օրինակը, միաժամանակ, համախմբում է աշխատավոր մասսաներին, օգնում է նրանց կազմակերպվածության և մարտունակության աճին:

## 5

ԲԱՅՑ մեր ուժերի աղբյուրը, սոցիալիզմի նվաճումների աղբյուրը միայն վերոհիշյալ հանգամանքների արգասիքը չէ: Այստեղ ասպարեզ է մտնում մի այլ գործոն, մի այլ աղբյուր, որի ներգործությունը վճռական է: Այդ գործոնը կապիտալիստական երկրների ժողովրդական բազմամիլիոն զանգվածներն են, որոնք համախմբվելով կոմունիստական պարտիաների շուրջը, առաջադեմ շրջանակների շարքերում, պայքարում են իրենց երկրներում խաղաղության, ժողովրդավարական ազատությունների, հավասարության ու նոր կարգերի հաստատման համար:

Այդ է վկայում հատկապես վերջին տարիներին բանվորների ու աշխատավորական մյուս խավերի մղած դասակարգային պայքարի պատմությունը: խոշորագույն գործադուլներ ու ցույցեր տեղի ունեցան Ֆրանսիայում, Իտալիայում, Բելգիայում, ԱՄՆ-ում, Անգլիայում, որոնց մասնակիցների թիվը երբեմն անցնում էր տասը միլիոնից: Կառավարական քանի՜, քանի՜ հակաժողովրդական օրինագծեր ձախողվեցին այդ ցնցումների շնորհիվ՝ Բելգիայում, Ֆրանսիայում, Իտալիայում, Դանիայում: Կասեցվեցին իմպերիալիստական տերությունների ոտնձգությունները՝ գաղութակալության լծից ազատագրված Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի, Սիրիայի, Լիբանանի և ուրիշ այլ երկրների ու ժողովուրդների դեմ:

Թվարկել այսպես, կարելի է անվերջ: Եվ այդ բոլորը մեկ անգամ ևս հաստատում են այն փաստը, որ իմպերիալիստական երկրների աշխատավորների հոծ զանգվածների մտքերն ու խոհերը մեզ հետ են: Իսկ դա շատ մեծ ուժ է: Այն ներկայումս ավելի մեծ թափ է ստացել. Նրան են հարում նաև ինտելիգենցիայի առաջադեմ ներկայացուցիչները, համաշխարհային համբավ ու վաստակ ունեցող գիտնականներ, հասարակական ու քաղաքական գործիչներ: Իսկ նրանք մեզ հետ են, որովհետև ճշմարտությունը մեր կողմն է, որովհետև մեր գաղափարների, մեր իրականության առավելություններն ակնհայտ են: Իսկ այդ դուր չի գալիս իմպերիալիստներին, նրանք ահ ու սարսափի մեջ են:

Տասնյակ միլիարդավոր դոլարներ են վատնում ռեակցիոն ուժերը կապիտալիստական զարգացած երկրներում, զանազան տնտեսական և ռազմական միություններ են նրանք ստեղծում՝ կոմունիզմի գաղափարների տարածումը դեպի Արևմուտք «պատնեշելու» համար: Բայց ո՛չ ՆԱՏՕ-ն, ՍԵԱՏՕ-ն կամ ՍԵՆՏՕ-ն, ո՛չ իմպերիալիստների սանձազերծած ռազմական միջադեպերը Սուեզի ջրանցքի շրջանում, Լաոսում և այլուր, ո՛չ ռազմական հեղաշրջումները Լատինական Ամերիկայի, Մերձավոր ու Միջին Ասիայի և Աֆրիկայի մի

շարք երկրներում, որոնք մեծ մասամբ նրանց խայտառակ պարտությամբ են
պսակվել, իմպերիալիստներին չէին կարող բերել և չեն բերում վաղեմի դիր-
քերն ու հեղինակությունը: Իմպերիալիզմի ռազմական այդ միջոցառումները
դեպի վաղվա օրն ունեցած նրանց վախի հետևանք են և այլ ազդեցություն
մարդկության վրա՝ քան նրա վերջնական հեղինակազրկումն է, նրանք չեն կա-
րող ունենալ:

Իմպերիալիստական տերությունները փորձում են տնտեսական հատուկ
կապերով միաձուլվել, դառնալ միասնական: Դրա փորձերից է, օրինակ, եվրո-
պական «ընդհանուր շուկայի» ստեղծումը: Կրկին վրիպում: Քանի որ նրանց
ներքին և արտաքին հակասություններն այնքան են խորացել, պայքարը
հումքի և վաճառահանման շուկաների համար այնպես է սրվել (հատկապես
գաղութային և կախյալ երկրների ազատագրումից հետո), փոխադարձ վստա-
հությունն այնքան երերուն է դարձել, որ իմպերիալիստական մի խումբ երկըր-
ների որևէ կոլեկտիվ միջոցառում, որը, իհարկե, նրանց ժամանակավոր թեթե-
վություն կբերեր, անմիջապես հանդիպում է մյուսների ծուռ հայացքներին և
դրանցից բխող պատասխան քայլերին: Ֆրանս-արևմտագերմանական դաշինքը,
ինչ խոսք, ռեալ և հաստատուն լինել չի կարող: Այն երկրորդ համաշխարհա-
յին պատերազմի ժամանակ կորսված դիրքերը վերականգնելու փորձ է Դը Գոլի
և Ադենաուերի կողմից: Բայց չէ որ դա ուղղակի Ամերիկայի և Անգլիայի մոնո-
պոլիստների գրպանները մտնել է նշանակում և, նրանք ամեն ինչ են անում՝
արագացնելու ֆրանս-արևմտագերմանական բարեկամության ձախողումը:

Իսկ ի՞նչ կարող է նրանց տալ «վերացական դատարկախոսությունը, միս-
տիցիզմը»: Դարձյալ ոչինչ: Իմպերիալիզմի ռեակցիոն գաղափարախոսություն-
ներն այսօր ղեկը կորցրած նավի նման մարդկային մտքի հորձանուտներում
շպրտվում են մերթ դեպի աստրոլոգիա (հնում տարածված կեղծ գիտություն՝
աստղերի դասավորությամբ մարդկանց բախտը որոշելու մասին), կամ սպիրի-
տուալիզմ (իդեալիստական փիլիսոփայություն, որը ժխտում է մատերիայի
ռեալությունը, աշխարհի բացարձակ հոգևոր էությունն ընդունող ռեակցիոն
«ուսմունք»), մերթ մինչև մարդատյաց ֆաշիստական ռասայականություն: Եվ
այս բոլորը նույնպես վախից, որովհետև աշխարհի ռեալ օրենքներն ու օրինա-
չափությունները նրանց ոչինչ լավ բան չեն խոստանում:

Բայց իմպերիալիստական այդ ռեակցիոն գաղափարախոսություններն էլ
այսօր անզոր են առաջադեմ մարդկանց (որոնց թիվը կապիտալի աշխարհում
շատ մեծ է) շեղել ռեալ իրականությունից, ետ պահել ճշմարտությունից: Երբ
մարդ մեկ անգամ ճանաչել է նորը, առաջադեմը, լավը, դժվար է այլևս նրան
խաբել ու ետ դարձնել: Այս առումով խիստ բնորոշ է անգլիացի գիտնական
Ջոն Բեռնալի հետևյալ միտքը.

«Այժմ, ինտելեկտուալ անկումի ժամանակաշրջանում, հաստատուն և անխախտ է
կանգնած Մարքսի փիլիսոփայությունը: Իր ծագման և բնույթի շնորհիվ նա անխոցելի է
այն կործանարար ուժերի համար, որոնց չկարողացան դիմանալ մյուս փիլիսոփայական
սիստեմները: Դրա պատճառն այն է, որ նա բանական է, գիտական է և համապարփակ.
նա ուսմունք է փոփոխությունների մասին, մի ուսմունք, որը նախորոշված է փոփոխու-
թյուններով հարուստ ժամանակաշրջանի համար. դա գործողության փիլիսոփայություն է,
և ո՛չ թե հայեցողության, դա հույսի փիլիսոփայություն է, և ո՛չ թե հուսահատության
և, վերջապես, ամենագլխավորը՝ դա բանվոր դասակարգի փիլիսոփայությունն է» (Ջ. Դ.
Բեռնալ, «Գիտություն և հասարակություն», էջ 47):



Բայց միայն Ջոն Բեռնալը չէ այս կարծիքին: Ահա թե ինչ է ասում բելգիա-
կան պառլամենտի դեպուտատ և Բելգիայի էկոնոմիկայի նախկին մինիստր
Ռայմոն Շեյվենը: Սովետական Միություն կատարած այցելությունից հետո նա
գրում է՝ «Ես առաջվա նման համարում եմ,— և այսօր դրանում համոզված եմ
առավել ևս քան երբևէ,— որ կոմունիստական դինամիզմը (խոսքը մեր գործու-
նակության և էնտուզիազմի մասին է — Ա. Լ.) ուղիղ համեմատական է մեր
ծուլությանը, և մեր ինդիվիդուալիզմը չափազանց հաճախ հանդիսանում է ոչ
այլ ինչ, քան մեր եսասիրության (էգոիզմի) արդարացում»:

Ահա թե ինչ է գրում կապիտալիզմի ժամանակակից ջատագովներից մեկը՝
արևմտագերմանական տնտեսագետ և հրապարակախոս Ֆրից Շտեռնբերգը.
«Տեսական անալիզը մասնագետներին հանգեցնում է այն միահամուռ եզրա-
կացության, որ ռուսների հսկայական հաջողությունները գիտության մեջ...
բացատրվում են երեք գործոնների բացարձակ փոխներգործությամբ՝ նրանք
ունեին և ունեն հանճարեղ գիտնականներ: Նրանք ստեղծեցին մի սիստեմ, որն
ամեն կերպ խրախուսել և խրախուսում է այդ գիտնականներին: Նրանք միլիո-
նավոր մարդկանց համար ապահովել են նոր ձևով սովորելու հնարավորու-
թյուն, իրենց նպատակ դնելով հասնել այն բանին, որպեսզի ոչ մի տաղանդ
չկորչի» («Международная жизнь». 1963 թ., № 1, էջ 165):

Համանման կարծիքներ են հայտնվել նաև մեր կուլտուրայի, հոգևոր առա-
վելությունների մասին: Հատկապես գիտական արժեք են ներկայացնում ամե-
րիկյան հայտնի տնտեսագետ Հարրի Շվարցի մտքերը, որոնք նա արտահայ-
տել է 1962 թվականին, Ջորջիկիա նահանգի համալսարանում կարդացած իր
դասախոսության մեջ: «Ես կարծում եմ, որ ամերիկյան և համաշխարհային
պատմության ներկա ժամանակաշրջանը նրանով է տարբերվում երեսնական
ու քառասնական թվականների ժամանակաշրջանից, որ մենք այլևս չենք ծի-
ծաղում սովետական տնտեսական մարտահրավերի վրա: Մենք ցավով եկանք
այն եզրակացության, որ սովետական էկոնոմիկան հեռու է վատը լինելուց, հե-
ռու է անկենսունակ լինելուց: Նա չափազանց լավ է գործում, որպեսզի մենք
հանգիստ լինենք... Քառասուն տարի առաջ Սովետական Միությունն ավերակ-
ներով էր պատած... քառասուն տարում, որին բաժին են ընկնում նաև երկրորդ
համաշխարհային պատերազմի ավերածությունները, Սովետական Միությունը
շատ առաջ գնաց և հասավ այնպիսի մակարդակի, որ նրան հնարավորություն
տվեց հաղթել Միացյալ Նահանգներին տիեզերքում և որի բազայի վրա, նա մի
քանի տարուց առաջ կանցնի Միացյալ Նահանգներից տնտեսական բնագավա-
ռում ևս» («За рубежом», 1962 թ. № 44, էջ 14—15):

Այնքան մեծ ու հրապուրիչ են սոցիալիստական լագերի երկրների և, առա-
ջին հերթին՝ Սովետական Միության վիթխարի հաջողությունները հասարակա-
կան կյանքի բոլոր բնագավառներում, որ կապիտալիստական աշխարհի բոլոր
ազատատենչ ուժերի, բոլոր ազնիվ, խելամիտ մարդկանց հայացքն ուղղված է
մեր երկրին: Մենք այսօր ընթանում ենք մարդկության ավանգարդում, մեր
պայծառ օրինակն իբրև փարոս լուսավորում է երկրագնդի բոլոր ազգերի ու
ցեղերի մարդկանց ուղին դեպի նոր ապագան: Մեր հայրենիքն արդեն հասել է
այդ մեծ ապագայի նախադռանը և նրա զարգացումն իր վճռական ազդեցու-
թյունն է գործում համաշխարհային պատմության ընթացքի վրա:

Ա. ԼՅՈՒԼԻԿՅԱՆ

## Թարգմանական և իմաստային խեղաթյուրումներ

| | Բնագիրը | Տպված է | Պետք է լինի |
|---|---|---|---|
| 1 | «...не польза *русскому* пролетариату...» (стр. 36) | «պրոլետարիատի օգտին չէ» (էջ 45) | «ռուսական պրոլետարիատի օգտին չէ... |
| 2 | «на «оборону» работают» (36) | «...աշխատում են «պաշտպանության վրա» (45) | «...աշխատում են «պաշտպանության» համար...» |
| 3 | «...отдаю ее в жертву *войне* из-за интересов буржуазии...» (37) | «այն զոհաբերում եմ հանուն բուրժուազիայի շահերի» (46) | «այն զոհաբերում եմ պատերազմին հանուն բուրժուազիայի շահերի» |
| 4 | «...конфискацию монастырских, помещичьих, *кабинетских* и удельных земель...» (11) | «...վանքապատկան, կալվածատիրական և ուդելային հողերի բռնագրավումը...» (29) | «...վանքապատկան, կալվածատիրական, կաբինետային և ուդելային հողերի բռնագրավումը» |
| 5 | «Означенные земли оставлены *владельцу* после полного отвода земли *поселянам...*» (28) | «Հիշյալ հողերը նրանց տիրապետողներին են մնացել լիովին չափով հող առանձնացվելուց հետո...» (40) | «Հիշյալ հողերը նրանց տիրոջն են մնացել գյուղացիներին (շինականներին) լրիվ չափով հող հատկացնելուց հետո»։ |
| 6 | «...если мы осмелимся *претендовать* или требовать...» (28) | «...եթե մենք համարձակվենք վարձակալել կամ պահանջել» (40) | «...եթե մենք համարձակվենք հավակնել (հավակնություն ունենալ) կամ պահանջել»։ |
| 7 | «...объявили забастовку и *прекратили работу* на экономической почве» (29) | «Գործադուլ հայտարարեցին տնտեսական հողի վրա» (41) | «Գործադուլ հայտարարեցին և աշխատանքը դադարեցրին տնտեսական հողի վրա» |
| 8 | «эта партия светлей солнца» (43) | «...այդ պարտիան պայծառ արև է» (52) | «...այդ պարտիան արևից էլ պայծառ է»։ |
| 9 | «...гражданский клуб...» (48) | «...քաղաքական ակումբ» (56) | «քաղաքացիական ակումբ» |
| 10 | «...в угоду *коронованных* и *некоронованных повелителей* и богачей своей страны и *нации...*» (234) | «...հօգուտ իրենց երկրների ու հարուստների...» (241) | «ի հաճույս իրենց երկրի ու ազգի թագակիր ու անթագակիր իշխողների ու հարուստների»։ |
| 11 | «...резолюциями крестьянского центра...» (60) | «Գյուղական կենտրոնի բանաձևի...» (67) | «գյուղացիական կենտրոնի բանաձևերի» |
| 12 | «...освящено давностями...» (61) | «Վաղուց է պարզաբանված» (68) | «սրբագործված է վաղեմություններով» կամ «սրբագործված է վաղեմությամբ»։ |



| | Բնագիրը | Տպված է | Պետք է լինի |
|---|---|---|---|
| 13 | «бедняк не имел в *добыче* доли...» (62) | «չքավորը ոսկից բաժին չուներ» (68) | «չքավորը ավարից բաժին չուներ» |
| 14 | «выйти из подполья и *открыто занять* свой пост...» (83) | «դուրս գալու ընդհատակից ու զբաղվելու... իր պոստը» (86) | «դուրս գալու ընդհատակից ու բացահայտ (ակարակն) գրավելու.. իր պոստը» |
| 15 | «...штыки и капиталы *держав согласия*, а с юга — *держав союза* (234—235) | «...համաձայնության տիրապետությունների սրվիններն ու կապիտալները, իսկ հարավից՝ տիրապետությունների միությունը» (241) | «...համաձայնության տերությունների... իսկ հարավից՝ դաշնակից տերությունները» |
| 16 | «расширения и углубления революции» (90) | «ռևոլյուցիան խորացնելու» (89) | «ռևոլյուցիան ընդլայնելու և խորացնելու»։ |
| 17 | «...против контрреволюционной затеи». (90) | «...դավադրության դեմ» (89) | «հակառևոլյուցիոն դիտավորության (հնարանքի) դեմ» |
| 18 | «на сомоопределении народностей...» (94) | «ազգությունների ինքնավարությամբ» (99) | «ազգությունների ինքնորոշմամբ» |
| 19 | «...врагов *революции* рабочих...» (107) | «Բանվորների... թշնամիների» (109) | «Բանվորների... ռևոլյուցիայի թշնամիների...» |
| 20 | «...эту власть народа, *утверждаемую вторым Всероссийским съездом Советов*, по воле которого...» (126) | «այդ իշխանությունը, որի կամքով...» (1?1) | «Սովետների համառուսաստանյան երկրորդ համագումարի կողմից հաստատված այդ իշխանությունը, որի կամքով...» |
| 21 | «...с последовательной диктатурой *пролетариата и беднейшего крестьянства*» (141) | «...հետևողական դիկտատուրայով...» (151) | «Պրոլետարիատի և չքավոր գյուղացիության հետևողական դիկտատուրայով» |
| 22 | «*Заговорили* яснее и определеннее *преступники* жесточайшей мировой бойни — вожди европейских и американских империалистов» (153) | «Համաշխարհային ամենադաժան սպանդի հանցավորները՝ եվրոպական ու ամերիկյան իմպերիալիստների առաջնորդները, ավելի պարզորոշ ու ավելի որոշակի են դավադրում» (161) | «Համաշխարհային ամենադաժան սպանդի հանցագործները՝ եվրոպական ու ամերիկյան իմպերիալիստների առաջնորդները, ավելի պարզորոշ ու ավելի որոշակի են սկսում խոսել» |

|  | Բնագիրը | Տպված է | Պետք է լինի |
|---|---|---|---|
| 23 | «...всемирной *гражданской войне»* (235) | «...համաշխարհային քաղաքական պատերազմի» (242) | «...համաշխարհային քաղաքացիական պատերազմի». |
| 24 | «...*рассыпающихся твердынь* капиталистического строя...» (156) | «Կապիտալիստական կարգերի փոշիացող հիմքերի վրա...» (164) | «Կապիտալիստական կարգերի խորտակվող (փլուզվող) ամրոցների վրա» |
| 25 | «...против признания Совета Народных Комиссаров, *против его программы...»* (172) | «դեմ են ժողովրդական Կոմիսարների Սովետը ճանաչելուն...» 179) | «դեմ են ժողովրդական Կոմիսարների Սովետի ճանաչմանը, դեմ են նրա ծրագրին...» |
| 26 | «Закавказский комиссариат *путем обмана* натравливает рабочих и *крестьян-красногвардейцев...»* (172) | «Անդրկովկասյան կոմիսարիատը բանվորներին ու գյուղացի-գվարդիականներին գրգռում է...» (179) | «Անդրկովկասյան կոմիսարիատը սուտ (կեղծիքի) միջոցով բանվորներին ու կարմիրգվարդիական գյուղացիներին գրգռում է...» |
| 27 | «оборончеcкий краевой центр...» (173) | «...երկրային կենտրոնը» (179) | «...պաշտպանողական երկրային կենտրոնը» |
| 28 | «...провоцируют братоубийственную войну между рабочими, *между крестьянами,* между *братьями по классу и революционной борьбе»* (173) | «...եղբայրասպան պատերազմ են հրահրում բանվորների միջև, դասակարգային և ռևոլյուցիոն պայքար՝ եղբայրների միջև» (179) | «...եղբայրասպան պատերազմ են հրահրում բանվորների միջև, գյուղացիների միջև, դասակարգի և ռևոլյուցիոն պայքարի եղբայրների միջև». |
| 29 | «...от национальных организаций мусульман...» (174) | «...մուսուլմաններից, ազգային կազմակերպություններից...» (180) | «մուսուլմանների ազգային կազմակերպություններից...» |
| 30 | «...Рабочего класса и крестьянской *бедноты...»* (234) | «Բանվոր դասակարգի ու գյուղացիության» (241). | «Բանվոր դասակարգի ու չքավոր գյուղացիության» |
| 31 | «...в Шемахе...» (205) | «...Շամխորում... (221) | «...Շամախում...». |
| 32 | «Диктатура коммунистического *пролетариата...»* (208) | «Կոմունիստական պարտիայի դիկտատուրա...» (232) | «Կոմունիստական պրոլետարիատի դիկտատուրա»: |



# ԱՐՏԱՀԱՅՏՎՈՒՄ ԵՆ ՄԱՆԿԱՎԱՐԺՆԵՐԸ

## ՉԻ ԿԱՐԵԼԻ ՀԱՄԱՁԱՅՆԵԼ

*Դպրոցը կյանքի հետ կապելու, կոմունիստական հասարակության ապագա քաղաքացիների կրթության ու դաստիարակության գործը հաջող կազմակերպելու ուղղությամբ մեր ռեսպուբլիկայի դպրոցները բավական գործ են կատարել: Այժմ մեր դպրոցների առջև դրված խնդիրներից ամենակարևորը ուսման որակի բարձրացումը և երկտարեցիության կանխումն է: Մեր մի շարք դպրոցներում շատ առաջավոր ուսուցիչներ մի քանի տարի է, ինչ ապահովում են բարձր որակ և ոչ մի երկտարեցի չեն տալիս: Սակայն, ցավոք, մեզ մոտ դեռևս լուրջ քայլեր չեն ձեռնարկվել այդ փորձը ուսումնասիրելու և մասսայականացնելու ուղղությամբ:*

*Ընկ. Ս. Խուդոյանի նպատակը, անկասկած, բարի է: Սակայն բանն այն է, որ, առաջ քաշելով մի շարք ճիշտ դրույթներ (ուսուցչի ազատ ստեղծագործական աշխատանք, ուսումնական պրոցեսի հաջող կազմակերպում, մեթոդների ակտիվացում, աշակերտների ինքնուրույն աշխատանքի խրախուսում, կանոնարկումների վերացում), Ս. Խուդոյանը հանգում է սխալ եզրակացությունների, թույլ է տալիս կոպիտ սխալներ և անում մեր դպրոցի ոգուն խորթ, ու վնասակար առաջարկություններ: Կարճ ասած՝ ունքը շինելու տեղ, աչքն է հանում:*

*Մյուսներին չկրկնելու համար ասենք, որ համամիտ ենք այն բոլոր ընկերների հետ, որոնք գտնում են, թե ուսումնական ծրագրերը պետք է կազմվեն մի գիտական-մանկավարժական կենտրոնում, հաստատվեն լուսավորության մինիստրության կոլեգիայի կողմից, ունենան բոլորի համար համընդհանուր ու միասնական պահանջներ և որպես պետական փաստաթուղթ ուսումնական գործում, լինեն պարտադիր: Այլ կերպ վարվելու դեպքում բազմաքանակ ու խայտաբղետ ծրագրերը ուսուցման գործում կստեղծեն խառնաշփոթություն և լայնորեն բաց կանեն կամայականությունների ու չարաշահումների դռները:*

*Երկրորդ հարցը, որին ևս համամիտ չենք, հեղինակի այն պնդումն է, որ ծրագրով նախատեսված թեմաները ուսուցիչների համար պարտադիր չպետք է լինեն: Ասենք թե հայ գրականությունից մեկը չի անցել Հ. Թումանյան ու Ավ. Իսահակյան, մեկ ուրիշը՝ Րաֆֆի և Մուրացան, երրորդը՝ Զարենց ու Բակունց և այլն: Կամ՝ մի գյուղում բարդ նախադասության թեմայից բաց են թողել ուրիշի ուղղակի խոսքն ու միջանկյալ նախադասությունը, մի այլ գյուղում՝ համաստորադաս և երկրորդական կարգի երկրորդական նախադասությունները, երրորդում՝ բարդ ստորադասական նախադասությունը և այլն: Ս. Խուդոյանը մոռանում է, որ հաջորդ տարին էլ իր ծրագրային նյութերն ունի, և եթե նախորդ տարվա պարտք մնացած թեմաներն ուսուցիչն անցնի, ապա պետք է բաց թողնի տվյալ տարվա ծրագրային նյութերը և այսպես մինչև վերջին, ավարտական դասարանը: Իսկ վերջի՞ն դասարանից ուր փոխանցել չանցածները: Աշակերտը պարտքերո՞վ պետք է ավարտի: Ահա հարցեր, որոնց մասին ուղղակի չի մտածել ընկ. Խուդոյանը:*

*Ի՞նչ կստացվի սրանից, քաոս և տարբերայնություն, անպատասխանատվություն և աչքակապություն: Առարկան կամ նրա առանձին թեմաները վատ իմացող, գլխացավանքից հեշտությամբ ազատվել ցանկացող ամեն մի ուսուցիչ կարող է չարաշահել նման ազատությունը: Ս. Խուդոյանը ուսուցչի ազատ ստեղծագործական աշխատանքի պահանջը ճիշտ է առաջ քաշել, սակայն շփոթել է ստեղծագործաբար աշխատելու ձևերն ու միջոցները: Եթե ծրագրով նախատեսված տվյալ առարկայի հարցերը ճիշտ են ու ավելորդ չեն, ապա ուսուցիչը դրանք պետք է անցնի և աշակերտներին յուրացնել տա: Սա պետական պահանջ է: Իսկ եթե նյութն ավելորդ է, կրճատման պահանջ պետք է դնել:*

*Խնդիրն այն է, թե ուսուցիչն ինչ մեթոդներով, ձևերով ու միջոցներով պետք է աշխատի, որ ողջ ծրագրային նյութն անցնի և աշակերտներին յուրացնել տա: Ուսուցիչը պետք է ստեղծագործական աշխատանք կատարի դասավանդման մեթոդներն ակտիվացնելու, դասի ընթացքը խելացի կազմակերպելու, ռիտորական մեթոդը լայնո-*

են՝ գարձել են իրենց գործի վարպետները, ուստի հարկ էլ չի եղել իրենց դասարանների հետ նրանց բարձրացնելու մինչև IV դասարան։ Մի այլ դեպքում, Հ. Հակոբյանը, Ս. Մկրտչյանը և ուրիշներ բարձրացել են իրենց դասարանների հետ և գործը շահել է։

Ընկ. Խուդոյանն այն կարծիքն է հայտնում, որ հաշվի առնելով կոնկրետ պայմաններն ու հնարավորությունները, տեղայնացնելու նպատակով ուսուցչին պետք է թույլ տալ ծրագրերի մեջ որոշ փոփոխություններ մտցնել։ Լա՛վ է ասված։ Սակայն միաժամանակ նշվում է նաև, որ ծրագրերը կազմելիս պետք է հաշվի առնել ուսուցիչների կարողություններն ու հնարավորությունները։ Այս հարցում համամիտ չեմ հոդվածագրի հետ, դա անհնարին է։

Ճիշտ ու ժամանակին է առաջ քաշվում ծրագրերի կատարման հարցը։ Վերադաս օրգաններն ուսուցչից պահանջում են անթերի կատարել ուսումնական ծրագրերը։ Պահանջը տեղին է, բայց պետք է հաշվի առնել ստեղծված պայմանները. գաղտնիք չէ, որ գյուղական մի շարք դպրոցներում գյուղատնտեսական աշխատանքների պատճառով ծրագրերում նախատեսված որոշ թեմաներ խորությամբ չեն անցնում։ Դրությունից դուրս գալու համար ուսուցիչն ստիպված է լինում որոշ թեմաներ մակերեսորեն կամ մեկ ուրիշ նյութի հետ միացված անցնել։ Ճիշտ է, լուսավորության մինիստրությունը մայիս ամսից հետո ուսումնական տարին երկարաձգում է, կամ արտադրական ուսուցմամբ միջնակարգ դպրոցներում հատկացված արտադրողական աշխատանքի կամ ուսումնափորձնական հողամասի վրա աշխատելու ժամանակաշրջանը տրամադրում է բաց թողած ժամերին։ Բայց եկեք արդարացիորեն ասենք, որ հատկապես գյուղական վայրերում հունիս ամսվա ընթացքում դասերն ընդհանուր առմամբ ցանկալի արդյունք չեն տալիս։

Գրավոր աշխատանքների ստուգման ու գնահատման վերաբերյալ հոդվածագրի կարծիքը սկզբունքորեն ճիշտ է՝ հարկավոր է լսել, հարգել և հավատալ ուսուցչին, քանի որ նա ճանաչում է իր աշակերտին։

Ռ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

Աբովյանի շրջանի Հրազդանի արտադրական ուսուցման միջնակարգ դպրոցի դիրեկտոր

---

## ՄԵՐ ՆՅՈՒԹԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

Հայկական ՍՍՌ գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրի տեղակալ ընկ. Ա. Գրիգորյանը «Լենինյան ուղիով» ամսագրի 1962 թ. № 10-ում տպագրված ակադեմիկոս Ս. Կ. Կարապետյանի «Անասնաբուծության զարգացման խիստ կարևոր մի հարցի մասին» հոդվածի վերաբերյալ հայտնում է հետևյալը.

Շոշափված հարցը ուշագրավ է և, անշուշտ, կարևոր նշանակություն ունի ռեսպուբլիկայում անասնաբուծության և թռչնաբուծության զարգացման ու նրանց մթերատվության բարձրացման գործում, հատկապես մուրային շրջանում կերի բալանսի մեջ արհեստական սպիտակուցային կերերի քանակն ավելացնելու տեսակետից։

Դեռ 1962 թվականին մինիստրությունում նախապատրաստվել և համապատասխան կազմակերպություններին են ներկայացվել անհրաժեշտ նյութեր՝ ռեսպուբլիկայում կերի դրոժի գործարանի կառուցման նախագծային աշխատանքները հիմնավորելու նպատակով։

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետը հանձնարարել է ժողտնտխորհին՝ 1963 թվականի կապիտալ շինարարության պլանով ապահովել նշված գործարանի շինարարության ֆինանսավորումը։

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՆՑԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24
Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2—02—24

ՎՖ 05224 Պատվեր 863 Տիրաժ 9800 Գինը 25 կոպ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 4/IV 1963 թ.։

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։



## ՆՈՐ ԳՐՔԵՐ

### ՔԱՂԱՔԱԿԱՆ ԳԻՏԵԼԻՔՆԵՐԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐ

Ուսումնական ձեռնարկ։
Երևան, Հայպետհրատ, 1963։ 576 էջ։

Գիրքը համառոտակի պատմում է մարդկային հասարակության զարգացման օրենքների մասին, տարբեր հասարակարգերի, դասակարգերի, դասակարգային հարաբերությունների, ժողովրդի և անհատի դերի, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի, նրա հաղթանակի, Հայրենական մեծ պատերազմի մասին։ Այստեղ տրված է բոլշևիկյան պարտիայի կազմակերպման գործունեության և ՍՍՌՄ-ում սոցիալիստական հասարակարգ կառուցելու, սոցիալիզմի համաշխարհային սիստեմ ստեղծելու համառոտ պատմությունը։ Գրքում խոսվում է նաև ՍՄԿՊ XX, XXI և XXII համագումարների, պարտիայի նոր ծրագիրն ընդունելու և կենսագործելու, մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը ստեղծագործաբար զարգացնելու մասին։

Այնտեղ կարդում ենք կապիտալիզմի ճգնաժամի, ազգային-ազատագրական ռևոլյուցիաների հաղթանակի, խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքի համար Սովետական Միության մղած պայքարի մասին։

Գիրքն օգտակար է քաղդպրոցների, ինքնակրթությամբ զբաղվողների և պարտիական ու սովետական ակտիվի համար։

НИКИТИН П. И.

### ՔԱՂԱՔԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐ

Երևան, Հայպետհրատ, 1963, 445 էջ։

Մրցանակի արժանացած «Քաղաքատնտեսության հիմունքներ» դասագիրքն ընթերցողին տալիս է հիմնական գիտելիքներ մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի մասին։ Գիրքը տալիս է մարքս-լենինյան գիտելիքներ իմպերիալիստական խմբավորումների տնտեսական և քաղաքական հակադրությունների, անդասակարգ սոցիալիստական-կոմունիստական հասարակարգի կառուցման, կապիտալիստական և սոցիալիստական հասարակարգերի զարգացման օրենքների, կոմունիզմի նյութատեխնիկական բազան կառուցելու և ՍՄԿՊ կողմից մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը զարգացնելու մասին։

Գիրքը նախատեսված է քաղխմբակների, քաղդպրոցների և ինքնուրույն ուսումնասիրողների, պարտիական ու սովետական աշխատողների համար։

### ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՊԱՐՏԻԱՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ

Երկրորդ ռևոլյուցիան Ռուսաստանում։
(1914 թ.— 1917 թ. փետրվար) փաստաթղթեր և նյութեր,
Մ., Պետքաղհրատ, 1962։

Ժողովածուում զետեղված են այդ տարիներին Վ. Ի. Լենինի գրած աշխատությունները, որոնք նվիրված են իմպերիալիստական պատերազմի բնութագրմանն ու սոցիալիստական ռևոլյուցիայի նախապատրաստմանը։ Այնտեղ կգտնենք նյութեր տեղական պարտիական կազմակերպությունների գործունեության մասին, հին բոլշևիկների հիշողությունները, որոնք վեր են հանում բոլշևիկյան պարտիայի՝ մասսաների մեջ տարած աշխատանքը և վառ կերպով ցույց տալիս Վ. Ի. Լենինի գործունեությունը այդ ժամանակաշրջանում։

Ժողովածուն խիստ օգտակար է պրոպագանդիստների և պարտպատմության ուսումնասիրողների համար։

ԳԻՆԸ 25Կ. ИНДЕКС 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԼԵՌՆԱՅԻՆ ՋՐԱՄԲԱՐԸ ԷՆԵՐԳԻԱՅԻ ԿՈՒՏԱԿԻՉ Է

*Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում կառուցվում է մի ինքնատիպ հիդրոէլեկտրակայան։ Գիշերը, երբ էլեկտրաէներգիայի պահանջը կենցաղային և արդյունաբերական նպատակներով նվազում է, ազատված էներգիան օգտագործվում է հզոր պոմպերի միջոցով գետի ջուրը մղելու համար մոտ 5 միլիոն խորանարդ մետր տարողությամբ ջրամբարը (որը գտնվում է լեռներում 300 մետր բարձրության վրա)։ Ջրի այդ պաշարն օգտագործվում է ցերեկը՝ էլեկտրաէներգիա ստանալու համար, երբ նրա պահանջը խիստ ավելանում է։ Կառուցումը մոտենում է ավարտին։*

*1962 թվականին գործարկվել են առաջին ագրեգատները։ Նախնական հաշվումներով էլեկտրակայանը տարեկան պետք է տա 650 միլիոն կիլովատ էլեկտրաէներգիա։*

## ՆՈՐ ՎԱԿՑԻՆԱ

*Թռչունների կեղծ ժանտախտը խիստ վարակիչ հիվանդություն է։ Այն մեծ վնաս է հասցնում, որովհետև դրանով հիվանդացած թռչունները սատկում են։ Մինչև վերջերս կիրառվող վակցինան դեռևս նվազ արդյունավետ է։ Ոչ վաղուց երկրի մի շարք շրջաններում թռչունների կեղծ ժանտախտի դեմ մղված պայքարում դրական արդյունք է տվել չոր վիրուս-վակցինայի փորձարկումը։*

*Նոր վակցինան մինչև այսօր հայտնի դեղանյութերի համեմատությամբ ավելի անվնաս է և արդյունավետ։ Վակցինան կարելի է պատվաստել ինչպես հասակավոր թռչուններին, այնպես էլ ճտերին։ Դեղանյութից առաջացած իմունիտետը պահպանվում է 8 ամիս։ Վիրուս-վակցինան չոր, մութ և 2—8 աստիճան ջերմաստիճանի պայմաններում կարելի է պահել մի տարի։ ՍՍՌՄ գյուղմինիստրության գիտա-տեխնիկական անասնաբուծական սեկցիան այն հանձնարարել է անասնաբուժության մեջ ներդնելու համար։*

## ՆՈՐ ՆՅՈՒԹ ՏՊԱՏԱՌԵՐԻ ՀԱՄԱՐ

*Տպատառերի ձուլման համար սովորաբար օգտագործում են կապարի, անագի և ծարիրի խառնուրդը (գարտ)։ Պլաստմասսաները վաղուց են մրցում գարտի մենաշնորհի դեմ և այժմ գարտը հանձին «Ա. Մ.» կոմպոզիցիայի սոպլիմերի ունի լուրջ մրցակից։ Այդ նյութից ձուլված տպատառերը մի շարք առավելություններ ունեն։ Դրանք հինգ անգամ ավելի դիմացկուն են, տասն անգամ ավելի թեթև, հարմար աշխատանքում և որ ամենակարևորն է, անվնաս են շարողների առողջության համար։*

## ՀԵՌԱԽՈՍ-ԳՐԱԴԱՐԱՆԱՎԱՐ

*Ընթերցողը կատալոգում գտնում է անհրաժեշտ գիրքը, գրում նրա համարը և այն հավաքում հեռախոսի սկավառակի վրա։ Երկու րոպե անց գիրքը բերվում է, թեև գրադարանում ոչ մի գրադարանավար չկա։ Երբ հավաքվում է համարը, հատուկ սարքը որոշում է գրքի տեղը դարակում, այն հանում և դնում է շարժվող ժապավենի վրա, որը պատվերը հասցնում է ընթերցողին։ Դա ապագայի գրադարանը չէ։ Վերջերս այդպիսի գրադարան է սկսել աշխատել Հոլանդիայի Դելֆդ քաղաքի բարձրագույն տեխնիկական դպրոցում։*

## ՄԵՔԵՆԱՆ ԿԱՐԴՈՒՄ Է ՁԵՌԱԳԻՐԸ

*ԱՄՆ-ում նախագծված է մի մեքենա, որը 93 աստիճանի ճշգրտությամբ կարդում է ձեռագրային տեքստը։ Մեքենան տեքստը թարգմանում է սիմվոլների ստանդարտ լեզվի 2 էտապով։ Առաջին էտապում մեքենան ճանաչում է տառերը, իսկ երկրորդում՝ առանձին բառերը բաժանում է տառերի։ Սիմվոլների դրությունը ցույց տվող ազդանշանները գրանցվում են մագնիտային ժապավենի վրա։ Ժապավենից ազդանշաններն անցնում են հաշվիչ-ճանաչող սարքավորման մեջ։*